ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

11

ՆՈՅԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1976

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11

ՆՈՅԵՄԲԵՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ









*Ինֆորմացիոն հաղորդագրություն*

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1976** թվականի հոկտեմբերի **25—26**-ին տեղի ունեցավ **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց **ՍՍՀՄ** Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, **ՍՍՀՄ** Պետպլանի նախագահ ընկ. **Ն. Կ. ԲԱՅԲԱԿՈՎԻ** զեկուցումը «**ՍՍՀՄ** ժողովրդական տնտեսության զարգացման **1976—1980** թվականների պետական հնգամյա պլանի և **ՍՍՀՄ** ժողովրդական տնտեսության զարգացման **1977** թվականի պետական պլանի մասին» և **ՍՍՀՄ** ֆինանսների մինիստր ընկ. **Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎԻ** զեկուցումը «**ՍՍՀՄ 1977** թվականի պետական բյուջեի մասին և **ՍՍՀՄ 1975** թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. **Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ**:

Զեկուցումների շուրջը մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝ Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Վ. Վ. ՇՉԵՐԲԻՑԿԻՆ**, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ա. ԿՈՒՆԱԵՎԸ**, **ՌՍՖՍՀ** Մինիստրների սովետի նախագահ ընկ. **Մ. Ս. ՍՈԼՈՄԵՆՑԵՎԸ**, Բելոռուսական **ՍՍՀ** Մինիստրների սովետի նախագահ ընկ. **Տ. ՅԱ. ԿԻՍԵԼՅՈՎԸ**, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Ա. ԱԼԻԵՎԸ**, **ՍՄԿԿ** Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Վ. Վ. ԳՐԻՇԻՆԸ**, **ՍՄԿԿ** Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. **Ս. Ֆ. ՄԵԴՈՒՆՈՎԸ**, **ՍՄԿԿ** Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. **Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎԸ**, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Շ. Ռ. ՌԱՇԻԴՈՎԸ**, **ՍՄԿԿ** Օրենբուրգի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. **Ա. Վ. ԿՈՎԱԼԵՆԿՈՆ**, Ռոստովի մարզի «Զոլոտարյովսկի» սովխոզի եգիպտացորենաբուծական օղակի օղակավարուհի ընկ. **Ռ. Ֆ. ԳՈՐՈԺԱԵՎԱՆ**, Թուրքմենստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Գ. ԳԱՊՈՒՐՈՎԸ**, **ՍՍՀՄ** գունավոր մետալուրգիայի մինիստր ընկ. **Պ. Ֆ. ԼՈՄԱԿՈՆ**, Ուկրաինայի կոմկուսի Պոլտավայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. **Ֆ. Տ. ՄՈՐԳՈՒՆԸ**, **ՍՍՀՄ** գյուղատնտեսության մինիստր ընկ. **Վ. Կ. ՄԵՍՅԱՑԸ**, **ՍՍՀՄ** գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, **ՍՍՀՄ** գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի նախագահ ընկ. **Գ. Ի. ՄԱՐՉՈՒԿԸ**, Խարկովի Վ. Ա. Մալիշևի անվան տրանսպորտային մեքենաշինության գործարանի խառատ ընկ. **Գ. Լ. ՄԻԽԱՅԼՈՎԸ**, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Ա. Է. ՎՈՍԸ**, սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների մինիստր ընկ. **Կ. Ն. ՌՈՒԴՆԵՎԸ**:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի առթիվ ընդունեց համապատասխան որոշում:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը **ՍՄԿԿ** Կենտկոմի քարտուղար ընտրեց ընկ. **ՅԱ. Պ. ՌՅԱԲՈՎԻՆ**:

Պլենումը **ՍՄԿԿ** Կենտկոմի անդամության թեկնածությունից **ՍՄԿԿ** Կենտկոմի անդամ փոխադրեց ընկ. ընկ. **Վ. Ա. ԿԱՌԼՈՎԻՆ**, **Կ. Ն. ԲԵԼՅԱԿԻՆ**, **Ֆ. Տ. ՄՈՐԳՈՒՆԻՆ**:

Դրանով Կենտրոնական կոմիտեի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ,

## 1976 թվականի հոկտեմբերի 25-ին

Ընկերնե՛ր։ Կուսակցության XXV համագումարից այնքան էլ շատ ժամանակ չի անցել՝ մոտավորապես ութ ամիս։ Բայց այդ ժամանակամիջոցը միանգամայն բավական եղավ՝ փորձով, միլիոնավոր մարդկանց կենդանի պրակտիկայով համոզվելու կուսակցական որոշումների խոր հիմնավորվածությանը։

XXV համագումարի կողմից նախատեսված կուսակցության կուրսը ապահովում է երկրի տնտեսական պոտենցիալի անընդհատ մեծացումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը, մեր հետագա առաջընթացը դեպի կոմունիզմ։ Այդ կուրսը նպատակամղված է երկրի առջև կանգնած, յուրաքանչյուր սովետական մարդու շահերը շոշափող առավել հրատապ պրոբլեմների լուծմանը։ Ահա թե ինչու կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը արժանանում է բոլոր կոմունիստների, ամբողջ սովետական ժողովրդի ջերմ պաշտպանությանը։ Ահա թե ինչու համագումարի որոշումների կատարումը դարձել է քաղաքների և գյուղերի աշխատավորների ներքին պահանջմունքը։ Սովետական մարդիկ հավատում են իրենց կուսակցությանը և գործով, անձնվեր աշխատանքով ապացուցում են այդ։ (Ծափահարություններ):

Կենտկոմի ներկա պլենումը առանձնահատուկ նշանակություն ունի ամբողջ կուսակցության, սովետական ամբողջ ժողովրդի համար։ Եթե համագումարը հաստատեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները», ապա այժմ մենք պետք է անենք հաջորդ քայլը՝ քննարկենք տասներորդ հնգամյակի պլանը։ Միաժամանակ պլենումին ներկայացված են 1977 թվականի պլանը և բյուջեն։

Ղեկավարվելով քաղբյուրոյի ցուցումներով, Մինիստրների սովետը և պետպլանը համագումարից հետո լուրջ աշխատանք կատարեցին հնգամյա և տարեկան պլանների նախագծերի բարելավման ուղղությամբ։

Միևնույն ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության նիստերում քննարկվել են մի շարք խոշոր ժողովրդատնտեսական պրոբլեմներ։ Ընդունված որոշումներում նախատեսվել են կոնկրետ միջոցառումներ, որոնց իրականացումը լրացուցիչ հնարավորություններ կբացի հնգամյա պլանի հաջող կատարման համար։

Ընկերներ Ն. Կ. Բայբակովի և Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումները թույլ են տալիս տեսնելու այն բնագծերը, որ մենք պետք է նվաճենք մոտակա հինգ տարում, բացահայտում են տասներորդ հնգամյակի և հաջորդ տնտեսական տարվա հիմնական առանձնահատկությունները։

Մեր խնդիրը, Կենտկոմի պլենումի խնդիրն է՝ նախ և առաջ գնահատել ներկայացված նախագծերը քաղաքական տեսանկյունից, այն տեսանկյունից, թե դրանք որքանով են համապատասխանում կուսակցական դիրքորոշմանը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման գործում։

Այնուհետև, մեր խնդիրն է նախատեսել ժողովրդատնտեսական պլանների



կատարման առավել արդյունավետ տակտիկա։ Իսկ դա նշանակում է, որ մենք պետք է ի հայտ բերենք և հստակորեն նախանշենք աշխատանքի վճռական տեղամասերը, առանձնացնենք հնգամյա և տարեկան պլանների այն հանգույցները, որոնք պահանջում են կուսակցական, կոմերիտական, սովետական և տնտեսական մարմինների առավել մեծ ուշադրությունը, կուսակցության և ժողովրդի ուժերի առավել մեծ համակենտրոնացում։

Պլենումի որոշումները կոչված են դառնալու կուսակցական կոմիտեների, բոլոր կոմունիստների պրակտիկ գործունեության մարտական ծրագիրը, դրվելու կազմակերպչական ու դաստիարակչական այն աշխատանքի հիմքում, որի նպատակն է է՛լ ավելի բարձրացնել աշխատավորների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը։

Այս կապակցությամբ կկամենայի արտահայտել մի քանի նկատառումներ։ Կսկսեմ ամբողջ հնգամյակի նախագծի գնահատումից։

Պլանի նախագծի հետ հիմնական ուղղությունների համադրումը վկայում է, որ ընդհանուր-տնտեսական բոլոր ցուցանիշների գծով, ինչպիսիք են, օրինակ, ազգային եկամտի, արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի աճը, կապիտալ ներդրումների ծավալը, բնակչության կենսամակարդակի բարձրացումը,— նախագիծը համապատասխանում է համագումարի նախանշումներին։

Տասներորդ հնգամյակը հսկայական մասշտաբների և տնտեսական մեծ հնարավորությունների հնգամյակ է։ Ժողովրդական տնտեսության զարգացման մեջ կներդրվի ավելի քան 621 միլիարդ ռուբլի։ Հինգ տարում պողպատի արտադրությունը կաճի 27,2 միլիոն տոննայով, նավթինը՝ 149,2 միլիոն տոննայով, գազինը՝ 145,7 միլիարդ խորանարդ մետրով, ածխինը՝ 103,7 միլիոն տոննայով, էլեկտրաէներգիայինը՝ 341,4 միլիարդ կիլովատ-ժամով։ 45,1 միլիարդ ռուբլով կաճի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, գրեթե 40 միլիոն տոննայով պետք է ավելանա հացահատիկի տարեկան միջին բերքը։

Իսկ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն ցուցանիշների բացարձակ աճը այս հնգամյակում կլինի ամենաբարձրը երկրի ամբողջ պատմության մեջ։

Դրա հետ մեկտեղ պլանային նախատեսումների ծանրության կենտրոնը ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում որակական ցուցանիշների կողմը։ Դրանում իր արտացոլումն է գտնում կուսակցության պահանջը՝ աշխատել ավելի լավ, աշխատել ավելի արդյունավետ կերպով, առավելագույն օգտավետությամբ։

Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 25 տոկոսով։ Նախատեսվում է դրա հաշվին ստանալ արդյունաբերական արտադրանքի աճի 90 տոկոսը և գյուղատնտեսության արտադրանքի ու շինմոնտաժային աշխատանքների ծավալի ամբողջ աճը։

Առավել արագ տեմպերով կզարգանան գիտատեխնիկական առաջադիմության առաջնագծում գտնվող ճյուղերը։

Հինգ տարում ժողովրդական տնտեսությունը կստանա զգալի քանակությամբ նոր տեխնիկա։ Լուրջ միջոցառումներ են նախատեսվել տեխնոլոգիայի կատարելագործման, նյութերի առաջադիմական տեսակների արմատավորման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ։ Գիտատեխնիկական նվաճումների լայն կիրառումը թույլ կտա զգալիորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և 1980 թվականին ստանալ 20 միլիարդ ռուբլու լրացուցիչ խնայողություն։

Կուսակցության ագրարային քաղաքականությանը համապատասխան, հնգամյակի նախագիծը նախատեսում է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդում։ Նրա կարիքների համար հատկացվելու է ավելի քան 170 միլիարդ ռուբլի։ Դա հսկայական գումար է։ Կասեմ անկեղծորեն, հեշտ չէր այն գտնել։ Հարկ եղավ կրճատել ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի որոշ պահանջմունքներ։ Բայց մենք գիտակցաբար արե-

ցինք այդ բանը, քանի որ այժմ չկա ավելի կենսական խնդիր, քան մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորը ամենաարդիական մակարդակին հասցնելը։ (Ծափահարություններ)։

Նախատեսված է տասներորդ հնգամյակի տարիներին շահագործման հանձնել գրեթե ինը միլիոն հեկտար նոր ոռոգելի և չորացված հողեր, ջրարբիացնել ավելի քան 37 միլիոն հեկտար արոտավայր։ Գյուղատնտեսությունը կստանա ավելի քան 466 միլիոն տոննա պարարտանյութ և քիմիական կերախառնուրդ, տասնյակ հազարավոր մեքենաներ ու մեխանիզմներ՝ 42 միլիարդ ռուբլի ընդհանուր արժողությամբ։

Դեռ ոչ այնքան վաղուց այս թվերը կարող էին երևակայական թվալ։ Իսկ հիմա դրանք մեր պլաններն են, որոնց ռեալությունը երաշխավորվում է թե՛ այն ամուր տնտեսական հիմքով, որի վրա մենք արդեն կանգնած ենք, թե՛ մեր փորձով, կուսակցության և ժողովրդի ուժերի նկատմամբ մեր վստահությամբ։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք կարող ենք նաև գոհունակությամբ ասել, որ հնգամյա պլանի նախագծում մարմնավորված է կուսակցության XXV համագումարի հռչակած սոցիալական լայն ծրագիրը։

Եթե խոսելու լինենք սոցիալական ծրագրի մասշտաբների մասին, ապա այն կարելի է բնութագրել այսպիսի թվերով՝ հնգամյակի ընթացքում սպառման ֆոնդը կավելանա գրեթե 76 միլիարդ ռուբլով։ Դա գրեթե 12 միլիարդ ռուբլով ավելին է իններորդ հնգամյակում եղած նրա աճից։ 100 միլիարդ ռուբլի կհատկացվի բնակարանային և կոմունալ շինարարությանը, 20 միլիարդ՝ առողջապահության, լուսավորության և կուլտուրայի նյութական բազայի զարգացմանը։

Այսպես է իրականացվում սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը բարելավելու՝ համագումարի դիրքորոշումը։ (Ծափահարություններ)։

Տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագրի մյուս բնորոշ գիծն այն է, որ բնակչության մեկ շնչին ընկնող միջին ռեալ եկամուտները 21 տոկոսով ավելացնելու հետ մեկտեղ, է՛լ ավելի նշանակալի հավելում կստանան նվազ ապահովված ընտանիքները։ Եթե 1965 թվականին բնակչության միայն 4 տոկոսի ընտանիքի մեկ անդամին էր ընկնում ամսական 100 ռուբլուց ավելի եկամուտ, ապա մինչև հնգամյակի վերջը այդ եկամուտը կունենա բնակչության մոտավորապես կեսից ավելին։

Միայն համապետական սոցիալական միջոցառումների համար 1980 թվականին կհատկացվի 17,7 միլիարդ ռուբլի։ Մասնավորապես նախատեսված է բարձրացնել ոչ արտադրական ճյուղերի՝ լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, առևտրի, կենցաղային և կոմունալ սպասարկման 31 միլիոն աշխատողների դրույքներն ու ռոճիկները։

Տասներորդ հնգամյակում կսկսվի բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձի, ինչպես նաև դրույքների և ռոճիկների բարձրացման նոր փուլը։ Բանվորների և ծառայողների աշխատավարձը միջին հաշվով կավելանա ու կհասնի ամսական մինչև 170 ռուբլու, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը կհասնի մինչև 116 ռուբլու։

Քիչ բան չի արվի կանանց ու երեխաների դրությունը բարելավելու համար։ Աշխատող կանանց համար մտցվում է մասնակիորեն վճարովի արձակուրդ երեխային խնամելու համար՝ մինչև նրա մեկ տարեկան դառնալը։ Մոտավորապես 3 միլիոնով կավելանա երեխաների թիվը նախադպրոցական հիմնարկներում։

Մեր հասարակության մեջ մեծ ուժ են կազմում աշխատանքի վետերանները։ Տասներորդ հնգամյակում նորից կբարձրացվի նվազագույն կենսաթոշակների մակարդակը, կտրվեն կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության լրացուցիչ արտոնություններ։

Է՛լ ավելի բարձրացնելով բնակչության դրամական եկամուտները, տասներորդ հնգամյակը շեշտը դնում է նրանց ժողովրդական սպառման ապրանքներով ավելի լավ ապահովելու վրա։ Պետական և կոոպերատիվ առևտրի ման-



րածախ ապրանքաշրջանառությունը կաճի 29 տոկոսով, կբարելավվեն ապրանքների որակն ու տեսականին։

Գնահատելով տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագիրը, մենք իրավունք ունենք ասելու, ընկերներ, որ այդ ծրագրի բովանդակությունը լիովին համապատասխանում է հնգամյակի գլխավոր խնդրին, ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացման՝ կուսակցության կուրսին։ (Ծափահարություններ)։

Ինչպես միշտ, Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման հնգամյա պլանը հաշվի է առնում յուրաքանչյուր միութենական և ինքնավար հանրապետության առանձնահատկություններն ու պահանջմունքները, ապահովում նրանց ներդաշնակ զարգացումը, նրանց ընդհանուր վերելքը դեպի սոցիալական առաջադիմության նոր բարձունքներ։ Մեր հնգամյակը ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականությունն է՝ թարգմանված էկոնոմիկայի լեզվով։ (Երկարատև ծափահարություններ)։

Տասներորդ հնգամյակի պլանում իրենց արտացոլումն են գտել աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հետագա զարգացումը, եղբայրական սոցիալիստական երկրների հետ Սովետական Միության տնտեսական ինտեգրացման ուղիով հետագա առաջընթացը։

Ընդհանուր առմամբ, ընկերնե՛ր, հնգամյա պլանի, ինչպես նաև 1977 թվականի պլանի և բյուջեի նախագծերը համապատասխանում են կուսակցության տնտեսական ստրատեգիային, ՍՄԿԿ XXV համագումարի գծին։ Հետևաբար, կուսակցության Կենտրոնական կոմիտեն բոլոր հիմքերն ունի հավանություն տալու այդ փաստաթղթերին և հանձնարարելու Մինիստրների սովետին՝ դրանք ներկայացնելու ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի քննարկմանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Իհարկե, մեր երկրում գոյություն ունեցող տնտեսավարման մասշտաբների պայմաններում, այն խնդիրների բազմապիսության պայմաններում, որոնցով մենք հարկադրված ենք զբաղվել, այնքան էլ հեշտ չէ պլանի մեջ ստանալ բոլոր հարցերի անթերի լուծումը, լիովին բավարարել ժողովրդական տնտեսության բոլոր օղակների պահանջմունքները։ Բացի դրանից, պլանավորումն էլ մեզանում, ցավոք, դեռ միշտ չէ, որ կյանքին համաքայլ է ընթանում, միշտ չէ, որ կարող է ժամանակին ի հայտ բերել բոլոր եղած ռեզերվները։ Այստեղից էլ՝ հնգամյա պլանի առանձին տարրերի որոշակի լարվածությունը։

Այս ամենը մինիստրություններին ու գերատեսչություններին, մարզկոմներին, երկրկոմներին և հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին պարտավորեցնում է տնտեսական պրակտիկ գործունեության ընթացքում գտնել նոր ռեզերվներ, ապահովել ավելի բարձր բնագծեր դուրս գալը։ Այս ամենը պարտավորեցնում է հատուկ հսկողության տակ առնել հենց այն տեղամասերը, որտեղ ռեսուրսների պակասության պատճառով պահպանվում են թերացումներ և դժվարություններ։

Կարծում եմ, Կենտկոմի անդամները կպաշտպանեն այսպիսի հարցադրումը։ (Ծափահարություններ)։

Հարկավոր է, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ցուցաբերել «...ավելի հաստատակամություն, ավելի համառություն, ավելի սիստեմատիկություն աշխատանքում, ավելի մեծ կազմակերպչական և վարչական հմտություն՝ մեծ մասշտաբով»*։ Եկեք, ուրեմն, գործենք լենինաբար։ (Երկարատև ծափահարություններ)։

Այն մասին, թե որքան մեծ են մեր հնարավորությունները, թե ինչպիսին է կուսակցության կազմակերպչական աշխատանքի ուժը, համոզիչ կերպով ցույց է տալիս ընթացիկ, 1976 թվականի՝ տասներորդ հնգամյակի առաջին տարվա փորձը։

Ինչպես հայտնի է, այս տարին սկսվեց բարդ պայմաններում։ Թե՛ մեր պլանների վրա, թե՛ գործերի փաստական վիճակի վրա մեծապես անդրադարձան անցյալ տարվա երաշտի հետևանքները։ Հաշվի առնելով այդ, Կենտ-

* Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 513։

րոնական կոմիտեն իրագործեց տնտեսական և կազմակերպական-քաղաքական միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որոնք կոչված են ակտիվացնել տնտեսական մարմինների գործունեությունը, աշխատավորներին մոբիլիզացնել պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման համար։

Դրա շնորհիվ այս տարվա ինն ամիսներին արդյունաբերական արտադրանքն աճեց 4,8 տոկոսով՝ տարեկան պլանով նախատեսված 4,3 տոկոսի փոխարեն։ Գերակատարվեց արտադրության աճի պլանը «Բ» խմբի ճյուղերում։ Արտադրվել է միլիարդավոր ռուբլիների գերպլանային արդյունաբերական արտադրանք։

Թույլ տվեք կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից հատատ վստահություն հայտնել, որ պողպատ ձուլողներն ու շինարարները, նավթագործներն ու ածխահատները, տեքստիլագործներն ու սննդի աշխատողները, մեքենաշինարարներն ու քիմիագործները, էներգետիկներն ու տրանսպորտի աշխատողները՝ սոցիալիստական ինդուստրիայի բոլոր աշխատողները կկարողանան ամրապնդել ընթացիկ տարվա հաջողությունները և է՛լ ավելի արագ առաջ կընթանան դեպի աշխատանքային նոր մեծագործություններ։ (Երկարատև ծափահարություններ)։

Ամենաբարի խոսքերի են արժանի գյուղատնտեսության աշխատավորները, որոնք հնգամյակի սկիզբը նշանավորեցին հոյակապ հաջողություններով։

Իհարկե, տագնապներ շատ եղան. ձգձգված ձմեռը, ցուրտ գարունը, բերքահավաքի ժամանակ տեղատարափ անձրևները։ Բայց մարդիկ չէին ընկճվում, աշխատում էին հերոսաբար, ամեն ինչ անում էին լավ բերք ստանալու համար։ Եվ նրանք հաղթեցին։ (Ծափահարություններ)։

Պետական պահեստներն արդեն ստացել են մոտավորապես հինգուկես միլիարդ փութ հաց։ Առ այսօր կալսվել է ավելի քան 216 միլիոն տոննա հացահատիկ։ Բերքահավաքը շարունակվում է։ Կարելի է համարել, որ մենք կա՛մ ընդհուպ կմոտենանք ռեկորդային տարվա՝ 1973 թվականի ցուցանիշներին, կա՛մ նույնիսկ կգերազանցենք դրանք։ Դա հսկայական հաղթանակ է։ (Երկարատև ծափահարություններ)։

Հաջող բերքահավաքի ասպարեզում մեծ դեր խաղաց Կուբանի հողագործների նախաձեռնությունը։ Նրանց հիանալի ձեռնարկումը շատ լայն պաշտպանություն գտավ հանրապետություններում, երկրամասերում և մարզերում։

Հայրենիքի շտեմարանները ավելի քան երեք միլիարդ փութ հացահատիկ լցրեցին Ռուսաստանի Ֆեդերացիայի կոլտնտեսություններն ու սովխոզները։ Կկամենայի հատկապես նշել Օրենբուրգի, Վոլգոգրադի, Սարատովի, Ռոստովի և ուրիշ շատ մարզերի աշխատավորների նվաճումները։ (Ծափահարություններ)։

Պետությանը ավելի քան մեկ միլիարդ 150 միլիոն փութ հացահատիկ վաճառեց Ղազախստանը։ Նվաճված է նոր բնագիծ, որով, իրավամբ, կարող են հպարտանալ հանրապետության աշխատավորները։ (Ծափահարություններ)։

Վստահ եմ, որ ղազախստանցիները գլխապտույտ չեն ունենա գովեստներից և ծափահարություններից։ Հանրապետությունը հետագա աճի հսկայական ռեզերվներ ունի։ Ալմա-Աթայում տեղի ունեցած ակտիվի խորհրդակցությունում այդ առթիվ միանգամայն լուրջ խոսակցություն եղավ։ Եվ այդ խոսակցությունը վերաբերում է ոչ միայն Ղազախստանի պրոբլեմներին։

900 միլիոն փութ հացահատիկ է ստացվել Ուկրաինայի կոլտնտեսություններից և սովխոզներից։ Հացահատիկի գնումների պլանները զգալիորեն գերակատարվել են Բելոռուսիայում, Մերձբալթիկայի, Անդրկովկասի և Միջին Ասիայի հանրապետություններում։

Այսօր մենք իրավունք ունենք ասելու, որ 1976 թվականի հացի համար մղված ճակատամարտը շահված է և պատվով է շահված։ (Երկարատև ծափահարություններ)։ Նրա հերոսներն են առաջավոր կոլտնտեսականներն ու սովխոզների աշխատողները, մեր մեխանիզատորները, գյուղի աշխատավորներին օգնած սովետական բանակի ռազմիկները, կուսակցական, կոմերիտական ու սովետական աշխատողները՝ բերքի համար մղված պայքարի անխոնջ կազմակերպիչները։ Նրա հերոսները բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների աշխատավորներն են։ Պլենումի բարձր ամբիոնից ես ուզում եմ նրանց բոլորին ասել՝ սրտագին շնորհակալություն։ Շնորհակալություն առատ հացի համար։ (Ծափահարություններ)։

Աճեցվել է շաքարի ճակնդեղի լավ բերք։ Խարկովցիների և վորոնեժցիների կոչով երկրի ճակնդեղագործները ցույց տվեցին անձնվեր աշխատանքի օրինակներ։

Մեզ ուրախացնում են Ուզբեկստանի, Թուրքմենիայի, Տաջիկստանի և Ադրբեջանի, Ղազախստանի և Կիրգիզիայի բամբակագործները։ Մենք համոզված ենք, որ վերստին կգերազանցվի ութմիլիոնանոց բնագիծը։ Բայց դա էլ վերջնական սահման չէ։ Վստահ եմ, որ առջևում նոր ռեկորդներ կլինեն։ (Ծափահարություններ)։

Կարևոր է նշել, որ բերքահավաքին զուգընթաց դրվում է եկող տարվա բերքի ամուր հիմքը։ Անցյալ տարվա համեմատությամբ, կատարվել է գրեթե հինգ միլիոն հեկտարով ավելի աշնանացան, կատարվել է շատ ցրտահերկ, կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի լավ են ապահովված սերմացուով։

Տարին բարդ էր անասնապահության համար։ Բայց այժմ դրությունը փոխվում է դեպի լավը։ Ավելանում է անասունների գլխաքանակը։ Հաջողությամբ է անցկացվել հյութալի և կոշտ կերերի կուտակումը։ Շատ տնտեսություններում ստեղծվել են ֆուրաժի ապահովագրական փոխանցվող ֆոնդեր։ Դա օգտակար, հարկավոր գործ է։ Միայն այդպես կարելի է մեծ կայունություն և դինամիկություն տալ մսի, կաթի և անասնապահական մյուս մթերքների արտադրությանը։

Այսպիսով, հնգամյակը լավ է սկսվել։ 1976 թվականի տնտեսական ռիթմը ապահովում է կուսակցության առաջադրած խնդիրների կատարումը։ Եվ դա ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ հաջողություն է։ (Ծափահարություններ)։

Հաջողությունն ամրապնդելու համար հարկավոր է տարին ավարտել հարվածայնորեն։ Հարկավոր է, ընկերնե՛ր, հասնել այն բանին, որ տարվա արդյունքները լավ լինեն ինչպես քանակական ցուցանիշներով, այնպես էլ արտադրանքի որակով, արտադրության արդյունավետությամբ։

Արդյունավետություն և որակ։ Այս երկու բառերը այժմ դարձել են ամբողջ տնտեսական գործունեության նշանաբանը։ Դրանց մեջ, ինչպես ամենքին հայտնի է, արտահայտված են ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլի օբյեկտիվ պահանջմունքները։

Արդյունավետության և որակի համար պայքարը նշանակում է, որ յուրաքանչյուր սովետական մարդ, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ պետք է հասնի աշխատանքի առավելագույն արտադրողականության, խստիվ կիրառի արտադրական կարգապահությունը և խնայողության ռեժիմը, օրեցօր բարելավի իր աշխատանքի որակը, թողարկվող արտադրանքի որակը։

Արդյունավետության և որակի համար պայքարը նշանակում է, որ յուրաքանչյուր ղեկավար և մասնագետ պարտավոր է տիրապետել աշխատանքի լենինյան ոճին, կառավարման լենինյան գիտությանը, հասարակական արտադրության պլանավորման ու կազմակերպման ժամանակակից մեթոդները, լինի գիտատեխնիկական առաջադիմության ակտիվ կիրառողը։

Արդյունավետության և որակի համար պայքարը նշանակում է, որ յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է ըստ ամենայնի խրախուսի ու տարածի իրոք գործնական և օգտակար նախաձեռնությունները, վճռականորեն վերացնի այն ամենը, ինչը խանգարում է ստեղծագործական մտքի բարախյունին, նորարարությանը, խանգարում մեր առաջընթացին։

Շեշտը դնելով արդյունավետության և որակի վրա, մենք նպատակ ենք դնում տասներորդ հնգամյակի տարիներին ընդլայնել տնտեսական աճի աղբյուրները, բարելավել էկոնոմիկայի հաշվեկշռվածությունը և դրանով իսկ լավ

հող նախապատրաստել նաև 80-ական թվականներին նշանակալի առաջընթացի համար։ Այդպիսի մոտեցումը բխում է, մասնավորապես, տասնհինգամյա հեռանկարի՝ արդեն եղած նախանշումներից։

Հնգամյա պլանի նախագծի մեջ շատ բան է նախատեսված որակի և արդյունավետության պրոբլեմները լուծելու համար։ Իհարկե, արդեն քիչ բան էլ չի արված։

Մենք ունենք այդ հարցերին ցույց տրվող իսկական կուսակցական, իսկական գործնական մոտեցման հիանալի օրինակներ։

Ես արդեն հարկ եմ ունեցել խոսելու Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի դրական փորձի մասին։ Արտադրության լավ կազմակերպման օրինակ կարող է ծառայել «Սվետլանա» միավորումը։ Անցած հնգամյակում ֆոնդահատույցումը միավորման գծով ավելացավ 54 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքն իջավ 29 տոկոսով։

Արտադրանքի ավելի քան 80 տոկոսը որականիշով է թողարկում Բաքվի «Ալէլեկտրոսվետ» գործարանը, գրեթե 79 տոկոսը՝ Կամենեց-Պոդոլսկի կաբելի գործարանը, ավելի քան 73 տոկոսը՝ Լյուդինովոյի ջերմաքարշաշինական գործարանը։ Դա մեծապես արդյունք է այն բանի, որ մի շարք մինիստրություններ անցել են ճյուղում գիտատեխնիկական առաջադիմության կառավարման նոր մեթոդների։

Արտադրական կարողությունների օգտագործման ասպարեզում բարձր ցուցանիշների է հասել Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատի կոլեկտիվը։ Ճյուղում աշխատանքի ամենաբարձր արտադրողականությանն են հասել «Կարագանդաուգոլ» միավորման ածխահատները։

Մեր կուսակցական համագումարներն առանձնահատուկ սրությամբ են դրել արտադրության հետ գիտության կապի ամրապնդման խնդիրը։ Ինչպես գիտնականները, այնպես էլ արտադրության աշխատողները մեծ աշխատանք են ծավալել այդ խնդրի գործնական լուծման ուղղությամբ։ Շատ բան են անում Միության գիտությունների ակադեմիան և հանրապետական ակադեմիաները։

Այսպես, Ուկրաինայի գիտությունների ակադեմիայում ստեղծվել և հաջողությամբ գործում են մի շարք կոմպլեքսներ, որոնք միավորում են գիտահետազոտական ինստիտուտներ ու արդյունաբերական ձեռնարկություններ։ Դրան նպաստում է Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի, ինչպես նաև Կիևի, Լվովի, Դնեպրոպետրովսկի և այլ մարզերի կուսակցական կազմակերպությունների նպատակասլաց գործունեությունը։

Արտադրության հետ գիտության կապի ամրապնդման լավ փորձ է կուտակված Մոսկվայում։ Մայրաքաղաքի ավելի քան ութ հարյուր գիտահետազոտական ինստիտուտներ և կոնստրուկտորական բյուրոներ, արդյունաբերական ձեռնարկությունների հետ կնքած ստեղծագործական համագործակցության պայմանագրերի հիման վրա, կատարում են արտադրության, նրա կառավարման կատարելագործման, արտադրանքի որակի բարելավման տարբեր հետազոտություններ։

Դրական օրինակներ շատ կարելի է բերել։ Բայց, ընկերնե՛ր, դուք բոլորդ հիանալի գիտեք, որ բնավ էլ ամենուրեք չէ, որ գործը բարեհաջող է։ Ուստի խիստ կարևոր է արդեն հնգամյակի սկզբում ուշադիր վերլուծել, թե ինչպես են լուծվում արդյունավետության և որակի հարցերը յուրաքանչյուր մինիստրության, յուրաքանչյուր միավորման ու ձեռնարկության կողմից, ավելի եռանդուն կերպով բացահայտել չօգտագործված ռեզերվների շերտերը, ավելի լայնորեն տարածել լավագույնների փորձը, օգնել ետ մնացողներին հաղթահարելու իրենց ետ մնալը։

Կարելի է, թերևս, այսպես ձևակերպել խնդիրը՝ հարկավոր է սովորել ավելի արդյունավետ պայքարել արդյունավետության բարձրացման համար։ (Ծափահարություններ)։ Դա թույլ կտա զգալիորեն ավելացնել որականիշ ունեցող արդյունաբերական արտադրանքի թողարկումը՝ ոչ թե երկու անգամ, ինչպես նախատեսված է հնգամյա պլանի նախագծով, այլ շատ ավելի մեծ չափերով։ Դա ավելի բարձր ցուցանիշների կհասցնի ֆոնդահատույցումը մեծացնելու և նյութատարությունը նվազեցնելու իմաստով։ Դա, վերջին հաշվով, թույլ կտա արագացնել հանրային աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը և այդ ցուցանիշով հասնել հիմնական ուղղությունների ցուցանիշների ոչ թե նվազագույն մակարդակին, ինչպես նախատեսված է նախագծով, այլ առավելագույն մակարդակին։



Առաջ քաշելով այս խնդիրը, Կենտրոնական կոմիտեն ակնկալում է ամբողջ կուսակցության, բոլոր կուսակցական կազմակերպությունների լիակատար պաշտպանությունը։ (Ծափահարություններ)։

Պետք է նկատի ունենալ, որ ընդհանուր պահանջը՝ բարձրացնել արդյունավետությունն ու որակը,— տարբեր կերպ է իրականացվում աշխատանքի տարբեր տեղամասերում։ Մեր տնտեսական մտածողությունը պետք է առավելագույն չափով կոնկրետ լինի։ Ուստի ես կուզենայի ուշադրությունը սևել մի քանի պրոբլեմների վրա, որոնք առաջին պլանի վրա են դրվում ժողովրդական տնտեսության զարգացման ամբողջ ընթացքով։

Այդպիսի պրոբլեմներից մեկը, և, թերևս, կենտրոնական պրոբլեմը, կապիտալ շինարարությունն է։ Պլանի մեջ մտցված են հսկայական ծավալի աշխատանքներ։ Ընդ որում հիմնական ֆոնդերի գործարկման տեմպերը գերազանցում են կապիտալ ներդրումների աճի տեմպերին։ Փոխվում է նաև կապիտալ ներդրումների կառուցվածքը. եթե հնգամյակի ընթացքում արտադրական շինարարության համար պետական կապիտալ ներդրումները աճում են մոտավորապես մեկերորդով, ապա տեխնիկական վերազինման և գործող ձեռնարկությունների վերակառուցման համար դրանց ռեսուրսները կավելանան գրեթե 64 տոկոսով։ Հենց դա էլ արդյունավետության բարձրացման՝ XXV համագումարի նախատեսումների կոնկրետ մարմնացումն է։

Նվազեցնել անավարտ շինարարության ծավալը, կրճատել շինմոնտաժային աշխատանքների ժամկետներն ու արժեքը, ավելի արագ վերակառուցել գործող կարողությունները՝ ահա թե ինչ ուղղությամբ է կողմնորոշում հնգամյա պլանը։

Առավելագույն եռանդ պետք է ի սպաս դնել արագացնելու արդյունաբերական խոշոր կոմպլեքսների շինարարությունը. չէ որ նրանց ժամանակին գործարկումից վճռական չափով կախված է բազմաթիվ կարևորագույն արտադրատեսակների արտադրության պլանի կատարումը։

Հնգամյակի շինարարական ծրագիրը լարված է։ Նոր ֆոնդերի գործարկման ծավալները կաճեն տարեցտարի։ Դա նշանակում է, որ ժամանակի գործոնը հանդես է գալիս որպես հիմնական գործոն, որ «թափ առնելու» ժամանակ չկա, որ հնգամյակի հենց սկզբից հարկավոր է աշխատել լիակատար արդյունավետությամբ։ Դա պետք է հաշվի առնեն ինչպես իրենք՝ շինարարները, այնպես էլ պլանավորողները, նախագծողները, մատակարարողները, բոլոր նրանք, ումից կախված են շինարարության ժամկետներն ու որակը։

ՍՍՀՄ Մինիստրների սովետը պետք է մշակի 1977 թվականին կապիտալ շինարարության պլանավորման ու ֆինանսավորման նոր մեթոդների անցնելու միջոցառումներ։ Շինարարական կազմակերպությունների գործունեությունը պետք է գնահատվի ըստ ավարտված և պատվիրատուներին հանձնված պատրաստի օբյեկտների ու գործարկվող կոմպլեքսների։ Ժամանակն է կարգ ու կանոն հաստատելու մեր տնտեսական գործունեության այս կարևոր ոլորտում։

Դիմելով շինարարների բազմամիլիոնանոց բանակին, ուզում եմ ասել. հայրենիքն սպասում է, որ դուք ցույց կտաք կազմակերպված աշխատանքի օրինակներ և պատվով կկատարեք պլանային առաջադրանքները։ Այն բանից, ընկերնե՛ր, թե դուք ինչպես կաշխատեք, մեծապես կախված է ամբողջ հնգամյակի բախտը։ Այն, ինչ պլանավորված է, պետք է ժամանակին շարք մտցվի։ (Ծափահարություններ)։

Հնգամյակի մյուս կարևոր խնդիրն է բարձրացնել ժողովրդական տնտեսության այնպիսի հիմնական ճյուղերի արդյունավետությունը, ինչպիսիք են հանույթի արդյունաբերությունը, էներգետիկան և մետալուրգիան։

Այդ ճյուղերի զարգացման ասպարեզում մեր նվաճումները հանրահայտ են. շատ ցուցանիշներով մենք այստեղ դուրս ենք եկել աշխարհում առաջին տեղը։ Եվ, այնուամենայնիվ, էկոնոմիկայի վիթխարի մասշտաբները, նրա զարգացման դինամիզմը պահանջում են ավելի ու ավելի մեծ քանակությամբ հումք, վառելիք, էներգիա, մետաղ։ Պլանով նախատեսված է դրանց արտադրության զգալի աճ։

Սակայն պահանջմունքները ավելի արագ են աճում, քան ռեսուրսները։ Ուստի մենք հարկադրված ենք, մի կողմից, մտցնել ծախսման խիստ գործակիցներ, կիրառել խնայողության խստագույն ռեժիմ, իսկ մյուս կողմից՝ տալ նավթի, գազի, ածխի, պողպատի, գլանվածքի և գունավոր մետաղների արտադրության լրացուցիչ արտադրանքներ։

Բայց հումքի և վառելիքի, էներգիայի և մետաղի ասպարեզում տնտեսության աճող պահանջմունքների անխափան բավարարման պրոբլեմի արմատական լուծումը, դրանց արտադրության հետագա ավելացման հետ մեկտեղ, կպահանջի ծանր ինդուստրիայի բոլոր ճյուղերի արդյունավետության բարձրացման մեծ ջանքեր։

Միտքս պարզաբանելու համար օրինակ կբերեմ մետաղը։ Այն մեզ չէր բավականացնում և այն ժամանակ, երբ ձուլվում էր 50 միլիոն տոննա պողպատ, չի բավականացնում և հիմա, երբ մենք ձուլում ենք գրեթե երեք անգամ շատ։ Այդ պրոբլեմը միայն արտադրության քանակական մեծացման ուղիով լուծելը թե՛ սխալ կլիներ և թե՛ շատ թանկ կնստեր ժողովրդական տնտեսության վրա։ Հենց դրա համար էլ առաջնահերթ նշանակություն է ստանում գործի որակական կողմը, ճյուղի արդյունավետության բարձրացումը։ Իսկ ռեզերվներն այստեղ հսկայական են։

Եվ պրոբլեմի մյուս, դարձյալ շատ էական, կողմը մետաղի խնայողությունն է այն ճյուղերում, որոնք նրա գլխավոր սպառողներն են։ Այդպիսի խնայողությունը կարող է և պետք է ապահովվի մետաղի մշակման առավել կատարելագործված տեխնոլոգիայի, մեքենաների կոնստրուկցիաների թեթևացման, մնացուկների ու խոտանի վճռական կրճատման, արտադրության մեջ մետաղի տնտեսապես արդյունավետ փոխարինիչների լայն արմատավորման հաշվին։

Վերջերս կուսակցության Կենտրոնական կոմիտեն հանձնարարեց մշակել հատուկ որոշումներ սև և գունավոր մետալուրգիայի զարգացման մասին։ Նկատի է առնվում նախապատրաստել և իրականացնել մետաղի պրոբլեմի լուծման կոմպլեքսային ծրագիր։ Հարկավոր է արագացնել այդ որոշումների նախապատրաստումը և ապահովել դրանց կենսագործումը։

Այժմ գյուղատնտեսության մասին։ Էկոնոմիկայի այս բնագավառին տասներորդ հնգամյակում մեծ ուշադրություն է նվիրվում։

Գլխավորն է ամրապնդել և զարգացնել հացահատիկի արտադրության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները։ Մեր կենտրոնական խնդիրն է՝ հնգամյակի վերջում դուրս գալ 235 միլիոն տոննա հացահատիկի բնագիծը։ Դրա համար հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել հողագործության կուլտուրան՝ բարելավել ցանքատարածությունների կառուցվածքը, ավելի եռանդուն կերպով պայքարել բերքատվության բարձրացման համար, ավելի շատ աշնանացան կատարել, ավելի լավ զբաղվել այնպիսի արժեքավոր կուլտուրաներով, ինչպիսիք են բրինձը, եգիպտացորենը, կորեկը, սոյան, սորգոն և այլն։

Իհարկե, երկրի պահանջմունքները հացահատիկով չեն սահմանափակվում։ Անհրաժեշտ է այսուհետև ևս մեծացնել բամբակի, վուշի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, բանջարեղենի, մրգերի և հողագործական մյուս մթերքների արտադրությունը։ Եվ որ հատկապես կարևոր է՝ պետք է ավելի շատ, զգալիորեն ավելի շատ արտադրել անասնապահական մթերքներ, ավելի արագ հաղթահարել բնակչությանը մսամթերքներ և կաթնամթերքներ մատակարարելու գործում եղած դժվարությունները։

Բնականաբար, այսօր ես չեմ կարող անդրադառնալ գյուղատնտեսության



առջև կանգնած բոլոր խնդիրներին։ Դրանցից շատերն այսպես թե այնպես արծարծվել են ավելի վաղ։ Առավել հրատապների առթիվ քաղբյուրոն ընդունել է մի շարք որոշումներ, դրանք ձեզ հայտնի են։

Այս պլենումում ես կկամենայի նորից ընդգծել, որ արդի փուլում գյուղատնտեսության հետագա վերելքի պրոբլեմը, նախ և առաջ, նրա արդյունավետության բարձրացման պրոբլեմն է՝ ամենալայն առումով։ Ընդհանուր խնդիրը կարելի է ձևակերպել այսպես՝ խելացիորեն, տնտեսաբար օգտագործել պետության կողմից գյուղատնտեսության զարգացման համար հատկացվող հսկայական ռեսուրսները, հոգատար վերաբերմունք ցուցաբերել դեպի հողը, հասնել յուրաքանչյուր հեկտարի, ներդրված յուրաքանչյուր ռուբլու, պարարտանյութի յուրաքանչյուր տոննայի առավելագույն փոխհատուցման։

Վերցնենք հողերի մելիորացումը։ Հնգամյա պլանով դրան հատկացվում է ավելի քան 40 միլիարդ ռուբլի՝ նույնքան, որքան իրացվել է վերջին երկու հնգամյակում՝ միասին վերցրած։ Այդպիսի մասշտաբներ, այդպիսի վիթխարի ծրագրեր դեռևս չի իմացել համաշխարհային պրակտիկան։ Եվ մենք կարող ենք դրանով հպարտանալ։ (Ծափահարություններ)։

Մեծ միջոցներ կհատկացվեն Պովոլժիեում հացահատիկի երաշխավորված արտադրության խոշոր գոտու ստեղծմանը, ոչ-սևահողային գոտու հողերի բարելավմանը, Ղազախստանում, Միջին Ասիայի հանրապետություններում, Ուկրաինայի հարավում և այլ շրջաններում ոռոգման ընդլայնմանը։

Միանգամայն ակնհայտ է, որ հսկայական միջոցներ հատկացնելով մելիորացմանը, պետությունն իրավունք ունի սպասելու, որ ոռոգելի և չորացված հողերից կստացվի արտադրանքի համապատասխան աճ, որ կբարելավվի նրա որակը։ Այդ ուղղությամբ պետք է կողմնորոշել կադրերին, դրան պետք է ենթարկված լինի ջրատնտեսական և հողային մարմինների ամբողջ աշխատանքը։

Վերջնական արդյունքը պետք է որոշի նաև մեր մոտեցումը գյուղատնտեսության մեքենայացմանը։ Այստեղ ևս առաջին պլանի վրա պետք է դնել տրակտորների, մեքենաների ու սարքավորումների որակը, դրանց կոմպլեքսային մատակարարումը, մեխանիզատորների պատրաստումն ու նրանց ամրացումը գյուղում։

Հնգամյա պլանի նախագիծը քննարկելիս մենք լուրջ կշտամբանքներ արտահայտեցինք տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրության հասցեին։ Գանգատվելով նոր տեխնիկայի արտադրության համար անհրաժեշտ կարողությունների պակասից, նա շարունակում է թողարկել հնացած կոնստրուկցիաների տրակտորներ ու մեքենաներ, որոնք վաղուց պահանջարկ չեն վայելում կոլտնտեսություններում և սովխոզներում։ Օրինակ, ԴՏ—54 տիպի տրակտորը թողարկվում է արդեն մոտավորապես 30 տարի։ Միանգամայն անհանդուրժելի է, երբ մինիստրությունը չի նախատեսում նույնիսկ մինչև հնգամյակի վերջը «Կիրովեց» տիպի գերազանց որակի տրակտորների համար ապահովելու կցովի և կախովի մեքենաների անհրաժեշտ կոմպլեկտ։ Չշտկել դրությունը՝ նշանակում է վաղօրոք նոր հզոր տեխնիկան դատապարտել պարապուրդի։

Ըստ երևույթին, Մինիստրների սովետը պետք է հատկապես քննարկի այդ մինիստրության աշխատանքի հարցը և վճռականորեն շտկի դրությունը։

Արդյունավետության դիրքերից պետք է նայել նաև գյուղատնտեսության քիմիացման պրոբլեմներին։

Կարևոր է ապահովել պարարտանյութերի որակի բարձրացումը, ֆոսֆատների արտադրության արագ մեծացումը, որոնց կարիքն առանձնապես զգում են Սիբիրի և Ղազախստանի հացահատիկային շրջանները։ Անհրաժեշտ է լրջորեն ամրապնդել ագրոքիմիական ծառայությունը։ Եվ որ ամենագլխավորն է՝ պայքար հայտարարել պարարտանյութերի կորուստներին։

Հոգատարություն ցուցաբերելով հանքային պարարտանյութերի արդյունավետ օգտագործման նկատմամբ, չի կարելի աչքաթող անել դրանց արտա-

*դրության արագ մեծացման անհրաժեշտությունը, հատկապես հնգամյակի առաջին տարիներին։*

*Ես այս մասին ասում եմ, որովհետև մինչև օրս շարք չեն մտել այն կարողությունները, որոնք պետք է մտնեին դեռ անցյալ տարի։ Անբավարար է կատարվում ընթացիկ տարվա պլանը։ Դրությունը հարկավոր է շտապ կարգով շտկել. դրանից մեծապես կախված կլինեն գյուղատնտեսության հաջողությունները։ Կարծում եմ, որ ամենամոտ ժամանակներս քաղբյուրոն կլսի այն ընկերներին, ովքեր պատասխանատու են այդ գործի համար։*

*Մեծ խնդիրներ են ծառացած անասնապահության ասպարեզում։ Այստեղ, գլխաքանակի մեծացման միջոցառումների հետ մեկտեղ, պետք է նաև ավելի մեծ ուշադրություն նվիրել որակական ցուցանիշներին, արդյունավետության բարձրացմանը։ Կնշեմ թեկուզ այնպիսի ռեզերվ, ինչպիսին է մսատու անասնապահության զարգացումը, խոշոր եղջերավոր անասունների բտման ու գիրացման ինտենսիվ մեթոդների արմատավորումը։ Մասնագետների կարծիքով, դա թույլ կտար պետությանը վաճառվող անասունների միջին քաշը հասցնել առնվազն 350—400 կիլոգրամի։ Իսկ մեր մասշտաբների դեպքում դա նշանակում է լրացուցիչ կերպով ստանալ մեկուկես-երկու միլիոն տոննա միս։*

*Մսի արտադրությունն ավելացնելու հսկայական ռեզերվներ կան խոզաբուծության և ոչխարաբուծության արագ զարգացման մեջ։ Մեծ արդյունք կարող է տալ բրոյլերային արդյունաբերությունը, այս մասին վկայում է համաշխարհային և հայրենական պրակտիկան։*

*Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման, նրա որակական ցուցանիշների հետագա բարելավման խնդրի լուծման գործում, անտարակույս, մեծ դեր կխաղա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման զարգացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հիման վրա։ Այստեղ թաքնված են արտադրության ծավալների աճի, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, հողագործության և անասնապահության արտադրանքի ինքնարժեքի իջեցման հսկայական հնարավորություններ։*

*Դրա հետ մեկտեղ կկամենայի մեկ անգամ ևս նախազգուշացնել այդ գործում խոտորումների անթույլատրելիության մասին։ Այս մասին հարկ է ասել, որովհետև որոշ տեղերում սկսել են երևան գալ փաստեր, երբ ընկերները տեղերում, դեռ նորը չստեղծած, շտապում են խորտակել հինը՝ մասնագիտացված ձեռնարկությունները դեռ նոր են կառուցում, իսկ տնտեսությունների ֆերմաներն արդեն վերացրել են։ Այսպիսի մոտեցումը չի նպաստում մթերքների արտադրության ավելացման տեմպերի արագացմանը։*

*Նույն կապակցությամբ պետք է ասել նաև այն մասին, որ կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրության սահմանափակումը նույնպես վաղաժամ է։ Անձնական տնտեսություններին հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել, նրանց մասին հոգ տանել։*

*Այժմ, գյուղատնտեսական արտադրության աճի հետ մեկտեղ, ավելի ու ավելի սուր կերպով է ծառանում այն ամենը առավել արդյունավետ օգտագործելու խնդիրը, ինչն արդեն տալիս է գյուղատնտեսությունը։ Չկա ոչինչ ավելի վատ, քան սպառողին անհրաժեշտ արժեքավոր մթերքների կորուստը, որոնց արտադրության վրա ծախսվել են մեծ միջոցներ, կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների լարված աշխատանքը։*

*Այս մասին հատկապես տեղին է հիշեցնել այս տարի։ Հսկայական ու լարված ջանքերի գնով մենք շահեցինք բերքի համար մղված ճակատամարտը։ Բայց լիակատար հաղթանակն ապահովելու համար հարկավոր է շահել նաև հաջորդ ճակատամարտը՝ հողի շռայլ բարիքների պահպանման համար, այն բանի համար մղվող ճակատամարտը, որպեսզի գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ գործադրվող ջանքերի արդյունքները իր սեղանի վրա զգա ամեն մի սովետական ընտանիք։* (Ծափահարություններ):

*Այլ կերպ ասած, խոսքն այն մասին է, որ ինչպես հարկն է կարգաբերվեն գյուղատնտեսությունն սպառողի հետ կապող մեխանիզմի բոլոր օղակները։*

*Այդ տեսակետից կոնկրետ շատ քայլեր կարելի է և պետք է անել արդեն այժմ, չսպասելով ինչ-որ լրացուցիչ ցուցումների։*

*Դրա հետ մեկտեղ գյուղատնտեսության և մյուս այն ճյուղերի արտադրատնտեսական համագործակցության բարելավումը, որոնց հետ նա անմիջականորեն կապված է, մեծ ու բարդ հարց է։*

*Նրա լուծումը պահանջում է մշակել միջոցառումների կուռ սիստեմ, որոնք թույլ տան ապահովել ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի, այդ կոմպլեքսի մեջ մտնող բոլոր ձեռնարկությունների և կազմակերպությունների հստակ փոխգործողությունը։ Ծառանում է նաև երկրում պարենային գործի կառավարումը վճռականորեն կատարելագործելու հարցը։ Կուսակցության Կենտկոմի հանձնարարությամբ, ներկայումս աշխատանք է կատարվում այդ հարցերի լուծման ուղիները որոշելու ասպարեզում։*

*Մրգերի, բանջարեղենի և շուտ փչացող այլ արտադրանքի արտադրության ու պահպանման համար, ըստ երևույթին, կպահանջվի ստեղծել նոր կազմակերպական ձևեր, ամրապնդել մթերող կազմակերպությունների և վերամշակող ձեռնարկությունների նյութա-տեխնիկական բազան։ Այդպիսի փորձ կա Մոլդավիայում, Ուկրաինայում, Միջին Ասիայում, Ադրբեջանում, Վրաստանում, Հյուսիսային Կովկասում։ Շատ արդյունավետ են միջտնտեսային և ագրոարդյունաբերական կոոպերացման հիման վրա բանջարեղենի և մրգի արտադրությունը մասնագիտացնելու ու համակենտրոնացնելու միջոցառումները։ Այդ կարևոր գործում պետք է ավելի լավ օգտագործել սպառողական կոոպերացիայի հնարավորությունները։*

*Այսպիսով, գյուղատնտեսության առջև մեծ խնդիրներ են կանգնած։ Թույլ տվեք վստահություն հայտնել, որ գյուղի աշխատավորներն ամեն ինչ կանեն՝ մեծ նվաճումներով նշանավորելու 1977 թվականը և ամբողջությամբ վերցրած հնգամյակը։* (Երկարատև ծափահարություններ):

*Ինչպես դուք հիշում եք, համագումարում խստապահանջ կերպով ասվեց* ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների *արտադրությունը վճռականապես բարելավելու անհրաժեշտության մասին։ Չկրկնելով ասվածը, կկամենայի ամենից առաջ նշել, որ «Բ» խմբի համար պլանի նախագծում դրված առաջադրանքները մենք համարում ենք նվազագույն։*

*Այս մասին տեղին է հիշեցնել, քանի որ անցյալ հնգամյակում 19 արդյունաբերական մինիստրություններից «Բ» խմբի արտադրանքի առաջադրանքները կատարեցին միայն 5-ը։ Դա չպետք է կրկնվի։ Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը մինիստրների նկատմամբ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանները կատարելու համար։*

*Սպառման առարկաներ թողարկող ճյուղերի պատվի գործն է գերազանցել պլանային և լրացուցիչ առաջադրանքները։ Մենք բոլորս հավատում ենք, ընկերներ, որ այդ ճյուղերի աշխատողները հաջողությամբ կլուծեն կուսակցության առաջադրած խնդիրը։* (Ծափահարություններ):

*«Բ» խմբի ճյուղերում առանձնապես մեծ են այն ռեզերվները, որոնք թաքնված են արտադրանքի որակի բարձրացման մեջ։ Դա վերաբերում է ոչ միայն կոշիկի, տրիկոտաժի և կարի արդյունաբերության առարկաներին, այլև տևական օգտագործման շատ ապրանքների։*

*Եվ որակ ասելով պետք է հասկանալ ոչ միայն այս կամ այն առարկայի լավորակությունը, այլև նրա տեսքը, ձևը, մոդային համապատասխան լինելը։ Դա նշանակում է, որ լուրջ բարելավման կարիք ունի ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանավորումը։ Այն պետք է դառնա շատ ավելի ճկուն, զգայուն կերպով արձագանքի սպառողների ճաշակի ու պահանջմունքների փոփոխությանը։*

*Մյուս հասունացած միջոցառումը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ որակի խթանման հարցի լուծումն է։ Սուր կերպով են դրված նաև կազմակերպական հարցերը։ Թեթև արդյունաբերության մինիստրության հետ մեկտեղ այդպիսի ապրանքների արտադրությամբ զբաղված*

են ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղեր։ Իսկ դրանց միջև պատշաճ կոորդինացում չկա։

ՍՍՀՄ Մինիստրների սովետը ներկայումս առաջարկություններ է նախապատրաստում մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրության հետագա զարգացման մասին։ Կարծում եմ, որ ընկերները պետք է բավական լայնորեն մոտենան մեր առջև կանգնած խնդիրներին, իրենց աշխատանքը նպատակամղեն ոչ թե մանր, մասնակի բարելավումների, այլ այն բանին, որ վճռական տեղաշարժերի հասնեն ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ամբողջ ոլորտում։

Այս հարցը խիստ կարևոր, հիրավի, ծրագրային հարց է՝ թե՛ սոցիալական, թե՛ տնտեսական տեսակետից։ Ընթացիկ հնգամյակում այն առանձնահատուկ հրատապություն է ստանում։ Մենք մարդկանց մոբիլիզացնում ենք բարձր արտադրողական աշխատանքի, պլանային ցուցանիշների գերակատարման, հանդիպական պլանների, իսկ մի շարք ճյուղերում՝ լրացուցիչ առաջադրանքների։ Դա, բնականաբար, պարտավորեցնում է ավելի լավ բավարարել բնակչության պահանջմունքները, նրա հաջող եկամուտներն ապահովել բավարար քանակությամբ բարձրորակ սպառման առարկաներով և սպասարկումներով։

Եվս մի կարևոր հարց, որի վրա կուզենայի հրավիրել պլենումի մասնակիցների ուշադրությունը. **դա աշխատանքային ռեսուրսների հարցն է։**

Աշխատուժի պահանջմունքը մեզանում աճելու է ինչպես արտադրական, այնպես էլ ոչ-արտադրական ոլորտում։ Մինչդեռ ժողովրդագրական գործոնների՝ պատերազմի հեռավոր հետևանքների հետ առնչված գործողությունը 80-ական թվականներին կհասցնի աշխատունակ բնակչության ներհոսի խիստ կրճատման։

Ստեղծված իրավիճակը ամենայն սրությամբ է դնում խնայողության, աշխատանքային ռեսուրսների է՛լ ավելի ռացիոնալ օգտագործման խնդիրը։ Դրա լուծման գլխավոր ուղին աշխատանքի արտադրողականության աճի արագացումն է, որը պետք է ձեռք բերվի նախ և առաջ ձեռքի աշխատանքի մեքենայացման հաշվին՝ ոչ միայն հիմնական արտադրություններում, այլև բեռնման-բեռնաթափման և նորոգման օժանդակ աշխատանքներում։

Այդ խնդրի լուծմանը պետք է նպատակամղել գիտական և կոնստրուկտորական միտքը, դրա վրա բևեռել գյուտարարների և ռացիոնալիզատորների ուշադրությունը, այն դարձնել մեքենաշինական ճյուղերի աշխատանքի կենտրոնը։

Աշխատանքային ռեսուրսների գործոնին, դրանց խնայողական օգտագործմանը հարկավոր է ավելի մեծ ուշադրություն դարձնել կապիտալ շինարարության նախագծերը կազմելիս։ Կադրերի ներգրավման և ամրացման համար, առանձնապես հեռավոր շրջաններում, կարևոր է ավելի շատ հոգ տանել մարդկանց բնակարանի, աշխատանքի ու կենցաղի պայմանների մասին։

Դրա հետ մեկտեղ, ընկերնե՛ր, հարկավոր է ամենալուրջ ուշադրություն նվիրել աշխատանքային կարգապահության վիճակին։ Մեզ մոտ դեռ շատ են, չափազանց շատ են գործալքումները, ուշացումները, պարապուրդները։ Դա մեծ չարիք է, որի պատճառով կորչում են միլիոնավոր մարդ-օրեր։

Եվ դրա դեմ պայքարելու համար հարկավոր է ոտքի հանել բոլոր կուսակցական կազմակերպություններին, ամբողջ հասարակայնությանը։

Մի խոսքով, ընկերնե՛ր, այստեղ հարցեր շատ կան և այն էլ սուր, դժվարին հարցեր։ Դրանց լուծման համար հարկավոր է մշտական, սիստեմատիկ աշխատանք տանել թե՛ կենտրոնում և թե տեղերում։

Մի քանի խոսք **արտաքին տնտեսական կապերի մասին։** Այն ուշադրությունը, որ Կենտրոնական կոմիտեն վերջին տարիներս նվիրել է դրանց զարգացմանը, տվել է իր պտուղները՝ թե՛ քաղաքական և թե տնտեսական։

Այդ կուրսը մենք կվարենք նաև այս հնգամյակում։ Ենթադրվում է, որ սոցիալիստական երկրների հետ առևտուրը կաճի 41 տոկոսով, իսկ արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական պետությունների հետ՝



ավելի քան 31 տոկոսով։ Պլանով նաև նախատեսված է շատ արդյունաբերական օբյեկտներ ստեղծել փոխհատուցման հիման վրա։

Բայց որքան լայնորեն ենք մենք զարգացնում արտաքին տնտեսական կապերը, այնքան կարևոր է դառնում դրանց արդյունավետության հարցը։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի ընդունած որոշումը նվիրված է արտաքին տնտեսական գործունեության կառավարման կատարելագործմանը։ Որոշմամբ նախատեսված է եղած թերությունները հաղթահարելու միջոցառումների սիստեմ, կարևոր հանձնարարություններ են տրված կենտրոնական տնտեսական մարմիններին։ Կենտկոմը այդ հարցը անդադրում վերահսկողության տակ կպահի։

Ես, ընկերնե՛ր, չէի կարող և իմ առջև նպատակ էլ չէի դրել խոսել այն խնդիրների մասին, որ մեր առջև կանգնած են հնգամյակի կատարման համար մղվող պայքարի բոլոր վճռական տեղամասերում։ Այդ թվում նաև այնպիսի հրատապ խնդիրների մասին, ինչպիսին է տրանսպորտի պրոբլեմը, որտեղ բավական լուրջ դժվարություններ են ստեղծվել, ինչպիսիք են նյութատեխնիկական մատակարարման սիստեմի բարելավման, ժողովրդական տնտեսության պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու բնագավառում կուսակցության նախատեսած խնդիրների իրականացման պրոբլեմները։ Դրանց մասին լուրջ խոսակցություն դեռ կլինի։ Բայց կկամենայի, որ կուսակցական և տնտեսական մարմիններն արդեն այժմ ակտիվորեն ձեռնամուխ լինեին այնպիսի միջոցառումների նախապատրաստմանը, որոնք կոչված են կարճ ժամանակամիջոցում հաղթահարելու աշխատանքի այդ կարևոր տեղամասերում եղած դժվարություններն ու թերությունները։ Ժամանակը չի սպասում։

Մի քանի դիտողություն եկող՝ 1977 թվականի աշխատանքի մասին։

Ինչպես արդեն ասացի, ընթացիկ տարվա արդյունքները ցույց են տալիս, որ մենք կարող ենք է՛լ ավելի արագորեն առաջ ընթանալ, քան նախատեսված էր պլանով։ Պատշաճ ռեզերվ ստեղծելու, ամբողջ հնգամյակի կատարման հուսալի երաշխիք ապահովելու համար 1977 թվականին մենք պետք է դուրս գանք է՛լ ավելի բարձր բնագծեր, ամեն բան անենք պլանային կանխագծումները գերազանցելու համար։ Իհարկե, հարկավոր է այդ բանն անել ոչ թե ի վնաս արդյունավետության և որակի, այլ նախ և առաջ դրանց բարձրացման հիման վրա։

Այդ կապակցությամբ հսկայական նշանակություն են ստանում հանդիպական պլանները։ Դրանց մշակման և իրականացման ընթացքում դրսևորվում է աշխատավորական կոլեկտիվների ձգտումը կոնկրետ ավանդ ներդնելու հնգամյակի առաջադրանքների վաղաժամկետ կատարման, XXV համագումարի առաջադրած արմատական տնտեսական պրոբլեմների լուծման գործում։

Այստեղ գործունեության լայն ասպարեզ կա թե՛ տնտեսական մարմինների և թե՛ կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների համար։ Ամսական և եռամսյակային առաջադրանքների գերակատարմանը, նյութական ու ֆինանսական ռեսուրսների, հումքի, վառելիքի ու էներգիայի խնայողության ռեժիմի ուժեղացմանը պետք է նպատակամղված լինի սոցիալիստական մրցությունը, որը աշխատանքային ակտիվության բարձրացման, տնտեսական խնդիրների հաջող կատարման հզոր, փորձված լծակ է։

1977 թվականը՝ կուսակցության XXV համագումարի որոշումների կատարմանը նպատակամղված մեր աշխատանքի երկրորդ տարին, հատկանշական է նրանով, որ երկիրը տոնելու է մեծ հոբելյան՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։ (Ծափահարություններ)։ Թույլ տվեք մեր ընդհանուր վստահությունը հայտնել, որ մեր ամբողջ լենինյան կուսակցությունը, մեր ամբողջ ժողովուրդը այդ պանծալի օրերը կդիմավորեն աշխատանքային նոր մեծագործություններով, կոմունիզմի համար մղվող պայքարի մեծ ճակատի բոլոր տեղամասերում աշխատանքային նոր սխրագործություններով։ (Երկարատև ծափահարություններ)։

Իսկ հիմա, ընկերնե՛ր, թույլ տվեք կանգ առնել կուսակցության միջազգային գործունեության մի քանի հարցերի վրա։

Այն անցնում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների իրականացման նշանաբանով։ Համագումարում ընդունված խաղաղության և միջազգային անվտանգության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը մենք անմիջապես, առանց հապաղելու, սկսեցինք կենսագործել։

Ինչպես միշտ, Կենտկոմի քաղբյուրոն առաջնահերթ ուշադրություն է նվիրում սոցիալիստական երկրների հետ եղբայրական կապերի զարգացմանը։ Մենք գոհունակությամբ կարող ենք ասել, որ անցած ամիսներին զգալի հաջողություններ ձեռք բերվեցին համաշխարհային սոցիալիզմի դիրքերի հետագա ամրապնդման գործում։

Ամրապնդվում և հաջողությամբ զարգանում է սոցիալիստական պետությունների մեծ համագործակցությունը։ ՍՄԿԿ XXV համագումարում բարձր գնահատական տրվեց մեր կուսակցությունների ու երկրների համագործակցությանը. ես այն չեմ կրկնի։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո տեղի ունեցած մի շարք եղբայրական կուսակցությունների (Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, ԳԴՀ-ի, Մոնղոլիայի) համագումարները, ինչպես նաև մի փոքր ավելի շուտ կայացած Հունգարիայի, Լեհաստանի, Կուբայի կոմունիստների համագումարները վերստին հավաստեցին մեր համերաշխ ընտանիքի գաղափարական անխախտ միասնությունն ու քաղաքական համախմբվածությունը։ Վերջերս մեզ մոտ էր Մոնղոլիայի կուսակցական-կառավարական պատվիրակությունը՝ ընկեր Ցեդենբալի գլխավորությամբ։ Մենք վարեցինք լավ բանակցություններ, ստորագրեցինք մի շարք կարևոր համաձայնագրեր։ Նոյեմբերին Սովետական Միություն կժամանի Լեհաստանի պատվիրակությունը՝ ընկեր Գերեկի գլխավորությամբ։ Ռումինիայի, նրա կոմունիստական կուսակցության հետ բարեկամության զարգացմանը նպաստեցին ընկեր Չաուշեսկուի Սովետական Միություն կատարած այցը և մեր ընկերական բանակցությունները նրա հետ։

Շարունակվում է առաջ գնալ սոցիալիզմի երկրների տնտեսական համագործակցությունը։ Այս ամռանը տնտեսական փոխօգնության խորհրդի 30-րդ նստաշրջանում ընդունվեցին կարևոր որոշումներ, մասնավորապես երկարաժամկետ նպատակային ծրագրերի՝ հումքային, էներգետիկ, պարենային և այլ ծրագրերի մշակման մասին։ Մի խոսքով, սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան զորեղանում է։

Նստաշրջանի աշխատանքին այս անգամ մասնակցում էին ոչ միայն Հարավսլավիայի, այլև Վիետնամի, ԿԺԴՀ-ի, Լաոսի և Անգոլայի ներկայացուցիչները։ Դա ցույց է տալիս ՏՓԽ-ի հեղինակության աճը, նրա կապերի ընդլայնումը։

Կենտկոմի քաղբյուրոն մշտական սերտ կոնտակտներ է պահպանում սոցիալիզմի երկրների եղբայրական կուսակցությունների ղեկավարների հետ։ Այդ տեսակետից ես նույնպես ստիպված եղած շատ աշխատել։ Այն օգտակար հանդիպումներից բացի, որ տեղի ունեցան հունիսի վերջերին կոմկուսների բեռլինյան կոնֆերանսի ընթացքում, այդ թվում՝ ընկ. Տիտոյի հետ կայացած հանդիպումից բացի, ես, ինչպես գիտեք, Ղրիմում զրույցներ ունեցա ընկերներ Գերեկի, Հուսակի, Ժիվկովի, Չաուշեսկուի, Ցեդենբալի, Հոնեկերի, Կադարի հետ։ Դրանք հանդգամանալի, իրոք, ընկերական, անկեղծ խոսակցություններ էին մեր համագործակցության և մեր համատեղ գործողությունների հրատապ շատ հարցերի շուրջը։

Ընդհանուր առմամբ, այս տարվա ղրիմյան հանդիպումների շարքը, ասես, մեր եղբայրական համագործակցության զարգացման, մեր միասնական դիրքերի հետագա մշակման մի նոր փուլ եղավ։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հավանություն տվեց այդ հանդիպումների ժամանակ կատարված աշխատանքին։ (Ծափահարություններ)։ Մի շարք կուսակցություններում նույնպես ընդունվեցին հատուկ որոշումներ, որոնցով բարձր է գնահատվում այդ հանդիպումների նշանակությունը։



Մի խոսքով, ընկերնե՛ր, սոցիալիստական պետությունների մեր հիանալի ընտանիքը ապրում է հարուստ, լիարյուն կյանքով։ Դա հսկայական նշանակություն ունեցող գործոն է, և մեր լենինյան կուսակցությունը բոլոր ուժերը կգործադրի, որպեսզի դա այսուհետ ևս այդպես լինի։ (Երկարատև ծափահարություններ)։

Շատ մեծ նշանակություն ունի այն, որ ավարտվեց Վիետնամի վերամիավորումը, որ նա հռչակված է սոցիալիստական հանրապետություն։ (Երկարատև ծափահարություններ)։ Հիմա Վիետնամի Սոցիալիստական Հանրապետությունն ունի ավելի քան 50 միլիոն բնակիչ։ Բնակչության թվով նա աշխարհի երրորդ սոցիալիստական պետությունն է։

Վիետնամը իմպերիալիստական ագրեսիայի դեմ, ազատության և անկախության համար մղած հերոսական պայքարի իր մեծ փորձով, իր բարձր հեղափոխական հեղինակությամբ ներկայումս դարձել է Հարավ-Արևելյան Ասիայի, նաև ամբողջ Ասիայի խաղաղության և առաջադիմության կարևոր գործոնը։ Մենք ջերմորեն ողջունում ենք վիետնամցի բարեկամների պատմական հաղթանակը և նրանց մաղթում նոր մեծ հաջողություններ։ (Ծափահարություններ)։

Կարևոր իրադարձություն եղավ նաև հայրենասիրական ուժերի հաղթանակը Լաոսում, այն, որ այդ երկրում իշխանության գլուխ անցավ մարքս-լենինյան ժողովրդա-հեղափոխական կուսակցությունը։ Այդ երկրի աշխատավորները, իշխանությունը վերցնելով իրենց ձեռքը, ձեռնամուխ եղան նոր կյանքի կառուցմանը։ Այս տարվա գարնանը Լաոսի կուսակցական-կառավարական պատվիրակության ՍՍՀՄ կատարած այցը և այն ընկերական լավ զրույցը, որ վերջերս ես ու ընկ. Սուլովը ունեցանք Լաոսի եղբայրական կուսակցության գլխավոր քարտուղար ընկ. Քեյսոն Ֆոմվիխանի հետ, ցույց տվեցին, որ սովետա-լաոսյան բարեկամությունը լավ հեռանկարներ ունի։ Կարծում եմ, ընկերնե՛ր, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ հանձին Լաոսի, սոցիալիստական պետությունների ընտանիքը համալրվում է ևս մի նոր անդամով. (Ծափահարություններ)։

Անկախ զարգացման ուղի է բացվել նաև դեմոկրատական Կամպուչիայի առջև։

Առաջվա պես առանձնահատուկ է Չինաստանի հետ մեր հարաբերությունների հարցը։ Այնտեղ տեղի են ունենում ներքաղաքական բարդ պրոցեսներ։ Այժմ դեռ դժվար է ասել, թե ինչպիսին կլինի ՉԺՀ-ի ապագա քաղաքական կուրսը։ Բայց արդեն այժմ պարզ է, որ մեկուկես տասնյակ տարվա ընթացքում Պեկինի վարած արտաքին քաղաքական գիծը հիմնովին վարկաբեկվել է ամբողջ աշխարհում։

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա Չինաստանի հետ հարաբերությունները լավացնելու ձգտումը մեր հետևողական կուրսն է։ Ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ XXV համագումարում, «Չինաստանի, ինչպես և ուրիշ երկրների վերաբերմամբ մենք հաստատ հետևում ենք իրավահավասարության, սուվերենության ու տերիտորիալ ամբողջականության հարգման, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, ուժ չգործադրելու սկզբունքներին։ Մի խոսքով, մենք պատրաստ ենք նորմալացնելու հարաբերությունները Չինաստանի հետ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա»։ Ավելին։ Մեր համագումարում պարզորոշ նշվեց, որ մենք կողմնակից ենք ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի լավ հարաբերությունների վերահաստատման, որոնք համապատասխանում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Ուզում եմ ընդգծել, որ, մեր կարծիքով, ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի հարաբերություններում չկան այնպիսի հարցեր, որ կարելի չլիներ լուծել բարիդրացիության ոգով։ Մենք այսուհետև ևս կգործենք այդ ուղղությամբ։ Բանը կախված կլինի նրանից, թե ինչպիսի դիրք կբռնի մյուս կողմը։

Ինչ վերաբերում է Ալբանիայի հետ հարաբերություններին, ապա մենք, ինչպես հայտնի է, պատրաստ ենք դրանց վերականգնմանը և չենք կարծում, թե մեզ այդ երկրի հետ ինչ-որ օբյեկտիվ գործոններ են բաժանում։

Քաղաքական մեծ նշանակություն ունեցող շատ իրադարձություններ են

տեղի ունեցել գաղութային կախումից ազատագրված երկրներում։ Առաջին հերթին պետք է ասել օտարերկրյա իմպերիալիստական ինտերվենտների և ներքին ռեակցիայի ուժերի դեմ Անգոլայի հայրենասերների տարած հաղթանակի մասին։

Անգոլական ժողովրդի հերոսական պայքարը համակրանք և աջակցություն գտավ ինչպես Աֆրիկայի մի շարք առաջադեմ երկրներում, այնպես էլ սոցիալիստական պետություններում, այդ թվում՝ Սովետական Միությունում և, ինչպես հայտնի է, նաև Կուբայում։ Մենք անշահախնդիր աջակցություն ցույց տվեցինք Անգոլայի հայրենասերների արդարացի պայքարին, արձագանքեցինք նրա օրինական կառավարության խնդրանքին և դրանով մենք հպարտանում ենք։ (Ծափահարություններ)։

Անգոլայի հաղթանակը ոգեշնչող խթան եղավ աֆրիկյան մայրցամաքի առաջադիմության ուժերի համար։ Ուժեղացավ ժողովուրդների պայքարը ռասիզմի և ռեակցիայի այնպիսի միջնաբերդերի, համաշխարհային իմպերիալիզմի դրածոների դեմ, ինչպիսիք են Հարավային Աֆրիկան և Ռոդեզիան։ Աֆրիկայի հակաիմպերիալիստական ուժերը իրենց ավելի վստահ զգացին։ Այդ բանը մենք էլ կարողացանք զգալ՝ անցած ամիսներին Մոսկվայում ընդունելով աֆրիկյան անկախ երկրների մի շարք հեղինակավոր պատվիրակությունների, այդ մայրցամաքի ժողովուրդների ազատության և առաջադիմության մարտիկների։

Իսկ ժողովրդական Անգոլայի պրեզիդենտ ընկեր Նետոյի՝ վերջերս Սովետական Միություն կատարած այցը ամուր հիմքեր դրեց մեր երկրների բարեկամության հետագա զարգացման և խորացման համար։ ՍՍՀՄ-ի և Անգոլայի միջև բարեկամության և համագործակցության պայմանագրի կնքումը նոր քայլ է սոցիալիզմի աշխարհի և երիտասարդ ազատագրված պետությունների մեծ բարեկամության ամրապնդման ճանապարհին. և ոչ փոքր քայլ, համոզիչ քայլ։ (Ծափահարություններ)։

Արդյունավետ են զարգանում մեր կապերը նաև երիտասարդ աֆրիկյան հանրապետության՝ Մոզամբիկի հետ, որի նոր վկայությունն էր այս տարվա ամռանը հանրապետության պրեզիդենտ, Մոզամբիկի անկախության ճակատի նախագահ ընկ. Մաշելի ՍՍՀՄ կատարած այցը։

Ուզում եմ նաև հատկապես ընդգծել բարեկամ Հնդկաստանի կառավարության ղեկավար տիկին Ինդիրա Գանդիի այս տարի ՍՍՀՄ կատարած հերթական այցի մեծ նշանակությունը։ Նրա հետ վարված բանակցությունները կրկին հաստատեցին, որ Ասիայի այդ մեծ ու խաղաղասեր տերության հետ մեր բարեկամությունը ամրապնդվում ու խորանում է, մեր համագործակցությունը ընդլայնվում է՝ մեծ օգուտ տալով երկու երկրների ժողովուրդներին և ընդհանուր խաղաղությանը։ (Ծափահարություններ)։

Մեր կողմից ակտիվ քայլեր են ձեռնարկվում՝ ի պաշտպանություն Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զարգացող երկրների այն արդարացի պահանջների, որ միջազգային տնտեսական հարաբերությունները վերակառուցվեն իրավահավասարության հիմունքներով, որ վերջ դրվի կապիտալիստական պետությունների կողմից «երրորդ աշխարհի» ավելի թույլ պարտնյորների շահագործման բոլոր ձևերին։ Այդ բնագավառում, ինչպես որ ուրիշ շատ բնագավառներում, սոցիալիստական և զարգացող երկրների շահերը զուգադիպում են։

Իհարկե, «երրորդ աշխարհում», ինչպես որ առհասարակ մեր մոլորակում, շարունակվում է համառ պայքարը առաջադիմության ուժերի և ռեակցիայի ուժերի միջև։ Այդ է վկայում նաև չմիացած երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների հինգերորդ կոնֆերանսը, որը տեղի ունեցավ օգոստոսին Կոլոմբոյում։ Չմիանալու շարժումը դարձել է միջազգային կյանքի նկատելի գործոն, իմպերիալիզմի, գաղութատիրության և ագրեսիայի դեմ ժողովուրդների պայքարի համաշխարհային ճակատի կարևոր օղակ։ Երկարատև ու երբեմն, ինչպես հայտնի դարձավ, ոչ դյուրին քննարկումների հետևանքով, Կոլոմբոյում ընդունված քաղաքական և տնտեսական պրոբլեմների վե-



րաբերյալ փաստաթղթերը հաստատեցին, որ չմիանալու շարժումն ընդհանուր առմամբ պահպանում է իր առաջադիմական բնույթը։

Ընկերնե՛ր։ XXV համագումարը խնդիր դրեց խաղաղասեր պետությունների ջանքերը կենտրոնացնել գոյություն ունեցող պատերազմական օջախների վերացման վրա և առաջին հերթին Մերձավոր Արևելքում արդարացի ու կայուն կարգավորման հասնելու վրա։ Այդ խնդիրը վերջին ժամանակներս առանձնակի, կարելի է ասել՝ հույժ հրատապություն է ստացել։ Բանն այն է, որ այդ շրջանում իրադրությունը նորից է սրվել, որը կապված է Լիբանանի արյունալի իրադարձությունների հետ։

Եթե նայենք իրադարձությունների արմատին, ապա այստեղ մենք գործ ունենք համաշխարհային իմպերիալիզմի, այսինքն՝ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս տերությունների մի նոր փորձի հետ, որի նպատակն է հարված հասցնել Մերձավոր Արևելքում հակաիմպերիալիստական հեղափոխության ուժերին, այստեղ պահպանել և ամրապնդել իր դիրքերը։ Այժմ իմպերիալիզմը բռնել է արաբների միջև երկպառակտչական կոնֆլիկտներ հրահրելու ուղին։

Դրա համար հնարավորություն են ընձեռում արաբական երկրների ներսում դասակարգային շերտավորման խորացումը, նրանց միջև սոցիալ-քաղաքական տարբերությունների աճը։

Լիբանանում ներքին ռեակցիայի ուժերը, որոնց զինում ու քաջալերում են արևմտյան տերությունները և որոնք աջակցություն են ստանում Իսրայելի և Սաուդյան Արաբիայի կողմից, հարձակման են անցել տեղական ազգային հայրենասիրական ուժերի վրա։ Սակայն նրանց հարվածը ուղղված է առաջին հերթին պաղեստինյան դիմադրության շարժման ջոկատների դեմ, այսինքն՝ արաբական աշխարհի հակաիմպերիալիստական ջոկատներից մեկի դեմ։ Դժբախտաբար, պատերազմական գործողությունների մեջ է ներքաշվել նաև Սիրիան։

Սովետական Միությունը հենց սկզբից հանդես է եկել Լիբանանում եղբայրասպան պատերազմի դադարեցման օգտին, այն բանի օգտին, որ այդ երկրի առաջադեմ ուժերը և պաղեստինցի հայրենասերները զերծ մնան ջախջախվելուց, որ պահպանվի Լիբանանի պետական միասնությունը և վիժեցվի այդ երկրի մասնատման հետադիմական պլանը։

Մենք միաժամանակ այն կարծիքին ենք, որ խիստ կարևոր է փոխադարձ բարի կամքի ոգով կարգավորել մի կողմից պաղեստինցի ու լիբանանցի հայրենասերների և մյուս կողմից՝ հարևան Սիրիայի հարաբերությունները։ Դա անհրաժեշտ է արաբական արևելքում հակաիմպերիալիստական ուժերի միասնության վերականգնման համար։

Ինչպես հայտնի է, վերջերս տեղի ունեցավ Սաուդյան Արաբիայի, Եգիպտոսի, Սիրիայի, Քուվեյթի, Լիբանանի պետությունների ղեկավարների և Պաղեստինի ազատագրման կազմակերպության գործկոմի նախագահ Արաֆաթի խորհրդակցությունը։ Համաձայնագիր կնքվեց կրակի դադարեցման, անվտանգության միջարաբական ուժերի ստեղծման և Լիբանանի իրադրության նորմալացման մասին։

Դատելով ամեն ինչից, այդ համաձայնագիրը համենայն դեպս այն իմաստով, ինչ վերաբերում է կրակի դադարեցմանը, ընդհանուր առմամբ կատարվում է։ Տեսնենք, թե բանն ինչպես կընթանա հետագայում։

Մենք, անշուշտ, դրականորեն ենք վերաբերվում Լիբանանում կրակի դադարեցման շուրջը ձեռք բերված պայմանավորվածության բուն փաստին։ Կկամենայինք հուսալ, որ այնտեղ իրադրության նորմալացման պրոցեսը կընթանա առողջ հիմքի վրա, վնաս չհասցնելով Լիբանանի հայրենասիրական ուժերին և պաղեստինյան դիմադրության շարժմանը։

Ըստ երևույթին, այդ շրջանի դրության լրիվ նորմալացման համար դեռ քիչ ժամանակ չի պահանջվի։ Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ին, ապա մենք այսուհետև ևս ամեն բան կանենք Լիբանանում խաղաղ կարգավորման հաջողության համար։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Մենք պարզ տեսնում ենք, որ Լիբանանի իրադարձությունների իսկական հիմքը ընդհանուր առմամբ Մերձավոր Արևելքի դրության կարգա-

վորված չլինելն է։ Վերջերս Սովետական Միությունը հանդես եկավ նոր նախաձեռնությամբ, որը նպատակամղված է Մերձավոր Արևելքին նվիրված Ժնևի կոնֆերանսի վերսկսմանը՝ բոլոր շահագրգռված կողմերի, այդ թվում նաև պաղեստինյան դիմադրության շարժման մասնակցությամբ։ Մենք առաջարկեցինք այդ կոնֆերանսի կոնկրետ օրակարգը։ Դա ընդգրկում է այն բոլոր պրոբլեմները, որոնց լուծումը իրականում կհանգեցներ Մերձավոր Արևելքում կայուն խաղաղության հաստատման։

Այսպիսով, մենք Մերձավոր Արևելքի կոնֆլիկտի հարցում անշեղորեն հետևում ենք մեր կուրսին։ Մեր քաղաքականությունը սկզբունքային է, դասակարգային, մարքս-լենինյան, և միայն այսպիսի քաղաքականություն կարող է վարել մեր երկիրը։ **(Ծափահարություններ)**։

Ընկերնե՛ր։ Մեր կուսակցության միջազգային քաղաքականության առաջին հերթին կայուն խաղաղության համար մղվող պայքարն է։ Մենք կարևորագույն խնդիրներից մեկն ենք համարում լիովին օգտագործել, ընդ որում ոչ միայն Եվրոպայում, այն բարենպաստ հնարավորությունները, որ ընձեռեցին համաեվրոպական խորհրդակցության անցկացումը, պետությունների խաղաղ գոյակցության և համագործակցության վերաբերյալ Հելսինկիում հանդիսավորությամբ ընդունված փաստաթուղթը։ Կուսակցության XXV համագումարի հաստատած ծրագրին լրիվ համապատասխան, մենք շարունակում ենք **աշխատանքը կապիտալիստական պետությունների հետ իրավահավասար փոխշահավետ հարաբերությունների զարգացման ուղղությամբ։**

Յուրաքանչյուր փուլում այդ աշխատանքն ունի իր առանձնահատկությունները։ Հինգ կամ տասը տարի առաջ խնդիր էր դրված ստեղծել Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Կանադայի, Իտալիայի, Անգլիայի և այլ կապիտալիստական երկրների հետ խաղաղ գոյակցության նորմալ հարաբերությունների հիմք, այդ հարաբերությունները մաքրել «սառը պատերազմի» գլխավոր նստվածքներից։ Երբ դա հիմնականում արվեց, մենք ավելի առաջ գնացինք, սկսեցինք ավելի ու ավելի լայն համագործակցություն ծավալել քաղաքականության, էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի բնագավառում։

Վերջին ամիսներս էլ այդ առումով բավական շատ օգտակար բան է արվել։ Ստորագրվել են, օրինակ, այնպիսի համաձայնագրեր, որոնք լիովին համապատասխանում են Հելսինկիում ընդունված եզրափակիչ ակտի ոգուն և տառին. դրանցից են տնտեսական, արդյունաբերական և գիտատեխնիկական համագործակցությանն օժանդակելու մասին Կանադայի հետ կնքված տասնամյա համաձայնագիրը, այդ նույն հարցերի վերաբերյալ Կիպրոսի և Պորտուգալիայի հետ կնքված համաձայնագրերը, կուլտուրական համագործակցության մասին սովետա-պորտուգալական համաձայնագիրը, միջուկային զենքի պատահական կամ չթույլատրված կիրառումը կանխելու մասին, էներգետիկայի, քաղաքացիական ավիացիայի և ավիաշինության բնագավառում համագործակցելու մասին Ֆրանսիայի հետ կնքված համաձայնագրերը, առողջապահության և սոցիալական ապահովության բնագավառում համագործակցելու մասին Ֆինլանդիայի հետ կնքված համաձայնագիրը։ Ինչպես տեսնում եք, գործերն առաջ են գնում։ Ամբողջ աշխարհը տեսնում է, որ ՍՍՀՄ-ն առաջ է գնում խաղաղության և խաղաղ համագործակցության ճանապարհով։ Եվ ամբողջ աշխարհը պետք է իմանա, որ մենք այսուհետև ևս կընթանանք այդ ճանապարհով։ **(Ծափահարություններ)**։

Սակայն պետք է խոստովանել, որ մի շարք պետությունների հետ մեր հարաբերությունների զարգացումը վերջին ժամանակներս դանդաղել է, ընդ որում ոչ մեր մեղքով։ Դա զգալի չափով բացատրվում է որոշ երկրների ներքաղաքական բարդ իրադրությամբ, մասնավորապես ԱՄՆ-ում և ԳՖՀ-ում ծավալված նախընտրական կամպանիաներով։

Բավական է հիշատակել, որ **սովետա-ամերիկյան հարաբերությունների** այնպիսի կարևոր հարցում, ինչպիսին է ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին նոր երկարաժամկետ հա-



մաձայնագրի նախապատրաստումը, գործն ըստ էության դանդաղել է, թեև այդ փաստաթղթի հիմնական բովանդակությունը համաձայնեցվեց բարձր մակարդակով՝ դեռևս 1974 թվականի վերջերին։

Մնացած հարցերի վերաբերյալ մեր վերջին առաջարկությունները ամերիկյան կողմն ստացել է դեռևս այս տարվա մարտին, սակայն մինչև օրս պատասխան չի տվել։ Ընդ որում, մեզ հասկացնում են, թե պատճառը նախընտրական իրադրության բարդություններն են։ Մենք կարող ենք սոսկ ափսոսալ, որ այդպես են մոտենում այն գործին, որից կախված են երկու մեծ ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդումը, ինչպես նաև աշխարհի մթնոլորտի ընդհանուր տևական առողջացումը։

Սակայն, ընդհանուր առմամբ, ԱՄՆ-ի հետ մեր հարաբերությունների զարգացումը պահպանում է դրական միտումը։ Վերջերս պայմանագիր ստորագրվեց խաղաղ նպատակներով ստորգետնյա միջուկային պայթեցումների մասին։ Շարունակվում է փոխշահավետ համագործակցությունը գիտության և տեխնիկայի շատ բնագավառներում։ Բավական լայն չափերի են հասել կուլտուրական փոխանակումները։ Հետզհետե ընդլայնվում են նաև տնտեսական կապերը՝ նույնիսկ այն խոչընդոտների առկայության պայմաններում, որ ստեղծվել են ԱՄՆ-ի խտրական առևտրական օրենսդրության հետևանքով։ Իհարկե, եթե չլինեին այդ խոչընդոտները, մեր տնտեսական կապերը բոլորովին այլ թափ կընդունեին։

Ընտրական կամպանիայի ընթացքում իրար հետ մրցող թեկնածուները՝ պրեզիդենտ Ֆորդը և պ-րն Քարտերը, բազմիցս հայտարարություններ են արել արտաքին քաղաքականության, Սովետական Միության հետ ԱՄՆ-ի հարաբերությունների հարցերի վերաբերյալ։

Սակայն այդ հայտարարությունները մեծ մասամբ կրում են բավական ընդհանուր և հաճախ հակասական բնույթ։ Ընդհանուր առմամբ, երկու հավակնորդներն էլ կարծես հանդես են գալիս միջազգային իրադրության հետագա նորմալացման և ՍՍՀՄ-ի հետ լավ հարաբերությունների զարգացման օգտին։ Բայց նրանցից հաճախ հարկ է լինում լսել նաև այլ բնույթի հայտարարություններ. սպառազինությունների մրցավազքը շարունակելու, «ուժի դիրքից» քաղաքականություն վարելու, Սովետական Միության նկատմամբ այսպես կոչված «կոշտ կուրս» վարելու կոչեր և այլն։

Այդուհանդերձ, ով էլ որ Վաշինգտոնում իշխանության գլուխ կանգնի ընտրություններից հետո, Միացյալ Նահանգները, ըստ երևույթին, ստիպված կլինեն հաշվի առնել աշխարհում ուժերի ռեալ հարաբերակցությունը, որը ամերիկյան կառավարող շրջաններին հարկադրեց վերջին տարիներս, զգաստորեն գնահատելով իրադրությունը, ձեռնամուխ լինել սոցիալիզմի աշխարհի հետ համաձայնության գալու ուղիների որոնմանը։ Համենայն դեպս, մի բան պետք է միանգամայն պարզ լինի. Միացյալ Նահանգների հետ հարաբերությունները լայնորեն զարգացնելու, նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը թուլացնելու մեր գիծը մնում է անփոփոխ։ **(Ծափահարություններ)**։

Այժմ **Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության** հետ հարաբերությունների մասին։ Վերջերս այնտեղ անցկացվեցին բունդեստագի հերթական ընտրությունները։ Նախընտրական կամպանիայի ընթացքում նկատելիորեն աշխուժացել էին այն ուժերը, որոնք գրոհում էին կառավարության «արևելյան քաղաքականության» վրա հակասովետական, հազիվ քողարկված ռևանշիստական դիրքերից։ Այդ իրադրության մեջ մենք անհրաժեշտ համարեցինք հանդես գալ ԳՖՀ-ի նկատմամբ մեր քաղաքականության վերաբերյալ հայտարարությամբ, որպեսզի ամենքի համար պարզ լինի, թե ինչպիսին է Սովետական Միության դիրքորոշումը։

ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի լավ հարաբերությունները զարգացնելու երկու կողմերի պատրաստակամությունը ընդգծելու համար մենք կանցլեր Շմիդտի հետ սկզբունքորեն պայմանավորվեցինք Ֆեդերատիվ Հանրապետություն կատարելիք իմ հերթական այցի շուրջը, որի մասին հրապարակվեց հակիրճ հաղորդագրություն։

Թեև կառավարական կոալիցիայի դիրքերը որոշ չափով տեղի տվեցին, այնուամենայնիվ, ընտրություններում նրա տարած հաղթանակը հավաստեց, ինչպես մենք հասկանում ենք, որ ԳՖՀ-ի բնակչության մեծ մասը հանդես է գալիս խաղաղության և լարվածության թուլացման օգտին, սոցիալիստական պետությունների հետ հարաբերությունների հետագա լավացման օգտին: Դա, ըստ երևույթին, պայմաններ է ստեղծում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի փոխշահավետ հարաբերությունների նորմալ զարգացման համար: Մեր դիրքորոշումը պարզ է. մենք դրա կողմնակիցն ենք:

Առաջվա պես հաջող են զարգանում մեր, ես կասեի, բազմակողմ հարաբերությունները Ֆրանսիայի հետ, այդ թվում՝ նաև արտաքին քաղաքականության հարցերում, թեև, իհարկե, ոչ բոլոր միջազգային գործերում է, որ մենք ընդհանուր դիրքորոշում ունենք այդ երկրի ղեկավարության հետ:

Բացառված չէ, որ պրեզիդենտ Ժիսկար դ՛Էստենի հրավերով, ես, հետևելով փոխայցելությունների սահմանված պրակտիկային, մոտ ապագայում նորից այցելեմ Ֆրանսիա: Կարծում եմ, որ դա հնարավորություն կտա ոչ միայն քննարկելու երկու կողմերին հետաքրքրող հարցերը, այլև խթան ստեղծելու երկու մեծ ժողովուրդների ավանդական բարեկամական համագործակցության ասպարեզում նոր նախաձեռնությունների համար:

Մեր հարևանի և Ասիայի ամենախոշոր պետություններից մեկի՝ Ճապոնիայի հետ հարաբերություններին մենք տվել ենք ու տալիս ենք լուրջ նշանակություն: Մենք միշտ հնարավոր և ցանկալի ենք համարել Ճապոնիայի հետ լայն և կայուն հարաբերությունների, բարիդրացիության ոգով տոգորված հարաբերությունների զարգացումը՝ փոխադարձ հարգանքի և փոխշահավետության հիմունքներով: Այդ մասին, ինչպես ձեզ հայտնի է, մենք ասել ենք բազմիցս, այդ թվում նաև կուսակցության XXV համագումարում:

Վերջին անգամ ես հնարավորություն ունեցա մեր երկու երկրների տևական տնտեսական համագործակցության 10—15 տարվա կոնկրետ հեռանկարների մասին որոշ նկատառումներ արտահայտել, երբ այս տարվա օգոստոսին Ղրիմում զրուցում էի Ճապոնիայի գործարար շրջանների հեղինակավոր պատվիրակության հետ՝ Ճապոնիայի տնտեսական կազմակերպությունների ֆեդերացիայի նախագահ պ-րն Դոկոյի գլխավորությամբ:

Ճապոնացի զրուցակիցներիս վերաբերմունքը և բուն Ճապոնիայում զրույցի հետագա արձագանքները դրական էին: Դա մեկ անգամ ևս հաստատեց, որ մեր երկու երկրների լայն և կայուն փոխշահավետ հարաբերությունների զարգացման համար կա լուրջ հիմք (ըստ էության, դա հաստատվում է նաև մինչև օրս գոյություն ունեցող պրակտիկայով):

Սակայն մենք պատրանքներ չենք տածում և գիտենք, որ սովետա-ճապոնական հիրավի լավ հարաբերությունների համար դեռ բարդ պայքար պետք է մղվի: Այդ մասին նոր հիշեցում եղան ճապոնական իշխանությունների գործողությունները վերջերս սովետական ինքնաթիռի հետ կապված միջադեպի ժամանակ, որը վայրէջք էր կատարել Ճապոնիայում: Փաստերն ամենքին հայտնի են: Ճապոնիայի այդ գործողությունների մասին մեր կարծիքը մենք ամենայն պարզությամբ արդեն արտահայտել ենք սովետական կառավարության հայտարարություններում և Ճապոնիայի արտաքին գործերի մինիստրի հետ Ա. Ա. Գրոմիկոյի ունեցած զրույցի ժամանակ: Այստեղ ես ուզում եմ սոսկ ընդգծել, որ ճապոնական իշխանությունների վարքագիծը լրջորեն մթագնեց սովետա-ճապոնական հարաբերությունների ընդհանուր մթնոլորտը: Դա սովետական մարդկանց մեջ կասկած սերմանեց այն հայտարարությունների անկեղծության նկատմամբ, որ Տոկիոյում արվում են ՍՍՀՄ-ի հետ լավ հարաբերություններ ունենալու ցանկության մասին:

Ընկերնե՛ր: Մենք ուզում ենք, որ պետությունների խաղաղ համագործակցությունը լինի ոչ միայն երկկողմ, այլև ստանա է՛լ ավելի լայն, բազմակողմ բնույթ, իրենից, ասես, ներկայացնելով կայուն խաղաղության շաղկապող նյութեղեն հյուսվածք: Հենց այդ նպատակին են ուղղված, մասնավորապես, Սովետական Միության նաև այն առաջարկությունները, որ համաեվրոպական



կոնգրեսներ անցկացվեն տրանսպորտի, էներգետիկայի, շրջակա միջավայրի պաշտպանության պրոբլեմների վերաբերյալ:

Հելսինկիում ձեռք բերված պայմանավորվածությունների կենսագործման ամբողջ աշխատանքն այժմ տրոհվում է տասնյակ և նույնիսկ հարյուրավոր պրակտիկ գործերի, դրանք գուցե և միշտ չէ, որ նկատելի են, բայց դա բացառիկ կարևորություն ունեցող կուսակցական ու պետական աշխատանք է: Եվ մենք, սովետական մարդիկ, գնահատում ենք բոլոր նրանց ջանքերը, ովքեր գործում են այդ նույն ուղղությամբ, որովհետև դա մեր ընդհանուր գործն է՝ խաղաղության գործը, որը այնքան մոտ է յուրաքանչյուր սովետական մարդու սրտին: (Երկարատև ծափահարություններ):

Եվրոպայում է՛լ ավելի հանգիստ մթնոլորտ ստեղծելու համար օգտակար դեր խաղացին համաեվրոպական խորհրդակցությունում մեր նախաձեռնությամբ հավանության արժանացած, այսպես կոչված, վստահության միջոցառումները՝ այն պրակտիկան, երբ ուրիշ երկրների վաղօրոք ծանուցվում է առաջիկա խոշոր զորավարժությունների մասին, օտարերկրյա դիտորդներ են հրավիրվում այդ զորավարժություններին:

Մենք հետևողականորեն կատարում ենք Հելսինկիի եզրափակիչ ակտի նաև այն դրույթները, որոնք վերաբերում են ժողովուրդների կուլտուրական և այլ կապերի ու կոնտակտների ընդլայնմանը, ինֆորմացիայի փոխանակության ընդլայնմանը: Մենք ելնում ենք այն բանից, որ լարվածության թուլացման պայմաններում այդ կապերի ու կոնտակտների զարգացումը միանգամայն բնականոն է, իհարկե, եթե խստիվ կիրառվեն սուվերենության փոխադարձ հարգման և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքները: Իսկ Սովետական Միության հետ հարաբերություններում այդ սկզբունքները խախտել, սովետական ժողովրդի շահերի, մեր սոցիալիստական կարգերի դեմ գործել մենք, ներեցեք մեզ, պարոնայք, ոչ ոքի թույլ չենք տա: (Երկարատև ծափահարություններ):

Այդ առնչությամբ պետք է ասել, որ լարվածության թուլացման պայմաններում ավելի ու ավելի մեծ պահանջներ են ներկայացվում մեր գաղափարական աշխատանքին: Մեր պրոպագանդան ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտասահմանում, պետք է զգայուն կերպով արձագանքի աշխարհում կատարվող փոփոխություններին, պետք է լինի մատչելի և համոզիչ: Գաղափարական աշխատանքի հարցերը Կենտկոմն այսուհետև ևս կպահի իր ուշադրության կենտրոնում: Այդ նույն բանը մենք կպահանջենք բոլոր կուսակցական մարմիններից և կազմակերպություններից:

Ընկերնե՛ր: Կայուն խաղաղության պայքարում այժմ չկա ավելի կարևոր խնդիր, քան իմպերիալիստական տերությունների ծավալած սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, զինաթափման անցնելը: Բանն այն է, որ սոցիալական ճակատամարտերում իրենց կրած պարտություններին, գաղութային տիրույթների կորստյանը, կապիտալիզմից նորանոր երկրների հեռանալու, համաշխարհային սոցիալիզմի հաջողություններին և բուրժուական պետություններում կոմկուսների ազդեցության աճին՝ այս ամենին կապիտալիստական աշխարհի ագրեսիվ շրջանները պատասխանում են պատերազմական նախապատրաստությունների տենդագին ծավալումով: Ուռճանում են ռազմական բյուջեները, ստեղծվում սպառազինությունների նոր տեսակներ, կառուցվում բազաներ, ձեռնարկվում ռազմական ցույցեր: Հենվելով այդ «ուժի դիրքի» վրա, իմպերիալիզմը հույս ունի պահպանել ուրիշ երկրների և ժողովուրդների հրամայելու հնարավորությունը, որը թռչում է իր ձեռքից:

Ջանալով իր քաղաքականությունը դնել այսպես ասած «գաղափարական հիմքի» վրա, սպառազինությունների մրցավազքի իմպերիալիստական ոգեշնչողները ոչ մի միջոցից չեն խորշում և նույնիսկ այնքան էլ հոգ չեն տանում տարրական տրամաբանության մասին: Երբ նրանց հարկավոր է նոր վարկեր ձեռք բերել սպառազինության համար, նրանք պառլամենտականներին ու հասարակայնությանը վախեցնում են «սովետական գերակշիռ հզորությամբ», իսկ երբ պահանջվում է ընտրողներին ցույց տալ իրենց հոգատարությունը

պաշտպանության նկատմամբ, նրանց հավաստիացնում են, թե «արևմուտքը բացարձակ ռազմական գերազանցություն ունի»։

Ինչ վերաբերում մեր պաշտպանությանը, ապա մենք դրա համար ծախսում ենք ճիշտ այնքան, որքան հարկավոր է Սովետական Միության հուսալի անվտանգության համար, եղբայրական երկրների հետ մեկտեղ սոցիալիզմի նվաճումների պաշտպանության համար, այն բանի համար, որ պոտենցիալ ագրեսորների մեջ գայթակղություն չառաջանա փորձել ուժով իրենց օգտին վճռելու երկու հակադիր հասարակական սիստեմների պատմական վեճը։ Այսուհետև ևս բարձր մակարդակի վրա պահել երկրի զինված ուժերը, որպեսզի սովետական ռազմիկները միշտ ունենան ամենաժամանակակից զենքը, որի հետ չկարողանային հաշվի չնստել իմպերիալիստները՝ ահա մեր պարտքը ժողովրդի հանդեպ, և մենք այն կկատարենք սրբորեն։ (Երկարատև ծափահարություններ)։

Միաժամանակ մենք չունենք ավելի մեծ ցանկություն, քան այն, որ այժմ ժողովրդական տնտեսությունից անհրաժեշտաբար վերցվող միջոցները հատկացվեն աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, ստեղծարար աշխատանքի նպատակների համար։ Մենք պատրաստ ենք թեկուզև վաղը ձեռնամուխ լինելու իրոք արդարացի, փոխադարձ հիման վրա զինաթափման միջոցառումների՝ կամ խոշոր, արմատական, կամ սկզբնական շրջանի համար գոնե մասնակի միջոցառումների իրականացմանը։ Մեր պատճառով գործը չի կանգնի։

Շատ տարիներ առաջ Վ. Ի. Լենինը զինաթափումն անվանել է «սոցիալիզմի իդեալը»։

Այն ժամանակ դեռ չկային միլիտարիզմի աճը կանգնեցնելու, համաշխարհային պատերազմի սպառնալիքը կանխելու ռեալ նախադրյալներ։ Հիմա դրությունը փոխվել է։ Սոցիալիզմի և խաղաղության ուժերը այնպիսի ազդեցություն ունեն, որ ամբողջ մարդկության համար այդ արմատական խնդրի լուծման ուղղությամբ առաջ շարժվելը, թեկուզև աստիճանաբար և առանձին հատվածներում, հնարավոր է դառնում։ Բացի դրանից, կապիտալիստական պետությունների կառավարող շրջաններում նույնպես հետզհետե խորանում է այն բանի ըմբռնումը, որ միջուկային դարում նոր համաշխարհային պատերազմի սանձազերծման վրա հույսը դնելը նույնքան անհեռանկարային է, որքան և կործանարար ու հանցավոր։

Խաղաղասեր ուժերի համատեղ ջանքերով, մեր երկրի ամենաակտիվ ներդրմամբ, վերջին տարիներս հաջողվել է էական արդյունքների հասնել նոր միջուկային պատերազմի սպառնալիքի թուլացման գործում։ Կոնկրետ պարտավորեցնող միջազգային պայմանագրեր ու համաձայնագրեր են կնքվել այնպիսի հարցերի վերաբերյալ, ինչպիսիք են միջուկային զենքի փորձարկումների զգալի մասի դադարեցումը, աշխարհում այդ զենքի հետագա տարածման դեմ միջոցների ձեռնարկումը, տիեզերքում, ծովերի ու օվկիանոսների հատակին դրա տեղաբաշխման արգելումը, Սովետական Միության և Միացյալ Նահանգների կողմից ստրատեգիական սպառազինությունների սահմանափակումը, մանրէական զենքի արգելումն ու վերացումը։ Սրանք վատ արդյունքներ չեն։ Դրանք հերքում են հոռետեսների տրտունջները, որոնք զինաթափման պայքարը անհուսալի են համարում։ Բայց ձեռք բերվածը ամրապնդման ու հետագա զարգացման կարիք ունի, որպեսզի արդյունավետորեն վերջ դրվի սպառազինությունների նոր մրցավազքին։

Դուք հիշում եք, ընկերներ, թե որքան սուր և սկզբունքորեն դրվեց զինաթափման հարցը մեր կուսակցության XXV համագումարում։ Համագումարից հետո քաղբյուրոն մի քանի անգամ քննարկեց, թե ինչպես պետք է նոր խթան տրվի այդ կարևորագույն գործի համար մղվող պայքարին։ Որոշվեց, մասնավորապես, մի շարք կոնկրետ առաջարկություններով հանդես գալ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի հերթական նստաշրջանում։

Սովետական Միությունն առաջարկեց համաշխարհային պայմանագիր կնքել միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու մասին։ Այդ



փաստաթղթի հանգամանալի բնութագիրը տրվեց ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի նստաշրջանում։ Այստեղ ես ուզում եմ միայն ընդգծել, որ մեր նախագծում ուժ չգործադրելու դրույթը ընդգրկում է միջպետական հարաբերությունները, չշոշափելով ժողովուրդների սոցիալական և ազգային ազատագրական պայքարի անկապտելի իրավունքը։ Այդ երկու բնագավառները մենք խստիվ սահմանազատում ենք։

ՍՍՀՄ-ը ՄԱԿ-ի քննարկմանը ներկայացրեց նաև կոմպլեքսային մեծ փաստաթուղթ՝ հուշագիր, որը բովանդակում է ներկայումս առավել հրատապ զինաթափման միջոցառումների լայն, համակողմանի ծրագիր։

Մի խոսքով, մեր երկիրն աշխարհի առջև նորից հանդես եկավ զինաթափման կոնկրետ ծրագրով։ Այդ ծրագիրը հնարավորին չափ ավելի իրական դարձնելու համար դրա մեջ մտցված են էական նոր տարրեր։ Հաշվի են առնված շատ պետությունների հայացքները մի շարք հարցերի առթիվ, իհարկե, առանց վնաս հասցնելու մեր անվտանգության շահերին։ Մենք ճկուն դիրք ենք գրավում նաև այն իմաստով, որ պատրաստ ենք ձեռնամուխ լինելու կամ ծրագրով նախատեսված միանգամից բոլոր միջոցառումների, կամ էլ սկզբնական շրջանում միայն որոշ միջոցառումների կենսագործմանը, մի քայլից անցնելով մյուսին։

Զինաթափումը պետք է դառնա առանց բացառության բոլոր պետությունների ընդհանուր գործը։ Այդ նպատակին են ծառայում զինաթափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու կամ, սկզբնական շրջանում, որպես քայլ այդ ուղղությամբ՝ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջան հրավիրելու մեր առաջարկությունները։

ՄԱԿ-ում Սովետական Միության նոր նախաձեռնությունները ըմբռնում և աջակցություն գտան տասնյակ պետությունների և խաղաղասեր լայն հասարակայնության կողմից։ Դա մեզ ուրախացնում է։ Դա ոգեշնչում է նոր ջանքերի՝ հանուն երկրագնդի կայուն խաղաղության։ (Երկարատև ծափահարություններ)։

Հատկապես ուզում եմ ընդգծել, որ Սովետական Միությունը առաջվա պես կարևորագույն խնդիրներից մեկն է համարում Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջը Վիեննայում վարվող բանակցություններում հաջողության հասնելը։ Այնտեղ մենք առաջարկում ենք կոնկրետ լուծումներ, որոնք կհանգեցնեին Եվրոպայում իրար դեմ կանգնած ռազմական ուժերի կրճատմանը, վնաս չհասցնելով կողմերից ոչ մեկին։ Մենք պատրաստ ենք քննարկելու նաև այդ նույն սկզբունքների վրա հիմնված հանդիպական առաջարկությունները։ Պատրաստ ենք նոր համատեղ կոնստրուկտիվ որոնումների (բայց հենց կոնստրուկտիվ, ազնիվ, այլ ոչ թե միակողմանի շահ ստանալու նպատակ ունեցող որոնումների), մեր պարտնյորների հետ բանակցությունների՝ ցանկացած մակարդակով, ընդհուպ մինչև ամենաբարձր մակարդակը։

Թանկագին ընկերնե՛ր։ Եթե խոսելու լինենք այն գլխավորի մասին, ինչ մեզ հաջողվել է ձեռք բերել միջազգային գործերում, ապա կարելի է մաքուր խղճով ասել. ուրիշ սոցիալիստական պետությունների հետ մեր գործադրած ջանքերի շնորհիվ և բոլոր խաղաղասեր, ռեալիստորեն մտածող ուժերի աջակցությամբ հաջողվել է վանել միջուկային պատերազմի սպառնալիքը, խաղաղությունը դարձնել ավելի հուսալի, ավելի կայուն։ (Երկարատև ծափահարություններ)։

Այսպիսի արդյունքի համար, ընկերնե՛ր, մենք բոլորս կարող ենք ուրախանալ, կարող ենք դրանով հպարտանալ։ Եվ այդ արդյունքից շահում է ողջ մարդկությունը։ (Ծափահարություններ)։

Վերջում թույլ տվեք համառոտակի կանգ առնել համաշխարհային կոմունիստական շարժման մի քանի հարցերի վրա։

Նախ և առաջ անհրաժեշտ է նշել, որ մի շարք կապիտալիստական երկրների կոմկուսները դասակարգային համառ ճակատամարտերի ընթացքում վերջին ժամանակներս խոշոր հաջողությունների են հասել։ Նրանք ընդլայնել են

իրենց մասսայական բազան, ամրապնդել իրենց հեղինակությունը, մեծացել է նրանց կշիռը քաղաքական կյանքում։

Այսօր վեց խոշորագույն կապիտալիստական տերություններից երեքում՝ Ֆրանսիայում, Իտալիայում և Ճապոնիայում գործում են մասսայական կոմկուսներ, որոնց օգտին ընդհանուր առմամբ ընտրություններում քվեարկում են ավելի քան 20 միլիոն ընտրողներ։ Իտալիայի կոմկուսը վերջին ընտրությունների ժամանակ նվաճեց այնպիսի դիրքեր, որ հիմա առանց նրա մասնակցության ըստ էության չի կարող լուծվել պետության կյանքի և ոչ մի խոշոր հարց։ Ֆրանսիայում սոցիալիստների և մյուս ձախ ուժերի հետ կոմունիստների դաշինքը հանրաճանաչ ծանրակշիռ գործոն է դարձել երկրի քաղաքական կյանքում։ Պորտուգալիայի կոմունիստները տասնամյակների ֆաշիստական տեռորից հետո ոչ միայն բացեիբաց դուրս եկան քաղաքական ասպարեզ, այլև դարձան երկրի ամենաակտիվ ու ազդեցիկ կուսակցություններից մեկը։ Ընդհատակից դուրս է գալիս նաև Իսպանիայի կոմկուսը, մեծանում է նրա հեղինակությունը։ Իրենց երկրներում զգալի քաղաքական կշիռ ունեն Հնդկաստանի, Ֆինլանդիայի, Դանիայի, Լատինական Ամերիկայի մի քանի երկրների կոմկուսները։

Այսպիսով, աշխարհում սոցիալիզմի դիրքերի և ազգային-ազատագրության ուժերի ամրապնդման պայմաններում կոմունիստական շարժումը ակնառու հաջողությունների է հասնում։ Մենք, բնականաբար, ի սրտե ողջունում ենք դա։ (Ծափահարություններ):

Բայց իմպերիալիստները այլ կերպ են արձագանքում։ Արևմտյան Եվրոպայում կոմկուսների ազդեցության ուժեղացումը տագնապ է առաջացրել նրանց մեջ։ ԱՄՆ-ի և ԳՖՀ-ի ղեկավարները Իտալիայի ընտրություններում կոմկուսի ձեռք բերած հաջողությունների կապակցությամբ այնպիսի կոպիտ ճնշում գործադրեցին և այնպիսի սպառնալիքներ տեղացին Իտալիայի հասցեին, որ դա զայրույթ առաջացրեց շատ երկրներում, այդ թվում նաև Իտալիայի բուրժուական քաղաքագետների շրջանում։ Մենք ՍՍՀՄ-ում, ինչպես հայտնի է, նույնպես չթաքցրինք մեր կարծիքը այդ առթիվ։

Վերջին ժամանակներիս նշանակալի իրադարձությունը Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Բեռլինի կոնֆերանսն էր, որը տեղի ունեցավ այս տարվա ամռանը։ Դրա նախապատրաստումը քիչ ժամանակ չպահանջեց։ Հարկավոր էր համադրել մի շարք կարևոր պրոբլեմների առթիվ 29 կուսակցությունների կարծիքները և համաձայնության գալ ամփոփիչ փաստաթղթի նախագծի շուրջը։

Սակայն համբերատար կոլեկտիվ աշխատանքն իր արդյունքը տվեց։ Կոնֆերանսն անցավ Եվրոպայի կոմունիստների դասակարգային համերաշխության ու եղբայրական փոխգործողության ոգով, մայրցամաքի խաղաղության, անվտանգության, համագործակցության ամրապնդման և սոցիալական առաջադիմության նկատմամբ նրանց համատեղ հոգատարության ոգով։

Կոնֆերանսին մասնակցեցին եվրոպական բոլոր կոմկուսները (բացի Ալբանիայից), և ամփոփիչ փաստաթուղթն ընդունվեց միահամուռ կերպով։

Բեռլինի կոնֆերանսի մասնակիցների ելույթները տոգորված էին խաղաղության և սոցիալիզմի համար ակտիվ պայքարի ոգով։ Կոնֆերանսում ընդունված փաստաթուղթը Եվրոպայի խաղաղության, անվտանգության և լարվածության թուլացման համար հետագա պայքարի կոնկրետ ծրագիր է։ Բեռլինի կոնֆերանսը, ընդհանուր առմամբ, ինչպես բարեկամների, այնպես էլ մեր դասակարգային հակառակորդների գնահատմամբ, Եվրոպայի կյանքում կոմունիստների ակտիվ դերի մի նոր վկայություն եղավ, և մենք գոհունակություն ենք զգում, որ ՍՄԿԿ-ն կարողացավ իր ավանդը ներդնել այդ մեծ գործում։ (Ծափահարություններ):

Ահա այն, ինչ ես ուզում էի ձեզ պատմել, ընկերնե՛ր, միջազգային գործերի մասին։ Ինչպես տեսնում եք, Կենտկոմի քաղբյուրոն այդ բնագավառում նույնպես անդուլ գործունեություն է ծավալել XXV համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ։ Այդ աշխատանքը մենք կշարունակենք ամբողջ



եռանդով՝ հանուն սովետական ժողովրդի խաղաղության ու երջանկության, հանուն ամբողջ մարդկության խաղաղության ու առաջադիմության։ (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր, ավարտելով ելույթս, կկամենայի ընդգծել, որ XXV համագումարի առաջադրած խնդիրների իրագործմանը պետք է նպաստի կուսակցական-կազմակերպական և գաղափարա-քաղաքական ամբողջ աշխատանքը։

Անհրաժեշտ է այսուհետև ևս հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ, որտեղ էլ աշխատելիս լինի, ինչ պաշտոն կամ պոստ էլ գրավելիս լինի, կազմակերպվածության և կարգապահության, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի, մեծ ու փոքր խնդիրների լուծման նկատմամբ պետական մոտեցման օրինակ ծառայի։

Տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների կոմունիստների, աշխատավոր լայն մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ըստ ամենայնի զարգացնելու կուսակցության գիծը ճիշտ գիծ է։ Եվ մենք իրապես զգում ենք դրա բարերար արդյունքները։

Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ պլանը, որպես սոցիալիստական պետության կողմից բանվորներին տրված առաջադրանք, հսկայական մոբիլիզացնող ուժ ունի։ Այն փաստաթղթերը, որ մենք քննարկում ենք, համապատասխանում են բանվորների, կոլտնտեսականների, մեր մտավորականության արմատական շահերին։

Հարկավոր է այնպես անել, որ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ, յուրաքանչյուր աշխատավոր իմանա հեռանկարը, հստակորեն պատկերացնի այն բնագծերը, որ պետք է նվաճվեն, այն խնդիրները, որ պետք է լուծվեն։

Տասներորդ հնգամյակում երկրի համար, մեր կուսակցության և ժողովրդի համար հսկայական, գրավիչ ու հետաքրքրական աշխատանք է սկսվում։ Դա չափազանց պատասխանատու աշխատանք է։ Ուստի մեր հայրենիքի հզորությունը, հեղինակությունն ու բարգավաճումը, յուրաքանչյուր ընտանիքի բարեկեցությունը, յուրաքանչյուր սովետական մարդու բարօրությունն ու երջանկությունը կախված են այն բանից, թե մենք ինչպես կաշխատենք, ինչպես կկատարենք նախատեսված պլանները։ (Ծափահարություններ):

Կասկած չկա, որ մեր ժողովուրդը Լենինի կուսակցության ղեկավարությամբ այս անգամ էլ կգտնվի պատմության կողմից իր վրա դրված պատասխանատվության բարձրության վրա։ (Երկարատև ծափահարություններ):

Կուսակցության կանխագծումները, նրա XXV համագումարի առաջադրած խնդիրները կկենսագործվեն։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Պլենումի մասնակիցները հոտնկայս ողջունում են ընկեր Լ. Ի. Բրեժնևին):

*Ինֆորմացիոն հաղորդագրություն*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1976 թվականի հոկտեմբերի 19-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը.

1. Ղեկավարման աշխատանքի հետագա ուժեղացման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրների մասին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո:

2. ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման ուղղությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976—1978 թվականների աշխատանքի հեռանկարային պլանի մասին:

3. Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, քաղաքային և շրջանային կուսակցական կոնֆերանսներում, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում կոմունիստների արած քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրագործման ուղղությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի կատարած աշխատանքի մասին:

Առաջին հարցի վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆԸ:

Հարցի քննարկմանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ, Երևանի ռելեի գործարանի բանվորուհի ընկ. Բ. Դ. ՎԱՐԴԻԿՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստր ընկ. Ռ. Հ. ՊԱՐՍԱՄՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆԸ, Հայաստանի գրողների միության վարչության քարտուղար ընկ. Մ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԸ, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի դիրեկտոր ընկ. Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ա. ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆԸ, Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ ընկ. Է. Մ. ՄԻՐԶՈՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Հ. ԱԼԻԵՎԸ, Երևանի ավտոգործարանի դիրեկտոր ընկ. Ա. Հ. ԴԱՆԻԵԼՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի դիրեկտոր ընկ. Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆԸ, Երևանի պետական համալսարանի կուսկոմիտեի քարտուղար ընկ. Ռ. Գ. ԱՍԼԱՆՅԱՆԸ, «Կոմունիստ» թերթի խմբագիր ընկ. Բ. Մ. ՄԿՐՏՉՅԱՆԸ, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ս. ՔՈԹԱՆՋՅԱՆԸ:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Քննարկված հարցերի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի վարիչի տեղակալ ընկ. Մ. Վ. ԳՐԱՄՈՎԸ, ՍՄԿԿ Կենտկոմի ապարատի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Պ. ԳՐՈՄԻԿՈՆ:



*Հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարական գործունեության բարձր արդյունավետության համար*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՃԱՌԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ,

*1976 թվականի հոկտեմբերի 19-ին*

*Ընկերնե՛ր:*

*ՍՄԿԿ XXV համագումարը առաջնահերթ խնդիր համարեց մասսաների կոմունիստական գիտակցականության ըստ ամենայնի բարձրացումը, սովետական մարդկանց մեջ կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու կարողության դաստիարակումը, կոմունիստական բարձր համոզվածության, սոցիալիստական հասարակական, բարոյական և գեղագիտական իդեալների ներարկումը, նրանց ընդհանուր քաղաքական և գիտական մտահորիզոնի ընդլայնումը:*

*Այդ խնդիրները բխում են կոմունիզմի կառուցման ուղիով մեր հասարակության առաջընթացից: Չէ՞ որ մեր հասարակարգի ուժը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, մասսաների գիտակցականությունն է, չէ՞ որ «կոմունիզմի կառուցման մեծ գործը,— ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը,— անհնար է առաջ շարժել, առանց բուն իսկ մարդու համակողմանի զարգացման: Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցականության, նրանց ներքին հասունության բարձր մակարդակի՝ կոմունիզմն անհնար է, ինչպես որ անհնար է նաև առանց համապատասխան նյութատեխնիկական բազայի»:*

*Զարգացած սոցիալիզմի պայմաններում առանձնապես կարևոր նշանակություն են ստանում հոգևոր գործոնները՝ որպես հասարակական առաջադիմության հզոր արագացուցիչներ:*

*Ուստի այսօր Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում քննարկվող հարցը բացառիկ կարևոր նշանակություն ունի այն մեծ խնդիրների կատարումն ապահովելու գործում, որոնք կանգնած են մեր հանրապետության և նրա կուսակցական կազմակերպության առջև տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման բնագավառում տասներորդ հնգամյակում և մոտակա հեռանկարում:*

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման ծրագիրը և ուղղությունները քննարկվել և լիակատար հավանության են արժանացել Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում, սկզբնական կուսակցական կազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում։

Կուսակցության XXV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի՝ «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցումը քաղաքական ակտիվության և աշխատանքային խանդավառության հսկայական ալիք առաջ բերեցին մեր հանրապետության բանվորների, կոլտնտեսականների և մտավորականության շրջանում։

Այսօր մենք կարող ենք ասել, որ հանրապետության աշխատավորները ընդհանուր առմամբ վատ չեն սկսել տասներորդ հնգամյակը։

Արդյունաբերության աշխատողները հաջողությամբ են կատարում պլանային առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալի պլանը կատարվել է 102,5 տոկոսով, իրացման պլանը՝ 102,6 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի ծավալի աճը կազմել է 8,6 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականության աճը՝ 5 տոկոս, որը բարձր է պլանային առաջադրանքներից։ Արդյունաբերական արտադրանքի ևս 257 տեսակների շնորհված է պետական որականիշ։ Ընդ որում, ուրախալի է նշել, որ անցած ինն ամսում որականիշով արտադրատեսակների քանակն աճել է 60 տոկոսով, և այժմ հանրապետությունում պետական որականիշով թողարկվում է 672 արդյունաբերական արտադրատեսակ։ Ներկայումս թողարկվող ամբողջ արտադրանքի 9 տոկոսը որականիշ ունեցող արտադրանք է։

Վատ արդյունքների չեն հասել նաև գյուղի աշխատավորները։ Հանրապետության դաշտավարներն ընթացիկ տարում, որ ընդհանրապես այնքան էլ բարենպաստ չէր գյուղատնտեսության համար, հավաքեցին հացահատիկային կուլտուրաների ռեկորդային բերք՝ ավելի քան 300 հազար տոննա և պետությանը վաճառեցին ավելի քան 70 հազար տոննա հացահատիկ։ Աճեցվել է և պետությանն է վաճառվելու ռեկորդային քանակությամբ բանջարեղեն՝ մոտ 300 հազար տոննա։

Ստացվել է ճակնդեղի, ծխախոտի, կարտոֆիլի և մյուս տեխնիկական կուլտուրաների լավ բերք։ Առանձնապես ուրախացնում են անասնապահության հաջողությունները։ 1975—76 թվականներին հաջողությամբ լուծվում է կերի կայուն բազայի ստեղծման պրոբլեմը։ 1976 թվականին կկուտակվի մոտ 1.800 հազար տոննա կոշտ և հյութալի կեր։ Այդքան կեր հանրապետությունում կհավաքվի առաջին անգամ։

Ավելացել է մսի և կաթի արտադրությունը, բարձրացել հանձնված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը։ Մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը 1975 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 104 կգ-ով։

Մեծացել է առևտրի ապրանքաշրջանառության ծավալը։ Միայն ընթացիկ տարվա ինն ամսում 1975 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ բնակչությանը վաճառվել է 7,9 տոկոսով ավելի կաթ ու կաթնամթերք, այդ թվում՝ 10,1 տոկոսով ավելի կարագ, 9,5 տոկոսով ավելի միս և մսամթերք, 33,6 տոկոսով ավելի ձուկ և ձկնամթերք, 9 տոկոսով ավելի հրուշակեղեն, 25,4 տոկոսով ավելի բանջարեղեն, 14,3 տոկոսով ավելի պտուղ և հատապտուղ։ Ավելացել է նաև արդյունաբերական ապրանքների վաճառքի ծավալը։ Կենցաղային ծառայությունների ծավալն աճել է 12,7 տոկոսով, այդ թվում գյուղական վայրերում՝ 17,6 տոկոսով։

Խոսելով հաջողությունների մասին, մենք ոչ մի րոպե չենք մոռանում և իրավունք չունենք մոռանալու, որ մեր գործունեության մեջ, արդյունաբերության, գյուղատնտեսության ասպարեզում, սպասարկման ոլորտում, մանավանդ կա-



պիտալ շինարարության բնագավառում շարունակում են տեղ գտնել լուրջ թերություններ ու վրիպումներ, առկա են չօգտագործված մեծ ռեզերվներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ մեր գործունեության բոլոր ոլորտներում մենք կարող ենք հասնել ավելի մեծ հաջողությունների, եթե ավելի լրիվ օգտագործենք առկա հսկայական ռեզերվները, եթե մենք աշխատավորների գաղափարա-քաղաքական ու բարոյական դաստիարակության աշխատանքի կազմակերպումն ու բովանդակությունը համապատասխանեցնենք կուսակցության ժամանակակից պահանջներին։

Ընկերնե՛ր։

Մեր կուսակցության գործունեության գերագույն իմաստն է՝ ամեն ինչ ժողովրդի համար, նրա բարօրության ու երջանկության համար, ամեն ինչ մարդու համար և հանուն մարդու, հանուն նրա բարօրության ու երջանկության։ Բնականաբար, սոցիալիստական հասարակության, մեր լենինյան կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում են սովետական մարդը, նրա լիակատար բարեկեցության, նրա ազատ ու համակողմանի զարգացման համար բոլոր պայմաններն ու հնարավորություններն ստեղծելու հարցերը։

Դրա հետ մեկտեղ պարզ է, որ այն ամենը, ինչ մեր հասարակության մեջ արվում է հանուն մարդու, վերջին հաշվով արվում է հենց սովետական մարդու կողմից։ Չէ՞ որ մարդն է հասարակության գլխավոր արտադրողական ուժը։ Թե մեզանից յուրաքանչյուրն իր տեղում ինչպե՞ս կապահովի մեր հասարակության տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման վիթխարի խնդիրների կատարումը, վերջին հաշվով դրանից էլ կախված կլինի մեր հայրենիքի տնտեսական հզորության և նրա պաշտպանունակության, սովետական ժողովրդի և հենց սովետական մարդու բարեկեցության բարձրացումը։

Մարդը՝ հասարակությանը, հասարակությունը՝ մարդուն,— այսպիսին է մեր կյանքի օրենքը։ Սոցիալիզմը պայմաններ է ստեղծում, որպեսզի անհատի նկատմամբ հասարակության և հասարակության նկատմամբ անհատի հոգատարությունը լինի փոխադարձ։ Առանց դրա հնարավոր չէ ոչ հասարակական արագ առաջընթացը, ոչ սոցիալիստական անհատի ձևավորումը։ Սոցիալիստական հասարակության առաջընթացի ճանապարհին փոխադարձ կապի մեջ և կոմպլեքսայնորեն վճռվում է երկմիասնական խնդիր՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը և նոր հասարակարգի մարդու դաստիարակումը։ Այս ամենը լիովին ելնում է լենինյան այն դրույթից, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը պետք է դիտել որպես կոմպլեքսային խնդիր, որի մեջ տնտեսական և սոցիալ-քաղաքական պրոբլեմների լուծումը օրգանապես կապված է նոր մարդու ձևավորման, «բազմակողմանի զարգացած և բազմակողմանի պատրաստված մարդկանց դաստիարակության և ուսուցման հետ»։

Հենց դրա համար էլ ՍՄԿԿ XXV համագումարը մեկ անգամ ևս ընդգծեց, որ այսօր տնտեսական շինարարության և կոմունիստական դաստիարակության հարցերը փոխադարձաբար շաղկապված են և պայմանավորված։

Արդի պայմաններում մասսաների կոմունիստական դաստիարակության նշանակությունը մեծանում է նաև այն պատճառով, որ այժմ հակակոմունիստական պրոպագանդայի գլխավոր թիրախը նոր հասարակարգի մարդն է, նրա գիտակցությունը, քաղաքական համոզմունքները, սոցիալական գործունեության մոտիվները և բարոյականության նորմերը։

Ինչպիսի՞ն է մասսաների գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության գործի վիճակը մեր հանրապետությունում։ Ի՞նչ հաջողություններ ու նվաճումներ ունի մեր կուսակցական կազմակերպությունը այդ բնագավառում, ինչպիսի՞ թերություններ և վրիպումներ կան կուսակցական աշխատանքի այդ կարևորագույն տեղամասում և, վերջապես, ներկայումս ու հեռանկարային առումով ինչպիսի՞ խնդիրներ են դրված կուսակցական կազմակերպությունների առջև ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը բարելավելու ասպարեզում։

Այս հարցերի պատասխանները հիմնականում տրվեցին Կենտկոմի ներկա պլենումում ընկ. Կ. Դալլաքյանի զեկուցման մեջ և ընկերների ելույթներում։

Ես կուզենայի անդրադառնալ մի քանի հարցերի, որոնք պահանջում են կուսակցական կազմակերպությունների սևեռուն ուշադրությունը։

Նախ և առաջ մենք պետք է մեկ անգամ ևս պարզ ու որոշակի ընդգծենք, որ տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման բնագավառում մեր բոլոր նվաճումները մեր հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության անձնվեր, հերոսական աշխատանքի, Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր համատեղ ջանքերի արգասիքն են, քաղաքական, գաղափարական, կազմակերպչական ու դաստիարակչական այն հսկայական աշխատանքի արգասիքը, որ կատարել է հանրապետության կուսակցական կազմակերպությունը ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի իմաստուն ղեկավարությամբ։ Դա կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության արդյունքն է։

Մեր ժողովուրդը, հանրապետության աշխատավորները անսահմանորեն նվիրված են մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներին, նրանք ինտերնացիոնալիստներ և սովետական ջերմ հայրենասերներ են, նրանց մեջ մասսայաբար դրսևորվում է կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, նրանց կյանքում ու վարքագծի մեջ արմատավորվել են կոմունիստական բարոյականությունն ու սոցիալիստական ապրելակերպը։ Հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները տոգորված են պայծառ լավատեսության զգացումով, կոմունիստական ապագայի հաստատ հավատով, առանց իրենց ուժերն ու եռանդը խնայելու, մեր լենինյան կուսակցության հոյակապ կանխագծումների կենսագործման համար պայքարելու պատրաստակամությամբ։

Սա է գլխավորը մեր պանծալի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ նվաճված մեր հաջողությունների մեջ։

Մեր խնդիրն է՝ ամրապնդել այդ հաջողությունները, մշտապես կատարելագործել, խորացնել աշխատավորների գաղափարա-քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության գործի բովանդակությունը, ապահովել նրա փոխադարձ սերտ կապը սոցիալ-տնտեսական պրոբլեմների պրակտիկ լուծման հետ։

Դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը, այսինքն աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունների հաշվառմամբ նրանց գաղափարա-քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը այն ուղին է, որով ընթանալով մենք, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, կարող ենք հասնել դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման։

Մենք պետք է նպատակասլաց դաստիարակչական աշխատանքով յուրաքանչյուր աշխատավորի մեջ ձևավորենք և ամրապնդենք կոմունիստական աշխարհայացք, դրա հիման վրա սոցիալական երևույթներն ու սոցիալական ինֆորմացիան ճիշտ գնահատելու կարողություն, կենսական ակտիվ դիրքավորում ունենալու, քաղաքական և հասարակական ակտիվություն, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունք դրսևորելու կարողություն, հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավոր լինի կոմունիստական բարոյական վեհ սկզբունքների և իդեալների կրողը։

Ամենից առաջ մենք պարտավոր ենք մեր գաղափարա-քաղաքական, դաստիարակչական աշխատանքն ավելի սերտորեն շաղկապել կյանքի հետ, մեր հանրապետության զարգացման այն հսկայական խնդիրների կատարման հետ, որոնք նախատեսել է կուսակցությունն առաջիկա ժամանակաշրջանի համար։

Մեր ամբողջ գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը, առաջին



հերթին, կուսակցության XXV համագումարի որոշումների խոր ուսումնասիրությունն է։

Վ. Ի. Լենինը սովորեցնում է. «Որքան մեծ է թափը, որքան մեծ է պատմական գործողությունների լայնությունը, այնքան մեծ է այն մարդկանց թիվը, որոնք այդ գործողություններին մասնակցում են և, ընդհակառակը, որքան խորն է այն վերափոխումը, որ մենք ուզում ենք կատարել, այնքան ավելի պետք է բարձրացնել հետաքրքրությունը նրա նկատմամբ և գիտակցական վերաբերմունքը, այդ անհրաժեշտության մեջ համոզել նորանոր միլիոնների ու տասնյակ միլիոնների»։

Կուսակցության XXV համագումարի մշակած ծրագիրը աչքի է ընկնում թե գործողությունների լայնությամբ, թե վերափոխությունների խորությամբ։ Այդ ծրագրի իրականացմանը ակտիվորեն մասնակցում են և պետք է մասնակցեն բոլոր կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ։ Ուստի անհրաժեշտ է, որ հանրապետության յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր աշխատավոր, նախ, խորապես իմանա և յուրացնի կուսակցության քաղաքականությունը, կուսակցության առաջադրած խնդիրներն ու նպատակները, երկրորդ, որ յուրաքանչյուրը որոշի իր տեղն ու դերը, կոնկրետ խնդիրներն այդ քաղաքականության կենսագործման ասպարեզում։

Համագումարի նյութերի և որոշումների պրոպագանդումն ու ուսումնասիրումը պետք է կատարել կոմպլեքսայնորեն, համակարգված, դրանք սերտորեն շաղկապելով այն խնդիրների հետ, որոնք յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է լուծի տասներորդ հնգամյակում։ Այդ ուղղությամբ աշխատանքը մենք պետք է կատարենք մշտապես ու սիստեմատիկաբար, հասնենք այն բանին, որ համագումարի գաղափարները տիրապետեն լայն մասսաներին, դառնան ներգործուն նյութական ուժ։ Համագումարի նյութերը, նրա գաղափարները աղբյուրի նման միշտ կսնեն մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, աշխատավորների մեջ անհաղթահարելի ձգտում կառաջացնեն կատարելու այն, ինչ նախատեսել է կուսակցությունը։

Կուսակցական կոմիտեները պարտավոր են խորացնել կուսակցական-քաղաքական կրթության բովանդակությունը, այն լիովին համապատասխանեցնել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի առջև կուսակցության համագումարի դրած խնդիրներին ու պրոբլեմներին, մշտապես հիշելով, որ քաղաքական ուսուցման մեջ գլխավորը, որոշիչը եղել է, է՛, կլինի այն մարդը, որը վարում է քաղդպրոցի պարապմունքները, սեմինարը։ Այդ մասին լավ է ասել Վ. Ի. Լենինը. «Ոչ մի վերահսկողություն, ոչ մի ծրագիր և այլն բացարձակապես ի վիճակի չեն փոխելու պարապմունքների այն ուղղությունը, որը որոշում է դասախոսների կազմը»։

Խոսելով կուսակցական-քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության խնդիրների մասին, անհրաժեշտ է ընդգծել հետևյալ մոմենտները։

Նախ, կառավարչական և տնտեսական ղեկավար կադրերի, արտադրության կազմակերպիչների քաղաքական ուսուցման կազմակերպման բարելավման խնդիրը։ Գաղտնիք չէ, որ քաղաքական և գաղափարական աշխատանքը կառավարման միջոցով, կառավարման շնորհիվ մարմնավորվում է էկոնոմիկայի, կուլտուրայի, գիտության առաջընթացում։

Ամեն մի արտադրական կամ գիտական, ստեղծագործական կոլեկտիվի առջև կանգնած ժամանակակից բարդ խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ է կարողանալ մշակել նոր մոտեցումներ, նպատակային ծրագրեր, գտնել խնդիրների լուծման բանալի, հստակ տեսնել աշխատանքի վերջնական նպատակները։ Իսկ դա հնարավոր է, երբ ղեկավար աշխատողներն ունեն մարքս-լենինյան գիտելիքներ, կուսակցության արդի քաղաքական ու տնտեսական ստրատեգիայի խոր ըմբռնում։

Մենք պետք է հասնենք այն բանին, որ արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության պահանջները դառնան յուրաքանչյուր մի-

նիստրության և գերատեսչության, տնտեսական ամեն մի օղակի պրակտիկ գործունեության առանցքը: Մենք պետք է մշտապես մեր ղեկավար կադրերին կողմնորոշենք այն ուղղությամբ, որ նրանք քաղաքական մոտեցում ցուցաբերեն ամեն մի խնդրի, հատկապես տնտեսական խնդիրների լուծման ժամանակ, որ նրանք ըմբռնեն էկոնոմիկայի և քաղաքականության դիալեկտիկան: Յուրաքանչյուր ղեկավար աշխատող առաջին հերթին պետք է լինի խորապես գաղափարային, քաղաքականապես հասուն և համոզմունքի մարդ:

Դա հնարավորություն կտա բացառելու կառավարչական ապարատի առանձին աշխատողների կողմից ցուցաբերվող սուբյեկտիվիզմի, պասիվության, անձեռներեցության ռեցիդիվները, գերատեսչական, տեղայնության դրսևորումները:

Երկրորդ. դա աշխատավոր մասսաների քաղաքական ու տնտեսական գիտելիքների մակարդակի բարձրացումն է, ժողովրդական համալսարանների, առաջավոր փորձի, կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության բարելավումը:

Մենք պետք է մեր կուսակցական կոմիտեներից և կուսակցական կազմակերպություններից պահանջենք հետևողականորեն իրականացնելու ՍՄԿԿ Կենտկոմի «Կոլեկտիվի անդամների գաղափարա-քաղաքական դաստիարակությանը Ջերեպովեցի մետալուրգիական գործարանի ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողների մասնակցության մասին» որոշումը, մի որոշում, որի հենց վերնագիրը պարզ ու հստակ սահմանում է խնդիրը:

Մեր զարգացած սոցիալիստական հասարակարգում գիտությունն ավելի ու ավելի մեծ չափով է հանդես գալիս որպես հասարակական և կուլտուրական զարգացման արագացուցիչ: Դժվար է գերագնահատել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, ժողովրդի կյանքի համակողմանի բարելավման, կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործնական խնդիրների լուծման գործում գիտության բոլոր ճյուղերի հետազոտությունների արդյունքների արմատավորման նշանակությունը: Ես հատկապես ընդգծեցի գիտության բոլոր ճյուղերը, քանի որ գիտատեխնիկական հեղափոխության դարում բազմակողմանի զարգացած անհատի ձևավորումը անհնար է պատկերացնել առանց այդ պրոցեսին ինչպես հասարակական գիտությունների, այնպես էլ բնական ու տեխնիկական գիտությունների մասնակցության:

Սակայն հասարակական գիտությունները արդեն իսկ իրենց բնույթով ու բովանդակությամբ առանձնահատուկ դեր են խաղում աշխատավորների գաղափարա-քաղաքական, բարոյական դաստիարակության գործում:

Մեր հասարակագետ գիտնականների, հասարակական գիտությունների ինստիտուտների և ամբիոնների աշխատակիցների բազմամարդ բանակն իր կոչման ու հասարակական պարտքի բարձր գիտակցությամբ կատարել ու կատարում է բեղմնավոր աշխատանք, որը նպաստում է, որպեսզի մեր մարդիկ տիրապետեն մարքս-լենինյան տեսությանը, օգնում է նրանց խորապես հասկանալու և հաջողությամբ կենսագործելու կուսակցության քաղաքականությունը, նպաստում է աշխատավորների քաղաքական և սոցիալական ակտիվության բարձրացմանը, իր ավանդը մտցնում տեսության զարգացման գործում: Դրանով իսկ նա հսկայական չափով նպաստում է գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների աշխատանքին:

ՍՄԿԿ XXV համագումարն ընդգծեց, որ այժմ տեսության հետագա ստեղծագործական մշակման պահանջմունքը ոչ միայն չի նվազում, այլ, ընդհակառակն, է՛լ ավելի է մեծանում: Համագումարը նոր, ավելի բարդ խնդիրներ դրեց մեր հասարակագետ գիտնականների առջև:

Այդ խնդիրները մեր հասարակական գիտությունը հաջողությամբ լուծել կարող է միայն այն դեպքում, երբ ավելի սերտ լինի նրա կապը պրակտիկայի, կյանքի հետ, ավելի հրատապ դառնա հետազոտությունների թեմատիկան, ապահովվի սերտ համագործակցություն ու փոխգործողություն բնական ու տեխնիկական գիտությունների ներկայացուցիչների հետ: Դրան կարելի է հաս-



նել միայն մեր բոլոր հասարակագետների առավել ակտիվ, նպատակասլաց, անձնվեր գործունեության պայմաններում, երբ հետևողական աշխատանք է կատարվում գիտական հետազոտությունների և հրատարակվող աշխատությունների գաղափարատեսական մակարդակը բարձրացնելու համար, վճռական պայքար մղվում դրանց մակերեսայնության և կոմպիլյատիվության դեմ:

Կյանքից կտրված հետազոտությունները կարող են հանգեցնել ավելորդ սխոլաստիկ տեսախոսության, վաղուց հայտնի ճշմարտությունների անվերջ ծամծմման: Իսկ դա ոչ միայն չի օգնի մեզ լուծելու գաղափարա-քաղաքական դաստիարակության հարցերը, այլ, ընդհակառակը, կարող է խանգարել գործին: Ցավոք, առանձին գիտաշխատողներ դեռևս չեն հրաժարվել դրանից: Նրանք մոռանում են, որ հասարակական գիտությունների ներկայացուցիչն այսօր քաղաքական իրադարձությունների ու սոցիալական պրոցեսների սոսկական մեկնաբան չէ: Նա կոչված է ակտիվորեն և նպատակասլաց, խոր և բազմակողմանի կերպով ուսումնասիրելու և ընդհանրացնելու մեր պրակտիկան, տալու կոնկրետ հանձնարարականներ, որոնք նպաստեն տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների առավել հաջող լուծմանը, կուսակցական ղեկավարման ու կուսակցական աշխատանքի բարելավմանը հանրապետությունում:

Հասարակական գիտությունների աշխատողներից պահանջվում է՝ է՛լ ավելի մեծ հաստատակամություն և հետևողականություն մարքսիզմ-լենինիզմի բուրժուական և ռեֆորմիստական կեղծարարների, թշնամական գաղափարախոսության դեմ, ռևիզիոնիզմի և նացիոնալիզմի դեմ մղվող պայքարում:

Մեր կյանքը, գիտական աշխատանքի կենդանի պրակտիկան մշտապես հաստատում են, որ բուն արժույթները, հատկապես հասարակական գիտությունների ոլորտում, ստեղծվում են միայն մարքս-լենինյան մեթոդաբանության հիման վրա, դասակարգայնության և կուսակցականության լենինյան սկզբունքների նկատմամբ հավատարմության հիման վրա: Մարքս-լենինյան գիտական մեթոդաբանությունից կատարվող ամեն տեսակ շեղումները, իր աշխատանքում մատերիալիստական դիալեկտիկայի հետևողական կիրառման անկարողությունը լուրջ վնաս են հասցնում հետազոտությունների արդյունքներին, նվազեցնում դրանց գիտական ու գաղափարական արժույթը, հնարավորություն ստեղծում, սխալ, մերթ մեզ համար խորթ հայացքների և կոնցեպցիաների դրսևորման համար, որը վնասում է աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակությանը:

Դա վերաբերում է ինչպես արդիականության, այնպես էլ պատմության պրոբլեմների հետազոտմանը:

Մենք իրավունք չունենք անցնելու մեր իրականության երևույթների անօրինաչափ մեկնաբանության, պատմական անցյալի գունազարդման, առանձին պատմական անհատների գործունեությունը ոչ-դասակարգային դիրքերից գնահատելու, մեր ժողովրդի պատմական զարգացման մեջ, նրա ազգային-ազատագրական պայքարում այդ անհատների դերի չափազանցման նույնիսկ առանձին փաստերի ու երևույթների կողքով:

Չի կարելի մոռանալ, որ գիտական արտադրանքի սպառողը ոչ միայն մասնագետների և առանձին ընթերցողների նեղ շրջանակն է: Գիտական հետազոտությունների հիման վրա են կազմվում դասագրքերի համապատասխան բաժինները, ստեղծվում են գեղարվեստական գործեր: Այս ամենն անմիջականորեն կապված է աշխատավորների, հատկապես աճող սերնդի գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության հարցերի հետ:

Գիտական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները, դրանց գիտական խորհուրդները, ղեկավարները, համապատասխան գաղափարական մարմինները, կուսակցական կոմիտեների ստորաբաժանումները պետք է անզիջում և սկզբունքային դիրք գրավեն տեսության հարցերում, վճռական հակահարված տան սխալ հայացքների ու կոնցեպցիաների դրսևորումներին:

Անհրաժեշտ է գիտական բոլոր կոլեկտիվներում ստեղծել իսկական ստեղծագործական մթնոլորտ, որը ենթադրում է բարյացակամություն և օբյեկտի-

վություն ավարտված աշխատանքների և գիտական հետազոտությունների արդյունքների քննարկման ժամանակ, պայմաններ գիտնականների ընկերական գործարար համագործակցության համար։ Անհրաժեշտ է առանձնապես կարևոր հետազոտությունների պարագայում անցկացնել բեղմնավոր քննարկումներ ու դիսկուսիաներ իրազեկ մասնագետների մասնակցությամբ, համատեղ ջանքերով մշակել ընդհանուր ճիշտ մոտեցում դրանց նկատմամբ։

Հարկավոր է արմատախիլ անել առանձին գիտնականների, գիտական աշխատակիցների ինքնագոհության և իրենց հետազոտությունների, աշխատությունների ու հրապարակումների արդյունքների ոչ քննադատական գնահատման վնասակար հոգեբանությունը։ Քննադատության և ինքնաքննադատության բացակայությունը և գնահատման չափանիշների խեղումն է, վերջին հաշվով, հասցնում անսկզբունքայնության և ցածրորակ աշխատանքի։

Կուզենայի ուշադրություն հրավիրել այն բանի վրա, որ անպայման պետք է պահպանվի սահմանված կարգն ու գիտական էթիկան հետազոտական և ստեղծագործական բնույթի աշխատությունների և դրանց արդյունքների քննարկման ու քննադատության ժամանակ։

Կարծում եմ, ճշմարտության դեմ մեղանչած չեմ լինի, եթե ասեմ, որ մեզանում չկա հստակ մշակված կազմակերպական սկզբունք գիտական քննադատության դրվածքի հարցում։ Մենք հաճախ հանդիպում ենք փաստերի, երբ առանձին գիտական աշխատողներ փորձում են ամեն տեսակ թույլատրելի և անթույլատրելի մեթոդներով գիտական քննադատությունն օգտագործել իրենց նեղ շահերի նպատակով։ Իսկական գիտական վեճը երբեմն վերածվում է անսկզբունքային գզվռտոցի, իսկ այդպիսի գզվռտոցները, ինչպես հայտնի է, ունեն իրենց բացասական հետևանքները՝ խմբակայնություն և գժտություններ, մանրախնդրություն և սուբյեկտիվիզմ, բանսարկություն և սուբյեկտիվ բծախնդրություն, անձնական վիրավորանք հասցնել և այլն։ Այստեղ արդեն բացառվում է ստեղծագործական իսկական դիսկուսիայի և գիտական քննարկման հնարավորությունը, կոլեգաների քննադատությունը, փաստարկներն ու եզրակացությունները լսելու կարողությունը։ Դա, բնականաբար, չի օգնում գիտական աշխատանքի դրվածքի բարելավմանը, առավել ևս գիտական աշխատողների, ստեղծագործական կոլեկտիվների համախմբմանը, մեծ վնաս է հասցնում կադրերի դաստիարակությանը։

Ասվածը, ի դեպ, վերաբերում է նաև կուլտուրական և տնտեսական շինարարության մյուս բնագավառներին։

Գիտական հիմնարկների, նրանց կուսակցական կազմակերպությունների խնդիրն է գիտական քննադատության մեջ մտցնել կազմակերպական բարձր սկզբունք, վերացնել այդ գործում եղած տարերայնությունն ու ինքնահոսը, ապահովել գիտական աշխատանքների իրոք ստեղծագործական քննարկումը՝ անաչառ սկզբունքայնության, բարձր կուլտուրայի և էթիկայի հիման վրա։

Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է ըստ ամենայնի բարձրացնեն գիտնականների, խմբագրական-հրատարակչական խորհուրդների, գիտական ամբիոնների և ռեկտորատների, նրանց ղեկավարների, պետական հրատարակչությունների խմբագրությունների դերն ու պատասխանատվությունը հոդվածները, գրքերը, զանազան հետազոտությունները հրապարակման և հրատարակման հանձնարարելու գործում։

«Սովետական Հայաստան» թերթը իրավացի քննադատել է «Հայաստան» հրատարակչության լույս ընծայած «Գիտական աթեիզմ» բուհական դասագրքի հայերեն թարգմանությունը։ Այն կատարված է անփույթ, անորակ, որը հանգեցրել է գաղափարա-տեսական բնույթի լուրջ աղավաղումների։ Անճշտություններ կան նույնիսկ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների տեքստերի թարգմանություններում։

Ինչպե՞ս կարող էր այդ տեղի ունենալ։ Դա պատահել է միայն այն պատճառով, որ գրքը հրատարակության նախապատրաստելիս թույլ են տրվել հրատարակչական նորմաների կոպիտ խախտումներ։ Փոխանակ դասագրքի վրա կատարվող աշխատանքը հանձնարարելու լավ թարգմանչի, իրազեկ մաս-



նագետի, հրատարակչության աշխատողները, ոչ առանց շահախնդրության, այդ գործը վերցրել են իրենց վրա։ Ընդ որում, լույս ընծայելուց առաջ նրանք հարկ չեն համարել իրենց աշխատանքը ցույց տալ գիտակ մարդկանց, խորհրդակցել նրանց հետ։ Գիտական աթեիզմի պատմության ու տեսության միջբուհական ամբիոնը, այսպիսով, հեռու է պահվել դասագրքի հայերեն հրատարակումից, իսկ հրատարակչությունը ուսանողներին է հանձնել մի գիրք, որն ըստ էության հրատարակչական խոտան է։

Այս ամենը վկայում է, որ «Հայաստան» հրատարակչության աշխատանքում չկա պատշաճ կարգ ու կանոն, որ նրա որոշ աշխատողներ կորցրել են պատասխանատվության զգացումը և իրենց պրոֆեսիոնալ պարտքի գիտակցումը։ Այդ հանգամանքը պետք է լրջորեն անհանգստացնի Հրատպետկոմին (ընկ. Ս. Բաղդասարյան), որն ուղղակի պատասխանատվություն է կրում հրատարակվող ինքնուրույն և թարգմանական արտադրանքի ինչպես թեմատիկայի, այնպես էլ գաղափարական բարձր մակարդակի համար։

Կենտկոմի պլենումում եղած քննադատությունից լուրջ հետևություններ պետք է անեն նաև հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ ընկ. Ս. Պողոսյանը, «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր ընկ. Լ. Կրոյանը, Պետկինոյի նախագահ ընկ. Գ. Հայրյանը։ Նրանք պետք է լուրջ թերությունների վերացման ու աշխատանքի բարելավման համար առավել գործուն ու կոնկրետ միջոցներ ձեռնարկեն։

Կկամենայինք մասսայական ինֆորմացիայի միջոցների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի բարելավել իրենց աշխատակիցների դաստիարակությունը բարձր պատասխանատվության ու բարոյա-քաղաքական տոկունության ոգով և վճռականորեն խափանել սովետական ժուռնալիստիկայի նորմերի խախտման առանձին փաստեր։

Եվս մեկ հարց՝ հանրապետության դպրոցներում, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսումնա-դաստիարակչական պրոցեսը ըստ ամենայնի բարելավելու անհրաժեշտության մասին։ Ուսուցման ծրագրերն ու մեթոդները պետք է արդեն այժմ ավելի ու ավելի մեծ չափով հաշվի առնեն գիտության ու տեխնիկայի զարգացման հեռանկարները, դաստիարակչական պրոցեսը պետք է տարվի ավելի ակտիվորեն և ավելի նպատակասլաց կերպով։ Մենք չպետք է մոռանանք, որ նրանք, ովքեր այսօր սովորում են այդ դպրոցներում, զարգացնելու են երկրի էկոնոմիկան և կուլտուրան մեր դարի 90-ական թվականներին և գալիք դարի սկզբներին։ Անհրաժեշտ է, որ ուսումնա-դաստիարակչական պրոցեսի մեջ ներգրավվեն մեր բոլոր խոշոր գիտնականները։ Այս տեսակետից հավանության է արժանի հանրապետության գիտությունների ակադեմիայի նախագահության նախաձեռնությունը, որպեսզի ակադեմիայի յուրաքանչյուր անդամ և թղթակից-անդամ դասախոսություններ կարդա և պարապմունքներ վարի մեր բուհերում։ Կարծում եմ, որ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը և այն գերատեսչությունները, որոնց սիստեմներում բուհեր կան, կպաշտպանեն այս նախաձեռնությունը և հնարավորություններ կստեղծեն դրա իրականացման համար։

Ճիշտ է ասված, որ մեծ գիտնականը, իսկական մանկավարժը կրկնվում է իր աշակերտների մեջ, աշակերտն ընդօրինակում է ուսուցչի գաղափարային համոզվածությունը, նրա վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, նրա խորագիտակությունը, աշխատանքի մեթոդիկան։ Դա մեր դասախոսներից, դոցենտներից ու պրոֆեսորներից, բոլոր նրանցից, ովքեր ուսումնա-դաստիարակչական աշխատանքը վարում են բարձր պատասխանատվության զգացումով և բարեխղճորեն են վերաբերվում իրենց կոչմանն ու աշխատանքին, պահանջում է առավելագույն ավանդ մուծել աճող սերնդի դաստիարակության գործում։

Ընկերնե՛ր։

Մեր ստեղծագործական աշխատողների ոգեշունչ ջանքերը, գրողների,

նկարիչների, կոմպոզիտորների, թատրոնի և կինոյի վարպետների ստեղծած սոցիալիստական ռեալիզմի երկերը, որոնցում գեղարվեստական խոր արտացոլում են գտնում մեր սոցիալիստական իրականությունը, սովետական մարդկանց աշխատանքային հերոսությունը, որոնցում վառ ու տպավորիչ կերպով պատմվում է Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի սխրագործության մասին, դասակարգային դիրքերից վերստեղծվում են մեր ժողովրդի պատմական անցյալը, նրա պայքարն իր ազգային և սոցիալական ազատագրության համար, որոնցում ճշմարտացի, կրքոտ և օբյեկտիվորեն արծարծվում են բարոյական թեմաներ, ծանրակշիռ ավանդ են մուծում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում:

Մեր հասարակության զարգացման արդի փուլը պատասխանատու խնդիրներ է դնում գրականության և արվեստի առջև:

Կյանքի բարդ երևույթների մեջ ճշտորեն կողմնորոշվելու, ժամանակի առաջատար միտումները տեսնելու, հասարակական զարգացման խորքային պրոցեսները գեղարվեստորեն հետազոտելու, մեծ ընդհանրացումներ անելու, մի խոսքով, հասարակական մեծ հնչեղության ստեղծագործություններ կերտելու համար քիչ է տաղանդ, ինտուիցիա, ստեղծագործական համարձակություն ունենալը: Նա պետք է ապրի ժողովրդի շահերով, տիրապետի մարքսլենինյան աշխարհայացքին, խորապես ըմբռնի կուսակցության քաղաքականությունը, պարզորոշ տեսնի մեր զարգացման հեռանկարները:

Եթե փորձենք համառոտակի ձևակերպել խնդիրը, ապա կարելի է ասել, որ յուրաքանչյուր արվեստագետ պետք է ասելիք ունենա և իմանա ինչպես ասել: Իրական կյանքի հետ մեր ստեղծագործական մտավորականության սերտ կապը և նրա կենսական ակտիվ դիրքորոշումը կօգնեն իրականության գեղարվեստական հետազոտմանը և ճշմարտացի պատկերմանը, կտան ծավալուն ու հարուստ նյութ, բազմազան թեմաներ ու սյուժեներ, օբյեկտիվորեն կհասցնեն այն բանին, որ արվեստագետը կունենա ասելիք: Որքան սերտ լինի արվեստագետի կապը ժողովրդի բազմաբեղուն կյանքի հետ, այնքան ճշմարիտ կլինի նրա ուղին դեպի ստեղծագործական հաջողություններն ու նվաճումները:

Բայց ո՛չ թեմաների կարևորությունը, ո՛չ էլ արվեստագետների բարի մտադրություններն ինքնըստինքյան դեռ չեն ապահովում ստեղծագործության այնպիսի հնչեղություն, որը բավարարի մեր մարդկանց հոգևոր պահանջմունքները: Այստեղ արդեն առաջին պլանի վրա է մղվում կերտվող ստեղծագործությունների որակի, նրանց գաղափարա-գեղարվեստական մակարդակի հարցը, այսինքն՝ ինչպես ասելու հարցը: Յուրաքանչյուր ստեղծագործություն պետք է ունենա գաղափարա-գեղարվեստական մեծ ուժ, խոր բովանդակություն, արտահայտիչ ձև:

Այստեղ հարկավոր է արվեստագետի տաղանդ, աշխատասիրություն և խստապահանջություն իր նկատմամբ, սթափ ու քննադատական ինքնագնահատման զգացում: Չի կարելի հույս դնել գեղարվեստական ցածր ճաշակի, ռոպեական, վաղանցիկ հաջողության վրա:

Արվեստագետների պարտքն է կերտել բարձր գաղափարայնությամբ, գեղարվեստական մեծ արժանիքներով աչքի ընկնող ստեղծագործություններ, որոնք մարդկանց սնունդ տան խորհրդածությունների և հետևությունների համար, օգնեն նրանց կենսական ճիշտ դիրքավորում ունենալու, հարստացնեն նրանց հոգևոր աշխարհը, մոբիլիզացնեն աշխատանքային նոր սխրանքների: Մեր ժողովրդի, հանրապետության աշխատավորների գեղագիտական ճաշակը անչափ աճել է: Նրանք վաստակել են իսկական մեծ արվեստին հաղորդակցվելու իրավունք:

Մեծ խնդիրներ են կանգնած գրական-գեղարվեստական քննադատության առջև, որը կոչված է գեղարվեստական ստեղծագործության մեջ ակտիվորեն պաշտպանելու և հաստատելու սոցիալիստական ռեալիզմի արվեստի հիմնարար սկզբունքները՝ կուսակցականության, դասակարգայնության, ժողովրդայնության սկզբունքները, ըստ ամենայնի նպաստելու մասսաների դաստիարակող և ոգեշնչող ստեղծագործությունների կերտմանը:



Չնայած «Գրական-գեղարվեստական քննադատության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից հետո նկատված որոշ դրական տեղաշարժերին, այդ բնագավառում դեռևս շատ թերություններ կան: Առանձին մտահոգություն է առաջացնում գնահատման չափանիշների և էպիտետների նկատելի արժեզրկումն այս կամ այն ստեղծագործությունը գրախոսելիս:

Ամենքին հասկանալի է, որ գեղարվեստական ստեղծագործությունը հեշտ ու հասարակ պրոցես չէ, յուրաքանչյուր արվեստագետ իր առանձնահատուկ ուղիով է մոտենում իրականության իմաստավորմանը, ուստի մեր կուսակցությունը միշտ հետևում է լենինյան խորհրդին՝ հնարավորություններ ստեղծել արվեստագետի տաղանդի լիակատար դրսևորման համար. «ապահովել անձնական նախաձեռնության, անհատական հակումների առավել ազատություն, մտքի ու երևակայության, ձևի ու բովանդակության ազատություն»:

Բայց խոսքի, վրձնի, երաժշտության, թատրոնի, կինոյի, հեռուստատեսության և արվեստի մյուս տեսակների վարպետների ստեղծագործության նկատմամբ զգայուն վերաբերմունքը պետք է զուգորդվի սկզբունքայնության և պահանջկոտության հետ:

Մենք պետք է անհաշտ լինենք գեղարվեստական խոտանի, գաղափարազրկության, հետամնացության և գավառականության կնիքը կրող ստեղծագործությունների նկատմամբ, անհաշտ լինենք պատմական երևույթները, իրադարձություններն ու անհատներին պատկերելիս դասակարգային կողմնորոշիչները կորցնելու, երևույթների կամայական մեկնաբանությունների, արվեստագետի դիրքավորման անորոշության հանդեպ, այն փորձերի հանդեպ, երբ ստեղծագործական աշխատանքի ու բարդության և յուրօրինակության «որոնումների» քողի տակ սովետական արվեստի և գրականության մեջ սպրդում են մեզ համար խորթ հայացքներ: Պետք է վճռականորեն դեն նետել այդ ամենը: Մենք այսուհետև ևս պետք է ավելի հաստատակամորեն պաշտպանենք գրականության և արվեստի կուսակցականության, դասակարգայնության, գաղափարայնության և ժողովրդայնության լենինյան սկզբունքները, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքները:

Մենք վստահ ենք, որ մեր ստեղծագործական մտավորականությունը, առաջնորդվելով կուսակցության XXV համագումարի պահանջներով, ավելի ծանրակշիռ ավանդ կմուծի կոմունիստական դաստիարակության գործում, մեր ժողովրդին կուրախացնի գաղափարապես հագեցած նոր, բարձրարվեստ ստեղծագործություններով:

Կկամենայի մեր ստեղծագործական միությունների, նրանց կուսկազմակերպությունների և ղեկավարների ուշադրությունը հրավիրել ևս մի քանի հանգամանքների վրա:

Խոսքն այն մասին է, որ մեր ստեղծագործական միություններն ու նրանց կուսկազմակերպությունները կոնկրետ կերպով որոշեն իրենց տեղն ու խնդիրները մասսաների կոմունիստական դաստիարակության բարելավման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի տակ և այդ խնդիրների լուծման համար մոբիլիզացնեն միությունների, առանց բացառության, բոլոր անդամներին:

Անհրաժեշտ է ավելի խստապահանջ վերաբերմունք ցուցաբերել այն ստեղծագործությունների նկատմամբ, որոնք նրանք հանձնարարում են հրապարակման կամ կատարման, բարձրացնել պահանջկոտությունը տպագիր օրգանների, խմբագիրների ու աշխատակիցների նկատմամբ, նրանց պատասխանատվությունը հրապարակումների գեղարվեստական մակարդակի և գաղափարական նպատակասլացության համար: Չի կարելի թույլ տալ, որ առանձին տպագիր օրգանների խմբագիրներ ու աշխատակիցներ այդ օրգանները ամբիոն դարձնեն իրենց սուբյեկտիվ հայացքները քարոզելու, գաղափարական սխալ մարզանքների, երբեմն էլ անձնական հաշիվներ մաքրելու համար:

Զեկուցման մեջ արդեն խոսվեց «Սովետական գրականություն» ամսագրում թույլ տրված կոպիտ սխալների մասին: Կարո՞ղ էր արդյոք դա տեղի ունենալ ստեղծագործական կոլեկտիվի բարձր գաղափարայնության, կուսակ-

ցական սկզբունքայնության, խստապահանջության մթնոլորտում։ Իհարկե ոչ։ Չէ՞ որ հիշյալ հոդվածը նույնիսկ չի քննարկվել ամսագրի խմբագրական կոլեգիայում։ Մինչդեռ «Լիտերատուրնայա Արմենիա» ամսագրի աշխատանքի մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի որոշման մեջ Հայաստանի գրողների միության քարտուղարությանը և նրա կուսակցական կազմակերպությանը խստիվ մատնացույց էր արվել նման երևույթների անթույլատրելիության համար, անհրաժեշտ էր համարվել բարձրացնել հրապարակումների գաղափարական մակարդակը, ապահովել հասարակական կյանքի, գրականության և արվեստի երևույթների դասակարգային և կուսակցական գնահատականների հստակությունը։

Ստեղծագործական միությունների ղեկավարները՝ ընկ. ընկ. Վ. Պետրոսյանը, Է. Միրզոյանը, Ս. Սաֆարյանը, Հ. Ղափլանյանը պարտավոր են ավելի ակտիվորեն և սկզբունքայնորեն ապահովել գրականության և արվեստի բնագավառում կուսակցության քաղաքականության կիրառումը իրենց գլխավորած ստեղծագործական կազմակերպություններում։

Կոմունիստական շինարարության մեջ գրականության և արվեստի դերի մեծացումը, գաղափարական աշխատանքի բնագավառում կուսակցության XXV համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են է՛լ ավելի ուժեղացնել կուսակցական, պետական, կոմերիտական, հասարակական կազմակերպությունների ուշադրությունը ստեղծագործական երիտասարդության պրոֆեսիոնալ և գաղափարական դաստիարակության նկատմամբ։

Անհրաժեշտ է մշակել ստեղծագործական երիտասարդության հետ աշխատանքը արմատապես բարելավելու լավ մտածված միջոցառումների սիստեմ, բոլոր պայմաններն ստեղծել և օգնել նրան դրսևորելու իր ձիրքերը, տաղանդների զարգացումը տանել ստեղծագործական տեսակետից հեռանկարային ուղիով, երիտասարդներին հանձնարարել հետաքրքիր գործեր, հոգատարություն ցուցաբերել ստեղծագործական միությունները շնորհալի երիտասարդներով սիստեմատիկաբար համալրելու նկատմամբ, ընդլայնել նրա ներկայացուցչությունը պարբերական հրատարակությունների խմբագրական կոլեգիաներում, կատարելագործել երիտասարդ մտավորականության լավագույն ներկայացուցիչներին ՍՄԿԿ շարքերն ընդունելու պրակտիկան և այլն։ Մի խոսքով, մենք պարտավոր ենք ամեն ինչ անել, որպեսզի մեր ղեղարվեստական մտավորականության լավագույն սերունդների էստաֆետը շարունակվի, ընդ որում է՛լ ավելի մեծ հաջողությամբ համապատասխանի ժամանակի ոգուն ու պահանջներին։

Դա կուսակցական և պետական մեծ խնդիր է, մենք պետք է այն հաջողությամբ լուծենք։

Աշխատավորների ինտերնացիոնալ, հայրենասիրական դաստիարակության հարցերը եղել և մնում են կուսակցության ուշադրության կենտրոնում։

Մենք իրավամբ հպարտանում ենք մեր ժողովրդի հիանալի նվաճումներով։ Սովետական իշխանության տարիներին սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում հայ ժողովուրդը ձեռք բերեց սոցիալիստական պետականություն, ստացավ գալիքին վստահորեն նայելու, իր որդիների և դուստրերի ընդունակություններն ու ձիրքերը համակողմանիորեն բացահայտելու հնարավորություն, իր հողը դարձրեց ծաղկուն երկրամաս։ Մեր ժողովրդի քաղաքական, տնտեսական ու սոցիալական նվաճումները մարմնավորում են կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության կենսահաստատ ուժը։ Դրանք սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցության, նրանց սերտ շփման ու փոխադարձ օգնության արդասիքն են։ Մեր պարտքը, հանրապետության յուրաքանչյուր աշխատավորի պարտքն է աչքի լույսի պես պահել ու պահպանել ժողովուրդների լենինյան բարեկամությունը՝ սոցիալիստական հասարակարգի մեծ նվաճումը, ամրապնդել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների եղբայրական Միության անխորտակելի հզորությունը։

Մեր սիրո և խորին երախտագիտության զգացմունքները ուղղված են բոլոր սովետական ժողովուրդներին և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդին։ Ռուս ժողովրդի հետ ունեցած բարեկամությունը, որը գալիս է դարերի խորքից, հայ ժողովրդի սրբության սրբոցն է։ Հենց դրա համար էլ առաջիկա մեծ տոնահանդեսը՝ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակը, երբ հայ ժողովուրդն առհավետ իր բախտը կապեց ռուս ժողովրդի բախտի հետ, մենք կնշենք որպես ռուս և հայ ժողովուրդների, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրության պայծառ տոն, որպես ինտերնացիոնալիզմի համաժողովրդական տոն։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը մտադիր են այդ տոնի նախապատրաստության ընթացքում անցկացնել բազմաթիվ միջոցառումներ։ Երևանում կստեղծվի մի հոյակապ հուշակոթող, որը կխորհրդանշի ռուս և հայ ժողովուրդների մեծ ու անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը։

Նշանակալի հոբելյանի նախապատրաստությունն ու տոնակատարությունը կանցկացվեն ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության աշխատանքի հետագա ակտիվացման, հայ ժողովրդի սոցիալական և ազգային վերածննդի գործում լենինյան գաղափարների, կուսակցության իմաստուն քաղաքականության դերի է՛լ ավելի լայն ու համակողմանի բացահայտման, կոմունիստական շինարարության բնագավառում եղբայրական սովետական ժողովուրդների նվաճումների ու հաջողությունների, կոմունիզմի համար համատեղ պայքարում նրանց բարեկամության ու համագործակցության բարեբեր արդյունքների լայն պրոպագանդման նշանաբանով։

Կատարելով ինտերնացիոնալ դաստիարակության աշխատանքը, մենք միաժամանակ պետք է հետևողականորեն մերկացնենք հակակոմունիզմի և ժամանակակից ռևիզիոնիզմի գաղափարական դիվերսիաները, դաշնակցական գաղափարախոսության և պրակտիկայի հակաժողովրդական էությունը, այն ամենը, ինչ որ ազգերի և ազգային մշակույթի պրոբլեմների մասին գրում, եթեր են հաղորդում տարբեր տեսակի «սովետաբաններ», թափթփուկներ, Լենինի խոսքերով ասած, «կատաղի նացիոնալիզմի» ներկայացուցիչներ։

Ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակությունը պետք է օրգանապես շաղկապվի կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթների պրոպագանդման հետ։ Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում, սովետական մարդկանց տարբեր սերունդների իդեալների ու նպատակների, մեծագործությունների ու պայքարի, խիզախության ու հերոսության թեման այսուհետև ևս պետք է կարևոր տեղ գրավի մեր գաղափարա-դաստիարակչական աշխատանքում։

Մենք պարտավոր ենք խնամքով պահպանել ու զարգացնել հավատարիմ լենինյաններ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ա. Մյասնիկյանի, մեր ժողովրդի մյուս ականավոր զավակների՝ մեր սերնդին պատգամած հեղափոխական-ինտերնացիոնալիստական ավանդույթները։

Ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության աշխատանքում անհրաժեշտ է հանրապետության յուրաքանչյուր աշխատավորի մեջ մշտապես ամրապնդել կոմունիստական շինարարության՝ բոլոր սովետական ժողովուրդների ընդհանուր գործում իր ժողովրդի ավանդը բազմապատկելու հայրենասիրական պարտքի զգացումը։

Իսկական հայրենասերը նա չէ, ով անզուսպ կերպով մեծադղորդ բաժակաճառեր է ասում, ճամարտակում հայրենի հողի նկատմամբ իր զգացմունքների մասին և այդ ամենը չի ամրապնդում փոքր ի շատե պրակտիկ, օգտակար գործերով։ Լինել հայրենասեր՝ նշանակում է իր աշխատանքով, իր կոնկրետ գործերով զարդարել այդ հողը, կառուցել ժողովրդի համար, բազմապատկել նրա նյութական արժեքները, զարգացնել նրա հոգևոր մշակույթը, հզորացնել մեր մեծ Հայրենիքը։

Իսկական հայրենասերը նա չէ, ով շարունակ պարծենում է ժողովրդի նվաճումներով ու միևնույն ժամանակ հաշտվում կյանքում եղած թերությունների

ու բացասական երևույթների հետ, հայեցողական դիրք գրավում, չի պայքարում դրանց դեմ։ Լինել հայրենասեր նշանակում է ամուր հենվելով հեղափոխական ժառանգության վրա, ակտիվորեն զարգացնել և բազմապատկել այն, ակտիվորեն մարտնչել այն ամենի դեմ, ինչ խանգարում է մեր առաջընթացին, կարողանալ տեսնել հեռանկարը, անհաշտ պայքար մղել թերությունների, սովետական ապրելակերպին խորթ երևույթների դեմ։

Իսկական հայրենասերը նա է, ով իր գիտակցության մեջ հաստատում է ինտերնացիոնալիստական ազնիվ համոզմունքներ, կարողանում է պրակտիկ գործերով մշտապես ամրապնդել ՍՍՀՄ ժողովուրդների մեծ բարեկամությունը, ով իր ժողովրդի և հանրապետության նկատմամբ ունեցած սերը ներդաշնակորեն և անխզելիորեն զուգորդում է սովետական եղբայրական բոլոր հանրապետությունների և նրանց ժողովուրդների, մեր մեծ Հայրենիքի նկատմամբ տածած սիրո հետ։

Սովետական հայրենասիրության մեջ դրսևորվում է սովետական մարդու քաղաքական և սոցիալական ակտիվությունը, նրա քաղաքացիական բարձր գիտակցականությունը։ Դրանով, հենց դրանով է չափվում ամեն մի առանձին մարդու և ամեն մի աշխատավորական կոլեկտիվի սոցիալական նշանակությունն ու արժեքավորությունը։

Հայաստանի կոմկուսը, որ միշտ հավատարիմ է եղել ՍՄԿԿ-ի լենինյան ինտերնացիոնալ ուսմունքին և նրա քաղաքականությանը, այսուհետ ևս հայ ժողովրդին, հանրապետության բոլոր աշխատավորներին կդաստիարակի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով։

Աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակության ասպարեզում կարևոր տեղ է գրավում երիտասարդության հետ տարվող աշխատանքը։

Սովետական Հայաստանի երիտասարդությունը, որը սովետական երիտասարդության մարտական ջոկատներից մեկն է, անսահմանորեն նվիրված է կոմունիստական կուսակցության և ժողովրդի գործին, սիրում է իր Հայրենիքը։ Պահպանելով ու զարգացնելով ավագ սերունդների հեղափոխական և աշխատանքային ավանդույթները, նա ակտիվորեն և երիտասարդությանը հատուկ խանդավառությամբ, անսպառ եռանդով ու խիզախությամբ աշխատում է երկրի և հանրապետության տնտեսական-կուլտուրական շինարարության բոլոր ճակատներում ու տեղամասերում։

Մեր երիտասարդությունը, ի դեմս իր լավագույն ներկայացուցիչների, արժանավայել կերպով է ներկայացված հանրապետության բոլոր կուսակցական, պետական, սովետական ղեկավար մարմիններում և հասարակական կազմակերպություններում։ Մենք ուրախանում ենք մեր երիտասարդության հերոսական գործերով ու հաջողություններով և իրավամբ հպարտանում ենք նրանով։

Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պետք է մշտապես բարելավեն ու կատարելագործեն երիտասարդության գաղափարա-քաղաքական դաստիարակության աշխատանքը կառույցներում և ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, գիտական հիմնարկներում և ստեղծագործական կազմակերպություններում, բուհերում, տեխնիկումներում և միջնակարգ դպրոցներում։ Հարկավոր է այդ աշխատանքը կառուցել լավ կշռադատված շերտավորումով, հաշվի առնելով ոչ միայն առհասարակ երիտասարդության համակողմանի պահանջները, այլև համապատասխան խմբերի հետաքրքրությունները։ Խիստ կարևոր է վճռականապես վերացնել ու հրաժարվել այդ աշխատանքում դեռևս առկա տրաֆարետից ու շաբլոնից։

Անհրաժեշտ է մշակել բովանդակության, մատչելիության և ակտիվ ներգործության տեսակետից խորապես մտածված միջոցառումներ այն երիտասարդների հետ տարվող աշխատանքի համար, որոնք խուսափում են հանրօգուտ աշխատանքից, խախտում արտադրական և ուսումնական կարգապահությունն ու հասարակական կարգը, չեն մասնակցում հասարակական աշխատանքին, ցուցաբերում են եսասիրություն և սովետական երիտասարդությանը ոչ բնորոշ հատկություններ։ Ի դեպ ասեմ, որ երբեմն ավագ սերնդի մարդկանցից ոմանք, որոնք ծառերի ետևում չեն տեսնում անտառը, այդպիսի առանձին



փաստերից սխալ ընդհանրացումներ են անում մեր երիտասարդության մասին։

Կոմերիտական կազմակերպությունները երիտասարդների հետ աշխատանքը պետք է այնպես կազմակերպեն, որպեսզի նրանք իրենք ճիշտ ուղու վրա կանգնեցնեն իրենց հասակակիցներին, նրանց պատվաստելով բարոյաքաղաքական վեհ հատկություններ։

Մենք պետք է հիշենք, որ ապագան ձևավորվում է այժմ, որ այսօրվա պատանիներն ու աղջիկները վաղվա մասնագետներն են, ձեռնարկությունների ղեկավարները, մեր ժողովրդական տնտեսության կազմակերպիչները, սովետական բանակի ռազմիկներն ու սպաները, այսինքն՝ նրանք, որոնց ուսերին է ընկնելու ամբողջ պատասխանատվությունը երկրի, հանրապետության, մեր ժողովրդի ապագայի համար։ Եվ հայրերի ու մայրերի գործի արժանի շարունակողները լինելու, նրանց հեղափոխական և աշխատանքային էստաֆետը ընդունելու համար այսօրվա քսան տարեկանները պետք է ներառնեն, իրենց սեփականությունը դարձնեն նախորդ սերունդների բոլոր լավագույն գծերն ու ավանդույթները, համառորեն տիրապետեն գիտելիքներին, պրոֆեսիոնալ վարպետությանը, հասարակական աշխատանքի հմտություններին,— մի խոսքով՝ իրենց նախապատրաստեն ապագայի համար։ Մենք հավատում ենք մեր երիտասարդությանը, վստահ ենք նրա գալիք հաջողություններին։

Մասսաների կոմունիստական դաստիարակության գործում առանձնահատուկ տեղ է գրավում քաղաքական և աշխատանքային դաստիարակության սերտ միաձուլումը։

«Մենք, ընկերներ,— ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— կառուցում ենք ոչ թե անբանների թագավորություն, որտեղ կաթի գետեր են և կիսելի ափեր, այլ մարդկության պատմության մեջ ամենակազմակերպված, ամենաաշխատասեր հասարակարգը։ Եվ այդ հասարակարգում կապրեն ամենաաշխատասեր ու բարեխիղճ, կազմակերպված և բարձր գիտակցություն ունեցող մարդիկ։ Այնպես որ, մեզ հսկայական կարևորություն ունեցող աշխատանք է սպասում։ Դա, ըստ երևույթին, քիչ ժամանակ չի խլի, քանի որ մարդու հոգեբանությունը ավելի դանդաղ է վերափոխվում, քան նրա կյանքի նյութական հիմքերը»։

Իսկ դա նշանակում է, որ մեր բոլոր նյութական և հոգևոր հարստությունների ու հետագա հաջողությունների հիմքերի հիմքը աշխատանքն է, աշխատանքը և դարձյալ աշխատանքը։ Կա մի իմաստուն ժողովրդական ասացվածք՝ «Այսօր ինչպես աշխատես, վաղը այնպես կապրես»։ Ուստի մեր հասարակության բոլոր անդամների ակտիվ, ստեղծարար ու կազմակերպված աշխատանքի, գիտակցված, բարձր արտադրողական, բարձրորակ աշխատանքի, անձնվեր աշխատանքի ոգով դաստիարակելն ու մոբիլիզացնելը միշտ պետք է լինի գլխավորը կուսակցական կազմակերպությունների ամբողջ գործունեության մեջ։

Մասսաների աշխատանքային դաստիարակության ընդհանուր օղակում այսօր կկամենայի ձեր ուշադրությունը սևեռել սոցիալիստական մրցության դաստիարակչական կողմի վրա, այդ մրցության հետագա ծավալման կարևորության վրա, որի մեջ ամենից ավելի սերտորեն է միաձուլվում աշխատավոր մասսաների քաղաքական և աշխատանքային դաստիարակությունը։

Մեզանում դեռ հանդիպում են աշխատողներ, որոնք, չհասկանալով աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման այդ կարևորագույն, ազդու գործոնի էությունը, որը ձևավորում է բազմակողմանի, ներդաշնակորեն զարգացած մարդուն, ձևական վերաբերմունք են ցուցաբերում նրա նկատմամբ, որով փաստորեն ամլացնում են նրա էությունն ու դաստիարակչական նշանակությունը։ Հարկավոր է այդպիսի ընկերներին հիշեցնել լենինյան այն դրույթը, որ «սոցիալիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլև, ընդհակառակն, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությանը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են իրենց երևան բերել, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճզմել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով»։

Այստեղից էլ հետևում է, որ ճիշտ կազմակերպված սոցիալիստական մրցությունը, երբ խորապես ըմբռնվում է և՛ նրա տնտեսական, և՛ գաղափարա-բարոյական ասպեկտը, դառնում է աշխատավոր մասսաների քաղաքական և աշխատանքային դաստիարակության անգնահատելի միջոց։ Ուստի սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է ըստ ամենայնի ծավալել սոցիալիստական մրցությունը հանրապետության բոլոր արտադրական և ստեղծագործական բջիջներում, հատուկ ուշադրություն դարձնելով այն բանի վրա, որ այդ գործում տեղ չգտնեն ձևամոլությունը, մակերեսային, անլուրջ մոտեցումը։

Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների լրիվ և ժամանակին կատարման ապահովումը մեծապես բարձրացնում է սոցիալիստական մրցության դաստիարակչական նշանակությունը։ Այդ կապակցությամբ այսօր լուրջ քննադատության է արժանի կուսակցության Սևանի և Ապարանի շրջանային կոմիտեների գործունեությունը (ընկ. ընկ. Ս. Զաքարյան և Բ. Անդրեասյան), որոնք չեն ապահովել կերի կուտակման ասպարեզում շրջանների ստանձնած պարտավորությունների լրիվ կատարումը, և հատկապես կուսակցության Իջևանի ու Եղեգնաձորի շրջկոմների աշխատանքը (ընկ. ընկ. Մ. Փափազյան և Ս. Խաչատրյան), որտեղ ոչ միայն չի ապահովվում սոցպարտավորությունների կատարումը, այլև ձախողվում է խաղողի արտադրության և վաճառքի պլանը։

Բացառիկ մեծ նշանակություն տալով աշխատանքային դաստիարակությանը, կուսակցական կոմիտեներն ու շրջանային սովետները պետք է նպատակասլաց միջոցներ ձեռնարկեն, որպեսզի աշխատանքային գործունեության մեջ ներգրավեն հանրապետության բոլոր աշխատունակ մարդկանց։ Անհրաժեշտ է ամենաարմատական միջոցները ձեռնարկել այն պորտաբույծների նկատմամբ, որոնք տարիներով չեն աշխատում, զբաղվում են սպեկուլյացիայով և անթույլատրելի ու կասկածելի այլ գործերով, որոնք զբաղվում են միայն անձնական տնտեսություններով։ Առանձին ընկերներ դանգատվում են աշխատուժի պակասից, երբ իրենց իսկ քաղաքներում ու գյուղերում դեռևս շատ են պարապ թրև եկող երիտասարդները։ Այդ տեսակետից մեծ խնդիրներ են կանգնած հանրապետության կոմերիտմիության առջև։ Նա պետք է հասնի այն բանին, որ ոչ մի երիտասարդ անգործ չթափառի, այլ ընդգրկվի հանրօգուտ աշխատանքի մեջ։

Պորտաբույծների շուրջը անհրաժեշտ է ստեղծել անհանդուրժողության և հասարակական պարսավանքի մթնոլորտ։ Այստեղ հարկավոր է նաև վարչական ներգործություն կիրառել առավել լկտի մակաբույծների նկատմամբ։ Սոցիալիզմի՝ «Ով չաշխատի, նա չի ուտի» սկզբունքը պետք է ակտիվ գործողության մեջ դնել։

Կուսակցական կազմակերպությունները, ինչպես և բոլոր կոլեկտիվները պետք է խիստ պատասխան պահանջեն այն ծնողներից, ովքեր չեն զբաղվում իրենց երեխաների աշխատանքային դաստիարակությամբ՝ չըմբռնելով, թե ինչպիսի արջի ծառայություն են մատուցում նրանց։

Սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկությունը նրա սոցիալական կազմակերպման տեսակետից այն է, որ հասարակության և անհատի հարաբերություններն այստեղ միջնորդվում են կոլեկտիվով։

Այստեղից բխում է, որ գաղափարա-քաղաքական, բարոյական դաստիարակության, սոցիալիստական ապրելակերպի ձևավորման հիմնական օղակը կոլեկտիվն է, արտադրական, գիտական, ուսումնական, հասարակական և այլ կոլեկտիվը։ Ուրեմն, եթե մենք ուզում ենք ավելի մեծ արդյունքների հասնել գաղափարա-քաղաքական, բարոյական դաստիարակության մեջ, մենք պետք է ըստ ամենայնի բարելավենք սոցիալիստական ապրելակերպի արմատավորման ու զարգացման ուղղությամբ կոլեկտիվների կուսակցական կազմակերպությունների աշխատանքը։

Դա չի բացառում, այլ, ընդհակառակն, ենթադրում ու պահանջում է մեծ ջանքեր թափել սոցիալիստական ապրելակերպը թե ընտանիքում, թե կենցաղում, թե՛ մեր կենսագործունեության բոլոր ասպարեզներում արմատավո-



րելու ուղղությամբ։ Բայց հիմքերի հիմքը մարդկանց դաստիարակությունն է կոլեկտիվներում։

Մեր կյանքն ինքն ապացուցել է աշխատանքային կոլեկտիվներում կատարվող դաստիարակության արդյունավետությունը։ Մենք շատ կոլեկտիվներ ունենք, որոնք որակյալ ղեկավարության առկայությամբ և իրենց կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ, լավ ու մեծ արդյունքների են հասնում թե՛ արտադրական խնդիրների կատարման, թե՛ իրենց աշխատողների դաստիարակության գործում։

Վերցնենք, օրինակ, մեր քիմիական արդյունաբերության դրոշակակիր՝ Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի կոլեկտիվը։ Չէ՞ որ ժողովրդի մեջ այդ կոլեկտիվի աշխատողներին հարգանքով անվանում են «կիրովցիներ», այդ հասկացության մեջ դնելով առաջավոր մարդու, աշխատավոր մարդու, խոսքի ու գործի մարդու, բարձր քաղաքացիական ակտիվություն ունեցող մարդու խոր իմաստը, որն իր ուժերը, կարողությունն ու եռանդը նվիրաբերում է հասարակության բարօրությանը, կուսակցության քաղաքականության կենսագործմանը։

Մեզ մոտ հպարտությամբ «կանազցիներ» են անվանում Երևանի ալյումինի գործարանի բանվորներին ու ծառայողներին, որոնք վայելում են մայրաքաղաքի և ամբողջ հանրապետության աշխատավորների հարգանքն ու սերը։ Որպես իրենց գործին նվիրված և ակտիվ քաղաքացիներ հռչակվել են Լենինականի դեպոյի առաջավոր աշխատողները՝ կադրային երկաթուղայինները, Լենինյին դյուցազունները՝ քաջարանցիները, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի առաջավոր աշխատողները, Կիրովականի քիմիագործները, Հրազդանի ցեմենտագործները, բարձր բերքի վարպետները՝ Արարատի խաղողագործներն ու բանջարաբույծները, Ախուրյանի, Սպիտակի ճակնդեղագործները, Նոյեմբերյանի պտղաբույծները, Ճամշադինի, Իջևանի և Վարդենիսի ծխախոտագործները, Կալինինոյի անասնապահները, Արփա—Սևանի, ատոմային էլեկտրակայանի շինարարները և հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի շատ ու շատ առաջավորներ։ Իսկ ինչպիսի սիրով է շրջապատում ժողովուրդը դպրոցների և ուսումնական հաստատությունների, մանկապարտեզների ու մանկամսուրների բարեխիղճ աշխատողներին, որոնք դաստիարակում են մեր աճող սերնդին։ Առողջապահության շատ կոլեկտիվներ իրենց վեհ պարտքին ազնիվ և անձնվեր ծառայությամբ վաստակել են հանրապետության աշխատավորների հարգանքն ու սերը։ Իսկ ինչպիսի խանդաղատանքով և անսքող հարգանքով են մեր աշխատավորները, մեր ամբողջ ժողովուրդը խոսում ու վերաբերվում մեր առաջավոր գիտնականներին, տաղանդավոր գրողներին, նկարիչներին, կոմպոզիտորներին, արտիստներին և մյուս ստեղծագործական աշխատողներին։ Հասարակությանը նվիրված այդ բոլոր առաջավոր մարդիկ մեր թանկարժեք հարստությունն են, և մենք իրոք հպարտանում ենք նրանցով։ Նրանք շատ ու շատ են, հազար-հազարներ։ Նրանց բոլորին աճեցրել է մեր կոմունիստական կուսակցությունը, մեր սոցիալիստական հասարակարգը, մեր սոցիալիստական կոլեկտիվները, նրանց սկզբնական կուսակցական կազմակերպությունները։ Այդ մարդիկ են այսօր որոշում մեր հասարակության դեմքը։

Բայց մենք չպետք է հանգստանանք ձեռք բերածով, բավարարվենք նրանով, որ մեր բոլոր կոլեկտիվները ամբողջությամբ վերցրած առողջ են, ակտիվ, կատարում են իրենց առջև դրված քաղաքական, արտադրական, սոցիալական բնույթի խնդիրները։ Այսօր խոսքը վերաբերում է այդ նվաճումների բազմապատկմանը, այն բանին, որ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ լավ աշխատի և լինի անհատի իդեալի բարձր հատկանիշների կրողը։

Աշխատանքային կոլեկտիվները բացառիկ կարևոր դեր ունեն բարոյական դաստիարակության հարցում, որի նպատակն է մարդու մեջ մշակել կենսական ակտիվ դիրքավորում, հասարակական պարտքի նկատմամբ գիտակցական վերաբերմունք, խոսքի ու գործի միասնություն՝ որպես վարքագծի ամենօրյա նորմ։

Բայց եկեք նայենք՝ արդյոք մեզանում ամենուրե՞ք լրիվ են օգտագործվում

աշխատավորական կոլեկտիվի՝ մարդու վրա բարոյական ներգործության այդ հսկայական հարվածային ուժի հնարավորությունները։ Ոչ, լրիվ չեն օգտագործվում։ Իսկ ինչո՞ւ։ Որովհետև կուսակցական առանձին կազմակերպություններ տակավին չեն կարողանում, ելնելով յուրաքանչյուր տվյալ կոլեկտիվում առկա կոնկրետ պայմաններից և կոնկրետ իրադրությունից, բավարար չափով որոշել դաստիարակչական աշխատանքի գլխավոր ուղղությունները, կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ մղվող պայքարի ուղղությունները։ Շատ տեղերում աշխատանքը կատարվում է ամբողջությամբ վերցրած, ընդհանուր առմամբ, բայց ոչ կոնկրետ կերպով, առանց նպատակասլաց շերտավորման։

Իսկապես, որտե՞ղ են, օրինակ, չարագործում ամեն կարգի դեռևս հանդիպող խարդախները, կաշառակերները, դրամաշորթները, ժողովրդական բարիքը հափշտակողները, բյուրոկրատները և խորթ բարքերի ու քաղքենիական հոգեբանության այլևայլ կրողները։ Անշուշտ, ոչ դատարկ տարածության մեջ, այլ հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին արտադրական և ուրիշ բջիջներում։ Իսկ չէ՞ որ այդ բջիջներն ունեն իրենց կոլեկտիվները՝ կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններով հանդերձ։ Հարց է ծագում՝ եթե կուսակցական և մյուս հասարակական կազմակերպությունները, կոլեկտիվների բոլոր անդամներին դաստիարակեն կենսական ակտիվ դիրքավորման, իրենց հասարակական պարտքի նկատմամբ բարձր գիտակցականության ոգով, մի՞թե այդ դեպքում կարող է խարդախը, հանցավոր գործարքներ կատարողը կամ հափշտակիչը ազատորեն գործել և այն էլ երկար ժամանակ։ Իհարկե, ո՛չ։ Չէ՞ որ կոլեկտիվի ամեն մի անդամ, հատկապես, եթե կոլեկտիվը մեծ չէ, գիտե, թե ինչով է ապրում, ինչով է զբաղված և ինչ է անում մյուսը։ Չէ՞ որ կոլեկտիվներում մեծ մասամբ գիտեն, խոսում են խարդախի, հանցավոր գործարքներ կատարողի, չարամիտ խուլիգանի ու նրանց նմանների մասին։ Ուրեմն ինչո՞ւ այնպես չանել, որ այդ մարդիկ մերկացվեն հենց կոլեկտիվներում և պատժվեն նրանց պահանջով, իսկ ոմանց էլ ժամանակին ետ պահեն ու դաստիարակեն։

Իսկ ի՞նչն է խանգարում դրան։ Դրան խանգարում է կոլեկտիվների առանձին անդամների կենսական ակտիվ դիրքավորման բացակայությունը, հաշտվողականության և անտարբերության հոգեբանությունը, այսպես կոչված՝ «վատամարդ» հորջորջվելու թյուր երկյուղը, մոռանալով, որ «լավամարդ» դառնալով խարդախի համար, այդ մարդը իրականում դառնում է կոլեկտիվի և հասարակության վատ անդամ։ Աշտարակի շրջանի Բյուրական գյուղի սովխոզում, օրինակ, երկար ժամանակ մի խումբ հափշտակիչներ, սովխոզի գլխավոր հաշվապահի գլխավորությամբ, յուրացրել են 48 հազար ռուբլի գումար։ Չէ՞ որ դա կոլեկտիվում է տեղի ունեցել։ Կարելի՞ է, արդյոք, ասել, թե այդտեղ ոչ ոք ոչինչ չի իմացել և ոչինչ չի կռահել։ Իհարկե, ո՛չ։

Կամ, ինչպես ասված է զեկուցման մեջ, «Ջերմուկ» հանքային ջրերի գործարանում մի խումբ խաբեբաներ 1974—1975 թվականների ընթացքում հափշտակել են մոտավորապես 40 հազար ռուբլի։ Բայց ահա հանցագործներին մերկացրին ոչ թե կոլեկտիվի անդամները, այլ ստուգող մարմինները։ Խոշոր չափերով նյութական արժեքների և դրամական միջոցների հափշտակման նման հանցավոր խմբեր են գործել Երևանի սպորտային իրերի կոմբինատում, Անիի շրջանի կենցաղսպասարկման կոմբինատում, Արարատի շրջսպառկոոպմիության Վեդիի հանրախանութում և այլն։ Իսկ որտե՞ղ է կոլեկտիվի անդամների կենսական ակտիվ դիրքավորումը, ո՞ւր էին նայում այդ հիմնարկների կուսկազմակերպությունները։ Հանցագործները, իհարկե, պատիժ կրեցին։ Բայց այսօր խոսքն այդ մասին չէ։ Խոսքն այն մասին է, թե ինչպես անտարբերությունը, հաշտվողականությունը, անսկզբունքայնությունը հասցնում են նման բացասական հետևանքների։

Առևտրի և մատակարարող ու առևտրական զանազան բազաների առանձին անազնիվ աշխատողներ հափշտակումներով և սովետական առևտրի կանոնների խախտումներով են զբաղվում իրենց աշխատանքային ընկերների աչքի



առաջ, նույն գնորդների աչքի առաջ, բայց ամենուրեք չէ, որ նրանցից պատասխան են պահանջում։ Առանձին մարդկանց մոտ բուն է դնում «ինչո՞ւ վատամարդ դառնամ», «դրա համար հատուկ մարմիններ կան» հոգեբանությունը։ Դա պասսիվ հայեցողության և անտարբերության, քաղքենիության հոգեբանություն է։

Չափը կորցրած բյուրոկրատն իր իսկ ընկերների աչքի առաջ ոտնահարում է քաղաքացիների իրավունքները, կոլեգաները չեն միջամտում, պատասխան չեն պահանջում, որովհետև չեն ուզում «հարաբերությունները փչացնել», չեն ուզում «վատամարդ» դառնալ։

Ուրեմն ստացվում է, որ, այդպիսի անտարբերների կարծիքով, կարելի է լինել վատ քաղաքացի, բայց ոչ «վատամա՞րդ»։

Իսկական սովետական մարդը կոմունիստական բարձր բարոյականության համար, մեր սոցիալիստական բարոյական նորմերի ու սկզբունքների համար ակտիվ մարտնչող է. դա սոցիալիստական հասարակարգի քաղաքացին է, որը չի կարող թույլ տալ որևէ մեկին իր գործողություններով և վարքագծով վնաս հասցնելու հասարակությանը։ Դա քաղաքացի է, որը անտարբեր չի անցնում բացասական երևույթների կողքով։

Ահա թե ինչպիսի հատկություններ ու հոգեբանություն պետք է դաստիարակեն կուսակցական կազմակերպություններն ու կոլեկտիվները հասարակության անդամների մեջ։

Հիմնականում կոլեկտիվների ուժերով են մեզանում հայտնաբերվում, դաստիարակվում կամ պատժվում այն մարդիկ, որոնք սխալ ճանապարհ են բռնել, կանգնել սոցիալիստական ապրելակերպի և կոմունիստական բարոյականության նորմերի խախտման ուղու վրա։

«Հայէլեկտրալույս» արտադրական միավորման էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվը, կուսակցական կազմակերպության գլխավորությամբ, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ, բանվորների ու ծառայողների լայն ներգրավմամբ, հետևողական աշխատանք է կատարում կարգապահության խախտումների, ամեն տեսակ իրավախախտումների դեմ, աշխատանքում ու կենցաղում կոլեկտիվի առանձին անդամների սխալ վարքագծի դեմ, սոցիալիստական սեփականության պահպանման համար մղվող պայքարի ուղղությամբ։ Վերջին հինգ-վեց տարում սոցիալիստական սեփականության հափշտակման դեպքեր չեն գրանցվել, մշտապես նվազում է իրավախախտումների, կոլեկտիվի առանձին անդամների կողմից աշխատանքային և կենցաղային վարքագծի նորմերի խախտումների քանակը։

Կուսակցական կազմակերպությունները, արհմիությունն ու կոմերիտմիությունը պետք է ամենուրեք ստեղծեն այնպիսի մթնոլորտ, որը ժամանակին ուղղի մեր ապրելակերպին անհարիր վարքագիծ ունեցող առանձին մարդկանց, ոչ մեկին թույլ չտա խախտելու սոցիալիստական ապրելակերպի սկզբունքներն ու նորմերը։ Այդպիսի, այո, հենց այդպիսի ուղիով մենք կհասնենք այն բանին, որ հանրապետությունը մաքրվի բացասական երևույթների մի բուռ կրողներից, այն մարդկանցից, ովքեր հաշվի չեն առնում մեր բարոյական և էթիկական սկզբունքները։

Ինչպես արդեն ասացինք, մեր աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացել է և կուսակցության ջանքերի շնորհիվ հետագայում կշարունակի մշտապես բարձրանալ։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ անհրաժեշտ է նյութական հնարավորությունների աճը մշտապես զուգորդել մարդկանց գաղափարա-բարոյական և կուլտուրական մակարդակի աճի հետ։ Այս մասին ասվեց զեկուցման մեջ։ Ես կուզենայի կանգ առնել քաղքենիական հոգեբանության դեմ պայքարն ուժեղացնելու կարևորության վրա, որ, ցավոք, դեռևս տարածում ունի մարդկանց որոշ մասի մեջ։

Քաղքենիությունը բազմադեմ է, կարող է տարբեր քղամիդ հագնել։ Բայց էությունը նույնն է՝ քաղքենին անտարբեր է դեպի հասարակական կյանքը, նա պարփակված է իր մանր-անձնական նեղ շահերի միկրոաշխարհում, աննպատակ մսխում է կյանքը։ Նյութական արժեքների ձեռքբերումը դարձնելով ինք-

նսնպատակ բան, առանձին մարդիկ հոգևոր արժեքները, իրենց հոգևոր պահանջմունքների բավարարումը մղում են երկրորդ պլան, երբեմն էլ առհասարակ դրանք ավելորդ են համարում։

Իհարկե, ոչ ոք դեմ չէ, որ մարդիկ թե՛ լավ հագնվեն, թե՛ իրենց բնակարանները կահավորեն ամեն անհրաժեշտ բանով, կուլտուրական ու հաճելի ժամանակ անցկացնեն։ Բայց այդ ամենը չպետք է խանգարի գլխավոր նպատակին՝ մարդու անձի համակողմանիորեն զարգացմանը, նրա հոգևոր աշխարհի հարստացմանը, հանգստին հատկացված ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործմանը։

Բայց երբ այդ ամենն ուռճացվում է, երբ կորչում է չափի զգացումը, երբ դառնում է ինքնանպատակ և աղճատում մարդու հոգեբանությունն ու նրա գործողությունները մղում դեպի անառողջ հուն, ապա դրա կողքով հասարակությունը չի կարող անտարբեր անցնել։

Այս առումով տեղին է մեջբերել Վ. Ի. Լենինի մտքերը։ Պայքարելով կոմունիստական իդեալի՝ որպես մարդու սոսկ նյութական բարեկեցության, նրա «կուշտ լինելու» վերաբերյալ գռեհիկ պատկերացումների դեմ, Վ. Ի. Լենինը, Լունաչարսկու վկայությամբ, նշել է այն մասին, որ մարդը «ապրում է, որպեսզի համակողմանիորեն, լայնությամբ ու խորությամբ զարգանա»։ «Սոցիալիստական տնտեսությունը այնպիսին է, որը տալիս է մարդու զարգացման առավել բարձր աստիճան։ Ազատ զարգացող մարդը որոնում է որքան կարելի է մեծածավալ և բազմազան երջանկություն, որը ներդաշնակորեն զուգորդվի մյուսների երջանկության հետ։ Մարդկային անհատը բարձր կուլտուրա է զարգացնում։ Սոցիալիզմին անցնելու հարկ չկա, եթե մարդիկ դրա շնորհիվ ավելի իմաստուն, ավելի գեղեցիկ, ավելի խելացի չդառնան»։

Ահա այսպես էր հարցը դնում Լենինը, ահա թե ինչին պետք է ուղղված լինի բարոյական դաստիարակության սուր ծայրը։

Ահա թե ինչու կուսակցական կազմակերպությունները պետք է վճռական կռիվ հայտարարեն քաղքենիական հոգեբանության վերապրուկներին, անհաշտ պայքար մղեն դրանց դեմ, հիշելով, որ միանգամից չարիքը արմատախիլ չես անի։ Այստեղ անհրաժեշտ է մշտական, ջանադիր դաստիարակչական աշխատանք, հարկավոր է հմտորեն պարզաբանել այդ հոգեբանության վնասակարությունը, մարդկանց սովորեցնել դրական օրինակներով։

Ոչ ոք չպետք է մի կողմ քաշվի մեր հասարակության կառուցման ու զարգացման բարդ խնդիրների կատարման համաժողովրդական պայքարից, ոչ ոք չպետք է կարծի, թե դա ուրիշների գործն է, թե դա իրեն չի վերաբերում, թե «իմ խրճիթը ծայրին է»։ Ամեն ոք իր տեղում պետք է անի ամեն ինչ՝ ներդնելու իր հնարավորությունների առավելագույնը, հասարակության յուրաքանչյուր անդամ պետք է պատասխանատվություն կրի ընդհանուր իրավիճակի համար։ Մենք այսպես պետք է դաստիարակենք մեր մարդկանց, մեր բոլոր կադրերին։

Աշխատավորների բարոյական դաստիարակության գործում առանձնահատուկ պատասխանատվություն է հատկացվում կոլեկտիվների կուսակցական կազմակերպություններին ու ղեկավարներին։

Մեր հետագա հաջողությունները մեծապես կախված են այդ ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների աշխատանքի հետևողականությունից և հարձակողական բնույթից։ Կուսակցության յուրաքանչյուր անդամ պետք է լինի կենսական ակտիվ դիրքերում կանգնած քաղաքացու, հասարակական պարտքի բարձր գիտակցությամբ օժտված մարդու օրինակ։ Կուսակցական կազմակերպությունն իրավունք չունի և չի կարող անցնել առանձին կոմունիստների պասիվության կողքով։

Կուսակցական կազմակերպությունները պետք է հմտորեն կոորդինացնեն արհմիութենական ու կոմերիտական, մյուս հասարակական կազմակերպությունների ջանքերը կոլեկտիվների անդամների բարոյական դաստիարակության ասպարեզում։ Կոլեկտիվի ամեն մի անդամի ոչ մի սխալ գործողություն չպետք է անուշադրության մատնվի։ Պարզաբանման, համոզման միջոցներով, նրանցից յուրաքանչյուրի հետ կատարվող փութաջան աշխատանքով անհրաժեշտ է օգնել մարդուն՝ ազատվելու վարքագծում թույլ տված սխալներից։



Ղեկավար աշխատողները պետք է կոլեկտիվներին դաստիարակեն գործին ազնվաբար, բարեխղճորեն ծառայելու, մեր իդեալներին հավատարիմ լինելու անձնական օրինակով։ Եթե ղեկավարն իր անձնական վարքագծով ու գործողություններով չի հանդիսանում բարոյապես բարձր, իր հասարակական պարտքը գիտակցող մարդու օրինակ, ապա կոլեկտիվների այդպիսի ղեկավարներից անհրաժեշտ է վճռականորեն ազատվել։

Միանգամայն ճիշտ է վարվել կուսակցության Կիրովականի քաղաքային կոմիտեն, աշխատանքից հանելով և կուսակցական խիստ տույժի ենթարկելով «Ավտոմատիկա» գործարանի դիրեկտոր Գ. Հարությունյանին, որը բռնել էր խախտումների, պաշտոնական դիրքը չարաշահելու ուղին։

Կուսակցական կոմիտեների, մինիստրությունների և գերատեսչությունների առջև մեծ խնդիրներ են դրված ստորին օղակներում՝ սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատանքային կոլեկտիվներում, գաղափարա-բարոյական դաստիարակության կատարելագործման ասպարեզում։

Բարձրացնել կոլեկտիվների դերը՝ նշանակում է հաշվի նստել նրանց կարծիքի և առաջարկությունների հետ, ժամանակին ունկնդրել աշխատանքային կոլեկտիվներում արտահայտված քննադատական դիտողություններին և սպառիչ միջոցներ ձեռնարկել բարձրացված հարցերի լուծման համար։

Անհրաժեշտ է կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, կոլեկտիվների ժողովները, արտադրական խորհրդակցությունները դարձնել գաղափարա-քաղաքական, բարոյական դաստիարակության իսկական դպրոցներ։

Բացառիկ մեծ նշանակություն տալով քննադատությանն ու ինքնաքննադատությանը աշխատավորների ճիշտ դաստիարակության գործում, կուսակցական կազմակերպությունները պետք է առանձնապես ուշադիր գտնվեն կոնկրետ և ճիշտ, գործարար քննադատության նկատմամբ, քննադատական այդ դիտողությունների կենսագործման նկատմամբ, որոնց նպատակն է օգնել թերությունների վերացմանը, գործերի վիճակի բարելավմանը։ Միաժամանակ անհրաժեշտ է վճռական հակահարված տալ քննադատամոլությանը, քննադատությանը «ընդհանրապես», որի նպատակը նեղ-անձնական շահն է, այն քննադատությանը, որը հիմնված է ոչ թե կոնկրետ ապացուցվող փաստերի վրա, այլ «ասում են, որ» հիմքի վրա, փողոցային քաղքենիական խոսակցությունների հիմքի վրա։

Գաղափարա-բարոյական դաստիարակության շահերը պահանջում են առանձնապես խստապահանջ գտնվել նրանց հանդեպ, ովքեր փորձում են չարախոսել, արատավորել, պարսավել, անվանարկել ազնվորեն և ակտիվորեն աշխատող այն կադրերին, ովքեր տակավին ոչ բավարար փորձառության և այլ պատճառներով իրենց աշխատանքում թույլ են տալիս աննշան սխալներ, վրիպումներ, ոչ կանխամտածված արարքներ։

Առանձին դեմագոգներ, անստորագիր նամակներ գրողներ և բոլոր հասցեներով և բոլոր ինստանցիաներին ուրիշների անունից դիմում գրելու սիրահարներ, մի կողմ նետելով գլխավորը՝ ղեկավար և մյուս կադրերի, երբեմն նաև ամբողջ կոլեկտիվների աշխատանքի ձեռքբերված դրական արդյունքները, կպչելով այդ հատուկենտ մանր փաստերին, ցեխ են շպրտում ոչ միայն ազնիվ աշխատողների վրա, այլև ամբողջ կոլեկտիվների նվաճումների վրա։ Այդպիսի մարդկանց հարկավոր է ի հայտ բերել, խստորեն պատժել, բացահայտ պատասխան պահանջել իրենց գործողությունների համար։ Այդ մարդիկ խանգարում են մեր գործին։

«Պրավդա» թերթը միանգամայն արդարացիորեն մեր հանրապետական կուսակցական կազմակերպության առանձին շրջանային ու քաղաքային կոմիտեների կշտամբեց այն բանի համար, որ նրանք արժանի կերպով չեն պատժել չարամիտ դեմագոգներին։

Կուսակցության Կենտկոմի բյուրոն վերջին ժամանակներս խստորեն պատժեց մի շարք դեմագոգների, անստորագիր նամակներ գրողների և այսուհետև էլ այդպես կվարվի։ Այդ ենք մենք պահանջում նաև կուսակցության

քաղկոմներից, շրջկոմներից, բոլոր կուսակցական և սովետական կազմակերպություններից։

Մյուս կողմից, կուսակցական կոմիտեներն ու սովետական, տնտեսական մարմինները պետք է ժամանակին լուծեն աշխատավորների դիմումներում ու ելույթներում ճիշտ կերպով բարձրացված հարցերը, ավելի օպերատիվ կերպով արձագանքեն անտնտեսվարության, իրավակարգի խախտումների, բյուրոկրատիզմի, աշխատավորների կարիքների ու պահանջների նկատմամբ անհոգի վերաբերմունքի փաստերի հետ կապված ահազանգերին։ Նրանք, ովքեր մեղավոր են նման գործերում, պետք է արդարացի պատիժ կրեն։ Դա կբարձրացնի աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված բնագավառում գործերի վիճակի համար և կնպաստի ամեն տեսակ խախտումների վերացմանը, կոլեկտիվներում կստեղծի բարոյա-հոգեբանական առողջ մթնոլորտ։

Այդ կապակցությամբ անհրաժեշտ է ուշադրությունը սրել առհասարակ բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի վրա և առանձնապես կառավարչական ապարատներում։ Սա այն դեպքն է, երբ իրարից տարբերվում են խոսքն ու գործը, երբ բյուրոկրատը մշտապես պահանջում է զգայուն և ուշադիր վերաբերմունք աշխատավորների կարիքների ու պահանջների նկատմամբ, իսկ գործում ոչ միայն անտարբերություն է դրսևորում, այլև անամոթաբար ոտնահարում է քաղաքացիների իրավունքները։ Այս տեսակետից առանձնահատուկ խնդիրներ են կանգնած աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործկոմների և մինիստրությունների ու գերատեսչությունների ապարատների սկզբնական կուսկազմակերպությունների առջև։

Օրինակ՝ աշխատավորների դեպուտատների Օրջոնիկիձեի շրջանային սովետի գործկոմի ապարատում բյուրոկրատական վերաբերմունք է ցուցաբերվում շրջանի աշխատավորների դիմումների նկատմամբ, իսկ սկզբնական կուսակցական կազմակերպությունը լիբերալիզմ է դրսևորում, խստորեն չի պահանջում ապարատի աշխատողներից։ Միանգամայն ճիշտ է վարվել կուսակցության քաղկոմի բյուրոն՝ օրերս շրջսովետի գործկոմի նախագահի պաշտոնից ազատելով ընկ. Վ. Ջուլհակյանին և նրա տեղակալ ընկ. Կ. Սոխակյանին՝ աշխատավորների նամակների և դիմումների նկատմամբ ցուցաբերած սխալ վերաբերմունքի համար։

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը Կենտկոմի հունվարյան պլենումից հետո, որի դրույթները լիովին հաստատեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը, անզիջում պայքար է մղում և կմղի բացասական երևույթների դեմ։ Վերջին երկու տարում այդ ասպարեզում որոշակի աշխատանք է կատարվել։ Ղեկավար մի շարք աշխատողներ, որոնք սկզբունքային պայքար չէին մղում այդ երևույթների դեմ, կուսակցական, վարչական տույժեր են ստացել, իսկ նրանցից ոմանք էլ՝ ազատվել գրաված պաշտոններից։

Կուսակցության Կենտկոմը բարձրացնում է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ՝ ղեկավարման մարմիններում, հիմնարկներում և կազմակերպություններում պատշաճ կարգ ու կանոն հաստատելու, կուսակցական և պետական կարգապահությունն ըստ ամենայնի բարձրացնելու համար մղվող պայքարում։

Կենտկոմի բյուրոն կուսակցական խիստ տույժ տվեց և գրաված պաշտոնից ազատեց Հանրապետության Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչության պետ ընկ. Ժ. Փյունիկյանին՝ սոցիալիստական սեփականության պահպանությունն ապահովելու պատշաճ միջոցներ չձեռնարկելու և գլխավոր վարչության սիստեմում ֆոնդային կարգապահությունը խախտելու համար։ Նույնանման արարքներ թույլ տալու համար գրաված պաշտոնից ազատված է և կուսակցական խիստ տույժի է ենթարկվել Հանրապետության առևտրի մինիստրի առաջին տեղակալ ընկ. Ս. Դավթյանը։

Երևանի քաղաքային կոմիտեն արդարացիորեն և խստորեն պատժեց



նրանց, ովքեր զանազան մեքենայություններով էին զբաղված հուղարկավորության ծառայություններում և Երքաղսովետի կոմունալ տնտեսության վարչության՝ նրանց խրախուսող ղեկավարներին։

Զանազան չարաշահումներ ու հափշտակումներ թույլ տված անձանց հայտնաբերելու և պատժելու ուղղությամբ ակտիվ աշխատանք են կատարում նաև կուսակցության Լենինականի, Կիրովականի քաղկոմները և կուսակցության մի շարք շրջանային կոմիտեներ։

Մենք այսօր մեկ անգամ ևս հայտարարում ենք, որ կուսակցական ու պետական կարգապահության ամեն մի խախտում, բացասական երևույթների վերացման պայքարում անսկզբունքայնության և հաշտվողականության ամեն մի դրսևորում խստագույնս կպատժվի։

Կենտկոմը բոլոր կուսակցական և սովետական մարմիններից պահանջում է է՛լ ավելի ակտիվացնել պայքարը մեր հասարակական հարստության հիմքերի հիմքը կազմող սոցիալիստական սեփականության պահպանման համար։ Անհրաժեշտ է ավելի արդյունավետ գործել իրենց պաշտոնական դիրքը չարաշահողների, հարմարվողների և բյուրոկրատների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր անտարբերություն են ցուցաբերում մեր բոլոր գործերում օրինակելի կարգ ու կանոն հաստատելու պայքարում։

Հանրապետության Մինիստրների սովետը պետք է ավելի գործուն միջոցներ ձեռնարկի, ավելի խստապահանջ գտնվի տնտեսական ղեկավարների նկատմամբ՝ հաշվառման և հաշվետվության, նյութական արժեքների ծախսումների նորմավորման, հանրապետության ձեռնարկությունների, մինիստրությունների և գերատեսչությունների գործունեության մեջ օրինակելի տնտեսական կարգ ու կանոն հաստատելու գործում։

Գաղափարա-բարոյական դաստիարակության աշխատանքը կուսակցական կազմակերպությունները պետք է կատարեն այնպես, որպեսզի հասարակության յուրաքանչյուր անդամ գործի մեր կուսակցության քաղաքականության ոգով, որպեսզի նա դառնա մեր կոմունիստական բարոյականությամբ տոգորված գլխավոր գործող անձը։

Ամփոփելով, կարելի է ասել, որ կուսակցական կազմակերպությունները պետք է ակտիվ աշխատանք կատարեն բարոյական դաստիարակության ուղղությամբ, այնպես, որ հասարակության յուրաքանչյուր անդամի գործողությունները բխեն անհատի և հասարակության շահերի միասնությունից, կոլեկտիվի կյանքի շահերից, սոցիալիստական համակեցության, սովետական ապրելակերպի նորմերից ու կանոններից, բանական ձևավորված պահանջմունքներից, որպեսզի այդ գործողությունները հասարակականորեն ու քաղաքականապես ակտիվ գործողություններ լինեն և հիմնվեն կոմունիստական աշխարհայացքի և բարոյականության վրա։

Մի քանի խոսք ժողովրդական ավանդույթների մասին։ Մեր ժողովուրդը աշխատանքի, կուլտուրայի և կենցաղի դարավոր ավանդույթներ ունի։ Մեր ժողովրդի ճակատագրի պատմական հոլովույթում, նրա գոյատևմանը միշտ էլ օգնել են այդ առաջադիմական ավանդույթները՝ համառորեն աշխատելու, քարից իր հանապազօրյա հացը քամելու ավանդույթը, աշխատավոր մարդկանց միմյանց օգնության հասնելու ավանդույթը, ուրիշի աշխատանքին, մարդկային ձեռքերով կերտված նյութական ու հոգևոր արժեքներին լավ և հոգատար վերաբերմունք ցուցաբերելու ավանդույթը, հյուրընկալության ավանդույթը, տարիքով մեծ, աշխատասեր մարդկանց հարգելու ավանդույթը։ Պատահական չէ, անշուշտ, որ մեր ժողովրդի մեջ ամենահարգված կոչումը «վարպետ» կոչումն է, որը ժողովուրդը սիրով ու գորովանքով շնորհում է լավ քարտաշին ու շինարարին, հողագործին ու այգեգործին, առհասարակ աշխատանքի մարդուն, ինչպես նաև մտավորական մշակին։

Այդ ավանդույթները սովետական իշխանության տարիներին զարգացան և լցվեցին նոր սոցիալիստական բովանդակությամբ, հարստացան Սովետական Միության ժողովուրդների ավանդույթներով։ Երևան եկան նոր սոցիալիստական ավանդույթներ։ Ըստ ամենայնի պաշտպանելով ու զարգացնելով

առաջադիմական ժողովրդական ավանդույթները, մենք պետք է պայքար մղենք իրենց դարն ապրած, հետամնաց սովորույթների դեմ, որոնք մեզ ետ են քաշում, փաստորեն զցում են ժողովրդի ավանդույթների բարի համբավը: Անհրաժեշտ է մատչելի ու համոզիչ բացատրական աշխատանքով հետևողականորեն մեր կյանքից դուրս մղել նաև կենցաղային միանգամայն ավելորդ ու հետամնաց ծեսերը:

Ուզում եմ ուշադրություն հրավիրել մարդու աշխատանքը գնահատել կարողանալու և կուլտուրա ցուցաբերելու վրա: Դա առաջին հերթին վերաբերմունքն է դեպի ժողովրդական բարիքը, վերաբերմունքը դեպի քաղաքի, ավանի մաքրությունը, մի խոսքով, վերաբերմունքը դեպի մարդու ջանքերով, նրա ձեռքով ստեղծված պտուղները: Դժբախտաբար, այդ լավ ավանդույթը ոչ բոլորն են հարգում ու պահպանում: Երբեմն առանձին մարդիկ անպատասխանատու ձևով փչացնում, աղտոտում, ոչնչացնում են այն, ինչ ստեղծված է մյուսի կողմից և պատկանում է հասարակությանը, բայց դրա համար արժանի հակահարված չեն ստանում: Նայեցեք մի շարք պատմական հուշարձանների շրջակա տերիտորիաներին կամ այն վայրերին, որտեղ բնության գրկում իրենց հանգիստն են վայելել առանձին մարդիկ. ամեն ինչ կեղտոտված է, ապականված: Այդ մարդկանց մոտ միանգամայն այլ վերաբերմունք կա դեպի այն, ինչը «իմը չէ»: Սա պարապ խոսակցություն չէ, ընկերներ:

Մեր ժողովուրդը միշտ էլ հոգատար վերաբերմունք է ցուցաբերել դեպի հացը, դեպի այն ամենը, ինչ ստեղծված է մարդու աշխատանքով: Մինչդեռ այդ բարի ավանդույթը երբեմն խախտում են ցուցամոլական, չափը կորցրած շռայլ կերուխումի սիրահարները: Փչացնում, դուրս են շպրտում մեծ քանակությամբ սննդամթերք, այդ թվում և հաց: Բարիքի նկատմամբ հոգատար վերաբերմունքը ոչ թե ժլատություն է, այլ խելացի խնայողություն: Որքան հարստանում է մեր հասարակությունը, այնքան մենք պետք է խելացի, ռացիոնալ գտնվենք սպառման մեջ, այնքան կուլտուրական ձևով պետք է կազմակերպենք մեր կենցաղը:

Ստեղծված բարիքի նկատմամբ հարգանքի ձևավորումը, ժողովրդական այս ավանդույթի ամրապնդումը մեր դաստիարակչական աշխատանքի կարևոր բնագավառն է:

Աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակության աշխատանքի կոմպլեքսում կարևոր տեղ է գրավում հանրապետության վարչական մարմինների գործունեությունը: Կուսակցության XXV համագումարում իրավացիորեն նշվեց, որ անհրաժեշտ է կիրառել օրենքի ուժը դրամաշորթության, մասնավոր-սեփականատիրական միտումների, խուլիգանության, բյուրոկրատիզմի դեմ, այն ամենի դեմ մղվող պայքարում, ինչ հակասում է մեր հասարակարգի բուն էությանը: Այդ մարմինները գլխավորում են կոմունիստները, որոնք իրենց գործի մասնագետներ են, որոնց վրա հսկայական պատասխանատվություն է դրված այդ կարևորագույն բնագավառում տիրող իրավիճակի արմատական բարելավման համար: Հիշյալ մարմիններում գործում է նվիրված աշխատողների մի մեծ բանակ: Վարչական մարմինների աշխատանքում եղած դրականի, ինչպես նաև լուրջ թերությունների և կուսակցության արդի պահանջների լույսի տակ նրանց աշխատանքի արմատական բարելավման անհրաժեշտության մասին բավական լայնորեն ու հիմնավոր կերպով խոսվեց հանրապետության կուսակցական ակտիվի վերջերս տեղի ունեցած ժողովում: Կարծում եմ, որ կրկնելու անհրաժեշտություն չկա:

Պետք է ասել միայն, որ վարչական մարմինների ղեկավարները (Ն. Պատալով, Ս. Օսիպյան, Գ. Քոչարյան), նրանց բոլոր կոմունիստներն ու աշխատողները պետք է լուրջ եզրակացություն անեն Կենտկոմի օբյեկտիվ, խիստ ու գործարար քննադատությունից, հասնեն իրենց աշխատանքի մակարդակի արմատական բարելավման, մշտապես գտնվեն բացասական երևույթների դեմ մղվող պայքարի առաջին գծում, վճռականապես հրաժարվեն իրենց շարքերում տեղ գտած այն մարդկանցից, ովքեր խանգարում են մեր ընդհանուր գործին, արատավորում վարչական օրգանի աշխատողի անունը: Քննադատության



նպատակն է, որպեսզի վարչական մարմիններն իրենց՝ մարտականորեն կազմակերպված և բարձր արդյունավետ աշխատանքով ըստ ամենայնի նպաստեն աշխատավորների բարոյական դաստիարակության գործին:

Հենց այդ նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, վարչական մարմիններին պաշտպանելով արատավորված մարդկանց դիտումնավոր հարձակումներից ու չարամիտ պարսավումից, այսուհետ ևս օբյեկտիվորեն ու գործնականորեն խստապահանջ կլինի այդ մարմինների, նրանց աշխատողների նկատմամբ:

Բացասական երևույթների կրողները, սոցիալիստական օրինականության խախտողները պետության ու սովետական հասարակությանը ոչ միայն նյութական, այլև հսկայական բարոյա-քաղաքական վնաս են հասցնում, նրանք այլասերող ազդեցություն են գործում մարդկանց վրա, խանգարում և վնասում են գաղափարա-բարոյական դաստիարակության գործը: Ուստի վարչական մարմինները, կատարելով իրենց պետական ֆունկցիաները, միաժամանակ մասնակցում են նաև բնակչության գաղափարա-բարոյական դաստիարակության բազմաբարդ պրոցեսին:

Ամենից առաջ պետք է ասել, որ աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակության գործում մեր ձեռք բերած դրականի մեջ իրենց որոշակի բաժինն ունեն նաև վարչական մարմինները: Դա անտարակույս է: Բայց ակնառու է նաև այն, որ այդ աշխատանքում թույլ տրվող թերությունների և վրիպումների մեջ որոշակի մեղք է ընկնում նաև այդ մարմինների, նրանց աշխատողների վրա:

Եկեք տանք մի ընդհանուր և գործնական հարց: Արդյոք սոցիալիստական օրինականության և իրավակարգի խախտողներից յուրաքանչյուրի (սկսած մանր խուլիգանից՝ վերջացրած սոցիալիստական սեփականության հափշտակիչներով) գիտակցությունից դուրս մղվա՞ծ է այն հույսը, որ թույլ տալով հանցանք, կամ նույնիսկ բռնվելով հանցանքի կամ զանցանքի մեջ, նրանք այս կամ այն կերպ կարող են խուսափել վարչական կամ քրեական պատասխանատվության ենթարկվելուց: Ըստ իս, դուրս չի մղված: Կան հանցագործներ, որոնք դեռևս փրկության հույս են տածում և մի շարք դեպքերում՝ ոչ առանց հիմքի: Իսկ ինչո՞ւ: Պատճառները շատ են: Կանգ առնենք դրանցից մի քանիսի վրա:

Բանն այն է, որ հանցագործությունների և հատկապես հանրային ունեցվածքի հափշտակումների բացահայտման ժամանակ վարչական օրգանների առանձին աշխատողների ցածր որակավորման և քաղաքական տհասության հետևանքով բոլոր հանցագործները չէ, որ մերկացվում են: Հետևապես վարչական մարմինների դաստիարակչական արդյունավետության բարձրացումը զգալիորեն պայմանավորված է այն բանով, թե նրանք ինչպիսի հետևողականությամբ կբացահայտեն այս կամ այն հանցագործության ամբողջ շղթան, կմերկացնեն և խստագույնս կպատժեն նախ և առաջ գլխավոր մեղավորներին:

Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, իրավախախտողների պատասխանատվությունից խուսափելու գործին նպաստում է նաև այն, որ մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների առանձին անբարեխիղճ աշխատողներ կատարված հանցագործությունների մասին քննչական մարմիններին նյութեր ուղարկելիս հաճախ դրանք որակյալ մակարդակով չեն կազմում, դրանով իսկ դժվարացնելով հանցագործությունների փաստերի հետաքննությունը և քրեական գործի հարուցումը:

Մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկավարները կատարողներից խիստ պատասխան չեն պահանջում նման յուրաքանչյուր փաստի համար, նրանց չեն պատժում:

Մյուս պատճառն այն է, որ հանցագործների պատասխանատվությունից խուսափելուն նպաստում է առանձին քաղաքացիների պասիվությունը հանցագործի մերկացման գործում, իսկ հաճախ էլ նրա քողածածկումը: Քիչ չեն փաստերը, երբ քաղաքացիները, հավաստի ցուցմունքներ տալով, որոնք հիմք են ծառայում հանցագործներին քրեական պատասխանատվության ենթարկե-

լու համար, հետագայում, քննության ընթացքում հրաժարվում են դրանցից։ Իսկ վարչական մարմինների աշխատողները, ձևականորեն կառչելով օրենքի տառին, կարճում են գործը։

Հարց է ծագում՝ ինչո՞ւ է թույլ տրվում, որ անբարեխիղճ առանձին քաղաքացիներ քողածածկեն հանցագործներին, ինչո՞ւ է այս ամենը մնում վարչական օրգանների գործերում ու արխիվներում և չի հրապարակվում, ինչո՞ւ նման երևույթների շուրջը սկզբնական կուսակցական ու հասարակական կազմակերպությունների, մամուլի միջոցով չի ստեղծվում համընդհանուր անհանդուրժողության մթնոլորտ, և, վերջապես, ինչո՞ւ նրանց նկատմամբ չեն կիրառվում գործող օրենքները։ Չէ՞ որ դա կնպաստի մարդկանց դաստիարակությանը։

Վարչական մարմինների խնդիրն է՝ գործնական միջոցներով, աշխատանքի արմատական վերակառուցմամբ ստեղծել այնպիսի իրադրություն, որի ժամանակ սոցիալիստական օրինականության և իրավակարգի խախտողների մեջ կասկածի ստվեր անգամ չմնա, թե իրենք կարող են կատարած չարագործությունների համար խուսափել արդարացի հատուցումից։ Ահա այդ ժամանակ էլ խախտումների քանակը նվազագույնի կհասնի, իսկ բարոյական դաստիարակության գործին վարչական մարմինների մասնակցության աստիճանը կհասնի առավելագույնի։

Այս կարևոր խնդիրը դնելով վարչական մարմինների առջև, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը շատ խստապահանջ կերպով կհետևի նրա հետևողական և անշեղ իրականացմանը։

Վարչական մարմինների աշխատակիցների, հատկապես միջին և ստորին օղակների աշխատողների դաստիարակության հարցերը ամենից առաջ պետք է գտնվեն վարչական մարմինների ղեկավարների, նրանց կուսակցական կազմակերպությունների, կուսակցության շրջկոմների և քաղկոմների սևեռուն ուշադրության կենտրոնում։ Հարկավոր է մշտապես նկատի ունենալ, որ ամեն մի վարչական աշխատողի վարքագծում, աշխատանքում և նրա ամբողջ կերպարի մեջ նույնիսկ ամենաչնչին աղավաղումը, անկախ նրա գրաված պոստից ու դիրքից, հսկայական վնաս է հասցնում պետական իշխանության հեղինակությանը և ընդհանուր գործին, այդ թվում նաև աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակությանը։

Հարկավոր է ասել, որ կատարելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ցուցումները, հանրապետության վարչական մարմինները 1975—1976 թվականներին ուժեղացրել են իրենց կոլեկտիվներում տարվող դաստիարակչական աշխատանքը։ Վճռական միջոցներ ձեռնարկվեցին դիմակայելու և խստագույնս պատժելու այն աշխատողներին, որոնք բռնել էին իրենց պաշտոնական պարտքը խախտելու ուղին, թույլ էին տալիս հանցավոր արարքներ։ Նման մարդիկ ստվեր են գցում վարչական մարմինների կոլեկտիվների վրա, կոլեկտիվների, որոնք նվիրված ու ազնվորեն, բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները։

Վարչական մարմինների գործունեության վրա ես համեմատաբար հանգամանալից կանգ առա։ Եվ դա այն պատճառով, որ բարոյական դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքը պետք է մշտապես գտնվի նրանց ուշադրության կենտրոնում։ Կասկած չի կարող լինել, որ վարչական աշխատողների բանակը պատվով կկատարի կուսակցության կողմից իր առջև դրված խնդիրները։

Կոմունիստական բարոյականության հակոտնյաների վերացումը, գիտակցական բարձր կարգապահության արմատավորման պայքարը պետք է ուղեկցվեն մասսաների շրջանում տարվող դաստիարակչական մեծ աշխատանքով, մեր տրամադրության տակ եղած միջոցների և մեթոդների կիրառումով։ Այդ աշխատանքը պահանջում է համառություն, հետևողականություն և ժամանակ։

Սա մենք ասում ենք հանրապետության աշխատողների քաղաքական կողմնորոշման համար, որովհետև բացասական երևույթների կրողներն ամեն



միջոցներով փորձում են սասանել հավատը դրական տեղաշարժերի հասնելու հնարավորության հանդեպ, նրանց նկատմամբ հաղթանակի հասնելու հանդեպ։ Օբյեկտիվորեն նմաններին օգնում են նրանք, ովքեր միամտորեն կարծում են, թե այդ մարտը կարելի է շահել մի շարժումով և տեղի-անտեղի նվնվում են, թե այդ ինչպե՞ս է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումում ասացին, թե կռիվ է հայտարարվում բացասական երևույթներին, բայց, այնուամենայնիվ, այդպիսիք կան։ Ընդ որում իրենք նախաձեռնություն և կոնկրետ մասնակցություն չեն ցուցաբերում այդ պայքարին։

Մենք պետք է բացեիբաց ասենք բոլորին, որ պայքարի ուղղությունը ճիշտ է ընտրված և այդ կուրսից մենք չենք նահանջի։ Այսօր խոսքը պետք է վերաբերի այդ տևական աշխատանքի ու պայքարի արդյունավետության հետագա բարձրացմանը, իրոք մասսայական պայքար կազմակերպելուն, այդ պայքարի մեջ հանրապետության բոլոր աշխատավորներին ներգրավելուն։ Այսօր խոսքը պետք է վերաբերի առավել սուր տեղամասերում այդ պայքարը կենտրոնացնելուն։ Պայքարել ընդհանրապես՝ նշանակում է գործնականում չպայքարել։ Անհրաժեշտ է կազմակերպել կոնկրետ, հետևողական պայքար։

Բացասական երևույթների դեմ մղվող պայքարում կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները պետք է լիակատար կերպով օգտագործեն և՛ աշխատավորական կոլեկտիվի կարծիքը, և՛ մամուլի քննադատական խոսքը, և՛ համոզման մեթոդները, և՛ օրենքի ուժը, մեր տրամադրության տակ եղած բոլոր միջոցները։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, աշխատավորության գաղափարա-բարոյական դաստիարակության հարցերի վերաբերյալ համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի կողմից արված տեսական դրույթների ու գործնական հետևությունների, սկզբունքային ցուցումների հաջող ու հետևողական կատարման գործում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ներկա պլենումը կոչված է լուրջ դեր խաղալու։

Պլենումում Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Դալլաքյանի զեկուցման մեջ և ելույթներում արծարծվեց ու քննարկվեց աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակության հարցերի լայն շրջանակ։ Օբյեկտիվորեն ցույց տրվեցին այդ աշխատանքում մեր ունեցած հաջողությունները, սկզբունքայնորեն բացահայտվեցին մեր թերությունները, չլուծված հարցերը, արժեքավոր շատ մտքեր ու գործնական առաջարկություններ արվեցին աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակության գործը մեր կուսակցության XXV համագումարի որոշումների լույսի ներքո բարելավելու և կատարելագործելու ուղղությամբ։ Դրանք հաշվի կառնվեն պլենումի բանաձևում և հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարական աշխատանքի հեռանկարային պլանում, որ ներկայացված է պլենումի քննարկմանը։

Գաղափարա-բարոյական դաստիարակության մեծ ու ծավալուն աշխատանքի հաջող իրականացում նշանակում է օգնել յուրաքանչյուր կոմունիստի, հանրապետության բոլոր աշխատավորներին՝ տիրապետելու ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի՝ «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցման և համագումարի մյուս փաստաթղթերի գաղափարա-տեսական հարստությանը, փաստաթղթեր, որոնք խարսխվում են լենինյան անմահ ժառանգության վրա, ներթափանցված են լենինյան մեծ ու կենարար գաղափարներով, ներկայացնում են մեր կուսակցության քաղաքական վիթխարի փորձի ընդհանրացումը, նոր ավանդ են հանդիսանում գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի մեջ։ Դա նշանակում է օգնել յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական քաղաքացու ստացած գիտելիքները գործողության ուղեցույց դարձնելու կուսակցության քաղաքականության, տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների իրականացման ասպարեզում։

Գաղափարա-բարոյական դաստիարակության պրոցեսի հսկայական մասշտաբները, լայն ու խոր բովանդակությունը պետք է զուգորդվեն աշխատանքի կատարման կազմակերպական մեծ թափի հետ։ Այդ պրոցեսը պետք է ակտիվորեն ու ներգործուն կերպով թափանցի յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ, յուրաքանչյուր կազմակերպություն, յուրաքանչյուր ընտանիք, յուրաքանչյուր մարդու կյանքի մեջ։

Ուստի այսօր մեր պլենումում մենք պետք է հստակորեն ու որոշակիորեն ասենք, որ աշխատավորների գաղափարա-բարոյական դաստիարակության գործը պետք է դառնա բոլոր կուսակցական, պետական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմինների, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, գիտական հիմնարկների, դպրոցների, բուհերի և մեր կենսագործունեության բոլոր ոլորտների յուրաքանչյուր օղակի կուսակցական կազմակերպությունների գործունեության անկապտելի և գլխավոր բաղկացուցիչ մասը։

Մեր հանրապետության ամբողջ կյանքը, Հայաստանի կուսակցական կազմակերպության և աշխատավորների բեղուն գործունեությունը, ինչպես որ մեր մեծ երկրում ամենուրեք, զարգանում են ՍՄԿԿ XXV համագումարի հզոր ներգործության տակ։ Հենց այդ ներգործության տակ ի հայտ եկավ աշխատավորների նոր, բարձր քաղաքական և աշխատանքային խանդավառությունը, որն ապահովում է հանրապետության և նրա կուսակցական կազմակերպության առջև կանգնած տնտեսական-քաղաքական խնդիրների հաջող կատարումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի ամբողջ ընթացքը համոզիչ կերպով վկայում է, որ հանրապետության բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը, բոլոր աշխատավորներն է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, իրենց արժանի ավանդը կներդնեն Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարի պատմական որոշումների կենսագործման պայքարում։

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԱՇԽԱՐՀԱՑԵՆ ԵՐԹՈՎ

ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ հարուստ է արժանահիշատակ հեղափոխական իրադարձություններով, որոնք էապես նպաստել են սոցիալական առաջընթացին։ Սակայն նրանցից ոչ մեկը հիմնովեր չի սասանել հին աշխարհի հիմքերը, աշխարհ, ուր հազարամյակներ ընչազուրկ զանգվածները տառապել են ճորտության ու կեղեքման մագիլներում։ Ինչ խոսք, սոցիալական պրոգրեսի խոշորագույն անցքերն ակներև նպաստել են հասարակության զարգացմանը։ Բայց այդ ամենը կատարվել է աշխատավորական զանգվածների անողոք կեղեքման, նրանց ազատագրական ձիգերի դաժան ճնշման պայմաններում։

Աշխատավոր մարդու, շահագործման դատապարտված միլիոնների ձայնը խրոխտ հնչեց, երբ պատմական թատերաբեմ բարձրացավ բանվոր դասակարգը, որն ի լուր աշխարհի հայտարարեց իր պատմական առաքելության նպատակը։ Այդ հզոր կոչը բանվոր դասակարգի, համայն աշխատավորության անունից 128 տարի առաջ հռչակեցին կոմունիստները, որոնց խոսքն ու գործը ի սկզբանե նոր աշխարհի կերտման ուրվագիծն էր, գալիքի փարոսը։ Այն պահին, երբ դասակարգային կռիվը Եվրոպայի արևմուտքում սուր բնույթ էր ստացել և սոցիալական մենամարտը գլխավորեցին երկինք գրոհող կոմունարները, Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսն իրենց հանճարի ուժով կռահեցին, որ կոմունայի երկրորդ մկրտության օրրանը լինելու է Ռուսաստանը, որի ընդերքում արդեն խմորվում էին սոցիալական նոր ցնցումներն իրենց անխուսափելի հետևանքներով։

Այո՛, պատմության ընթացքը ուղղագիծ չէ, և նրա մայրուղին տեղափոխվեց Ռուսաստան, որտեղ լույս աշխարհ եկավ աննախադեպ նոր հասարակարգ իրեն բնորոշ կառուցվածքով։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ, որի դերն ու նշանակությունը հասարակական կյանքի հետագա զարգացման գործում դժվար է գերագնահատել։

Նոր, սոցիալիստական աշխարհի ծնունդով կապիտալիզմը դադարեց համապարփակ սիստեմ լինելուց։ Ազգային-ազատագրական շարժումների ալիքը տարածվեց հողագնդի բոլոր մայրցամաքների վրա, արմատապես վերափոխելով սոցիալական ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի։

«Շուտով,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— մեկուկես տարի հետո, նշվելու է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։ Վեց տասնամյակը մարդու կյանքի միջին տևողությունից քիչ է։ Բայց այդ ժամանակամիջոցում մեր երկիրն անցել է ուղի, որը հարյուրամյակների է հավասար»։

Բանվորա-գյուղացիական առաջին սոցիալիստական պետությունն անցյալից ստացավ աղքատիկ ժառանգություն՝ պատերազմներից հյուծված ժողովրդական տնտեսության անասելի ցածր մակարդակ։ Երիտասարդ սոցիալիստական պետությունը շրջափակված էր կապիտալիստական աշխարհով, որը

ոսկ աշխարհագրական հասկացություն չէր։ Պատմության աղբանոցը նետված դասակարգային թշնամին ամեն կերպ ճգնում էր դիմադրել, խտրություն չդնելով միջոցների մեջ, փորձում էր քայքայել ու թուլացնել նորօգ կյանքի հիմքերը։ Հասարակական-քաղաքական ոլորտում աջ և «ձախ» օպորտունիստները դիմում էին ամեն քայլի՝ կուսակցությանը շեղելու լենինյան գլխավոր կուրսից։

Ստեղծված անբարենպաստ իրադրությունը բարդանում էր նաև նրանով, որ մենք նոր կյանքի կառուցման առաջամարտիկներն էինք։ Մեզ սովորեցնող չկար։ Մեզ հայտնի էր սոցիալիզմ տանող ճանապարհի ընդհանուր ուղղությունը։ Բնական է, որ մենք չէինք կարող իմանալ այն բոլոր պրոբլեմները, որոնք ի հայտ էին գալիս առաջընթացի ամեն մի փուլում։ Ավելին, կուսակցությունը չէր կարող ունենալ ծագող խնդիրների պատրաստի լուծումները։ Բուրժուազիան, նկատել է Վ. Ի. Լենինը, անցնելով իշխանության գլուխ, ստացավ «արդեն փորձված անձնակազմ, առաջուց նախապատրաստված ճանապարհ, արդեն վաղօրոք փորձարկված մեխանիզմներ», մինչ իշխանությունը նվաճած պրոլետարիատը չուներ «ոչ անձնակազմ, ոչ ճանապարհ, ընդհանրապես ոչինչ, որ առաջուց փորձարկված լիներ» (Երկեր, հ. 33, էջ 235)։

Այսպիսին էր իրավիճակը, երբ մենք ձեռնամուխ եղանք սոցիալիստական հասարակարգի կառուցմանը։ Այդ նվաճած բարձունքներից դժվար չէ տեսնել անցյալում տեղ գտած վրիպումներն ու սխալները։ Սակայն անցած ուղին օբյեկտիվորեն գնահատելու համար հարկավոր է միշտ հիշել, որ մեզ համար յուրաքանչյուր քայլը որոնում էր, ամեն մի բնագիծ նվաճում էր արտաքին ու ներքին թշնամիների դեմ մղվող համառ պայքարում։

Հասարակական կյանքի սոցիալիստական վերափոխումը հրամայաբար թելադրում էր կարճ ժամանակամիջոցում ստեղծել ժամանակակից խոշոր արդյունաբերություն։ Երկընտրանք չկար։ Ահա թե ինչու մեր գլխավոր խնդիրը դարձավ երկրի ինդուստրացումը։ Օգտագործելով սոցիալիստական հասարակարգի վիթխարի առավելությունները, կուսակցությունը նախապատերազմյան հնգամյակների տարիներին կարողացավ լուծել երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման արմատական պրոբլեմները, և Սովետական Միությունն արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալով, տեխնիկական հագեցվածությամբ հասավ Եվրոպայի զարգացած կապիտալիստական երկրների մակարդակին։

Սովետական կարգերի կենսունակությունն ու հզորությունը դաժան փորձության ենթարկվեցին Հայրենական մեծ պատերազմում, ֆաշիզմի դեմ մղած մահու և կենաց կռիվներում։ Պատերազմի տարիներին մի անգամ ևս ամբողջ ուժով դրսևորվեց կոմունիստական կուսակցության ուղղություն տվող դերը, որի ղեկավարությամբ մեր բազմազգ ժողովուրդը համաշխարհային պատմական հաղթանակ տարավ։ Պատերազմը հօդս ցնդեցրեց համաշխարհային իմպերիալիզմի սին հույսերը, սոցիալիստական հասարակարգի «կործանիչ» ներհակությունների վերաբերյալ։ ՍՍՀՄ ժողովուրդները միասնական շարքում հերոսաբար կռվեցին և անձնվիրաբար մաքառեցին հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, պարտության մատնելիս ֆաշիզմը, աշխարհին ցուցադրելով անօրինակ տոկունություն և արիության զարմանահրաշ սխրանքներ։ Մեծ Հայրենականում տարած հաղթանակը վառ կերպով ցույց տվեց սոցիալիստական հասարակական ու պետական կարգի առավելությունները, եղբայրացած ժողովուրդների անխախտ դաշինքի կենարար ուժը։ Այդ ահեղ ու ծանր պատերազմում սովետական մարդիկ ոչ միայն պաշտպանեցին մեծ Հոկտեմբերի սոցիալիստական նվաճումները, այլև համաշխարհային քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական բարբարոսությունից, դրանով իսկ մեծապես սատարեցին ժողովուրդների ազատագրական պայքարին, մահացու հարված հասցնելով իր դարն ապրած կապիտալիստական ապրելակերպին։

Այսօր Սովետական Միությունն առավել հզոր ու ծաղկուն երկիր է, քան երբևիցե։ Մենք հպարտ ենք մեր ստեղծած նոր, ամենակայուն, հարաճուն զարգացող հասարակարգով, որը հաստատեց սոցիալական արդարություն,



քաղաքակրթության արժույթները դարձրեց ողջ ժողովրդի սեփականությունը։ Մենք հպարտ ենք, որ մեր երկրի անցյալում ճնշված տասնյակ ազգեր և ազգություններ դարձել են իրոք իրավահավասար, ապրում են ժողովուրդների համերաշխ ընտանիքում, հաջողությամբ զարգացնում իրենց էկոնոմիկան և կուլտուրան։

Սովետական ժողովուրդը ոգեշնչված հարազատ կուսակցության XXV համագումարի պատմական որոշումներով, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 59-րդ տարելիցը դիմավորում է քաղաքական-հասարակական և ստեղծագործական աշխատանքի բարձր ակտիվության պայմաններում։

Կուսակցության բարձրագույն նպատակը ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումն է։ Տասներորդ հնգամյակում այդ վեհ խնդրի իրականացման հիմնական ուղիները հասարակական արտադրության դինամիկ և համամասնորեն զարգացումն է, արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության անընդհատ աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում արտադրանքի որակի ըստ ամենայնի բարելավումը։ Հեռանկարում, 1976—1980 թվականներին երկիրը ունենալու է մոտ երկու անգամ ավելի շատ նյութական ու ֆինանսական ռեսուրսներ, քան անցած տասնհինգ տարում։

Ընթացիկ հնգամյակը նոր փուլ է նշանավորում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ասպարեզում, կուսակցության երկարաժամկետ կուրսի իրականացման բնագավառում։ Այն նոր փուլ է նաև սոցիալիստական հասարակական հարաբերությունների, սովետական ապրելակերպի զարգացման, երկրի անվտանգության առավել ապահովման իմաստով։

Կուսակցությունը մշակել է սոցիալական ընդարձակ ծրագիր, ըստ որի նախատեսված է այս հնգամյակում բանվորների և ծառայողների աշխատավարձը բարձրացնել 16—18, հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները՝ 24—27 տոկոսով, սպառման հասարակական ֆոնդերի հաշվին վճարումներն ու արտոնությունները կավելանան 28—30 տոկոսով, կառուցվելու է 545—550 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Իրականացվում են խոշոր միջոցառումներ առողջապահության, ժողովրդական կրթության և կուլտուրայի հետագա զարգացման մարզերում։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը երկրի էկոնոմիկայի հզորության անշեղ մեծացումն է, արտադրաֆոնդերի ընդլայնումը և արմատական նորացումը, ծանր արդյունաբերության կայուն, հավասարակշռված աճի ապահովումը։ Տնտեսական ու սոցիալական բազմազան խնդիրների հաջող լուծման երաշխիքն աշխատանքի արտադրողականության արագ աճն է, ողջ հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը։ Տասներորդ հնգամյակի էությունն արտահայտված է կուսակցության մշակած խորիմաստ բանաձևում. Նոր հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ է։ «Որակի պրոբլեմը,— ասում է ընկեր Բրեժնևը,— մենք շատ լայն ենք հասկանում։ Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակն աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողություն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների ավելի լավ, է՛լ ավելի լրիվ բավարարումը։ Ահա թե ինչու արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը։ Այդ բանին պետք է մշտապես բևեռված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը»։

Մեր հզոր Միության կազմում բարգավաճում ու շենանում է Սովետական Հայաստանը՝ մեծ Հոկտեմբերի ծնունդը։ Հյուսիսից ճառագած արևը կյանք պարգևեց կործանման եզրին կանգնած հայ ժողովրդին, որին սպառնում էր պատմական թատերաբեմից անհետանալու վտանգը։ Այդ ի նկատի ուներ բա-

նստեղծը, երբ անհուն երկյուղով գրում էր՝ «Մի՞թե վերջին պոետն եմ ես, վերջին երգիչն իմ երկրի...»:

Հիսունվեց տարի է անցել այդ մղձավանջային օրերից, երբ մեր հինավուրց հողի արևելյան հատվածում ծածանվեց սովետների դրոշը: Այս իրողությունը լավ գիտեն մեր հանրապետության աշխատավորները: Սակայն պատմության փիլիսոփայությունը և կապիտալի աշխարհում այժմ էլ կեղեքվող ու հալածվող ժողովուրդների ճակատագիրն ստիպում են մեզ մշտապես հիշել մեր դառն անցյալը և մեր երախտագիտության խոսքն ուղղել կոմունիստական կուսակցությանը, սովետական կարգերին, ռուս ժողովրդին, այն կենսատու օգնության համար, որի շնորհիվ մեր ժողովուրդն ապրում է անամպ երկնքի տակ, վստահ նայելով ապագային:

Այսօր, Սովետական Հայաստանը բարձր ինդուստրիայի, զարգացած գյուղատնտեսության, ծաղկող գիտության ու կուլտուրայի սոցիալիստական հանրապետություն է: «Սովետական Հայաստանի պատմական փորձը,— ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 232):

Կենսագործելով կուսակցության ծրագրային դրույթները՝ հանրապետության աշխատավորները որոշակի հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր մարզերում: Բավական է ասել, որ անցած հնգամյակում հանրապետության ազգային եկամուտն աճել է 46 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 45, կապիտալ ներդրումներինը՝ 30 տոկոսով: Առաջանցիկ զարգացում է ունեցել սպառման ապրանքների արտադրությունը, որի աճման տեմպերը կազմել են 49,2 տոկոս: ՍՄԿԿ Կենտկոմի կոչով մտնելով իններորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար երկրով մեկ ծավալված մրցության մեջ, հանրապետության արտադրության հազարավոր ու հազարավոր առաջավորներ, հարյուրավոր աշխատանքային կոլեկտիվներ ցուցաբերեցին լավ կազմակերպվածության, բարձր արտադրողականության և բարձրորակ արտադրանքի, անձնվիրության, վեհ քաղաքացիականության և սովետական հայրենասիրության օրինակներ:

Հանրապետության աշխատավորները խանդավառությամբ ընդունեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի անձնական նախաձեռնությամբ ընդունված ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման մասին» պատմական որոշումը, որն իրավամբ դարձել է մեր գործունեության կոնկրետ ծրագիրը:

Հարաճուն վերելք է ապրում հանրապետության սոցիալիստական գյուղատնտեսությունը: Անցած հնգամյակում գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 736 միլիոն ռուբլի, մշակման են հանձնվել 49 հազար հեկտար նոր, ոռոգելի հողատարածություններ, ջրարբիացվել են 126 հազար հեկտար արոտավայր ու մարգագետին, յուրացվել են 7,6 հազար հեկտար նոր հողեր: Զգալիորեն աճել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, հնգամյակի ավարտական տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը գերազանցեց նախորդ բոլոր տարիների արտադրանքի մակարդակը: Ձեռք բերված նվաճումները վկայում են, թե ինչպիսի արդյունքների կարելի է հասնել՝ եղած հնարավորությունների ռացիոնալ օգտագործման, սոցիալիստական մրցության լայն ծավալման, կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության բարձրացման, պլանային առաջադրանքների կատարման համար գյուղի աշխատավորների մոբիլիզացման դեպքում: Այժմ հրատապ պրոբլեմ են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, դրա փոխադրումն արդի ինդուստրիալ հիմքի վրա:

Ընթացիկ հնգամյակում մեր առջև ծառացած են մեծ խնդիրներ: Այս



հնգամյակում արդյունաբերության արտադրության ծավալի աճը կկազմի 43—47 տոկոս, գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը կմեծանա 22—25 տոկոսով, մեծ չափով կզարգանան տրանսպորտն ու կապը: Զգալիորեն կաճի կապիտալ շինարարության ծավալը: Տասներորդ հնգամյակի բարդ խնդիրների կատարման ապահովումը հրամայաբար պահանջում է արմատապես բարելավել ժողովրդական տնտեսության ղեկավարումը, աշխատանքի ձևերն ու մեթոդները: Անհրաժեշտ է կառավարել գիտականորեն, համակարգված և կոմպլեքսայնորեն: Ամենուրեք պետք է տիրի երկաթյա կարգապահություն և խստապահանջություն:

Կուսակցության սոցիալական քաղաքականության բնագավառում ձեռք բերված նվաճումների վառ արտահայտություն է հանրապետության աշխատավորների նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը: Իններորդ հնգամյակի տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն աճել են 22,4 տոկոսով: Այդ ժամանակամիջոցում բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը բարձրացել է 12,8, ներառյալ լրացուցիչ վճարումներն ու արտոնությունները՝ 14,5 տոկոսով, և կազմում է 190 ռուբլի: Զգալիորեն ավելացան բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների կենսաթոշակների ու նպաստների նվազագույն չափերը, բարելավվեց բնակչության սոցիալական ապահովությունը: Միայն 1975 թվականին հանրապետության բնակչությանը վճարվել են 288 միլիոն ռուբլի կենսաթոշակ ու նպաստ, որը 37,7 տոկոսով ավելի է, քան 1970 թվականին: Սպառման հանրային ֆոնդերից հանրապետության բնակչության ստացած վճարումների ու արտոնությունների ընդհանուր գումարը, 1970 թվականի համեմատությամբ, աճեց 37 տոկոսով, ավելացել են բնակչության դրամական ավանդները խնայողական դրամարկղերում: Հանրապետության մանրածախ առևտրի ծավալը 1975 թվականին հասավ 1,8 միլիարդ ռուբլու և 1970 թվականի համեմատությամբ աճեց 42,6 տոկոսով:

Ակներև զարգացավ Հայաստանի առողջապահական ծավալուն սիստեմը: Շահագործման են հանձնվել նոր հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ և այլ բուժհիմնարկներ: Կատարվեց հիվանդանոցային մահճակալների հետագա մասնագիտացում: Ընդլայնվեց սանատորակուրորտային օբյեկտների ցանցը:

Կուսակցության ձեռնարկումների իրականացման գործում արժանի ավանդ ունեն հանրապետության գիտնականները, որոնց ստեղծագործական աշխատանքը մեծապես նպաստում է ժողովրդական տնտեսության զարգացմանը: Հայաստանում գիտական աշխատողների թիվը ներկայումս անցել է 16 հազարից, որից շուրջ 3 հազարը աշխատում է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի սիստեմում:

Հիմնականում կատարվեց երիտասարդության ընդհանուր և միջնակարգ կրթության անցումն ավարտելու՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով առաջադրված խնդիրը: Որոշ չափով ամրապնդվեց դպրոցի նյութատեխնիկական բազան: Այժմ հանրապետությունում գործում է 1.596 դպրոց, շուրջ 679 հազար սովորողներով և 42 հազար ուսուցիչներով: Բարձրացել է մանկավարժների աշխատավարձը: Անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն և հոգատարություն ցուցաբերել դպրոցի գործերի նկատմամբ, հասնել այն բանին, որ երիտասարդության կրթությունն ու դաստիարակությունը ծառայեն կոմունիստական համոզմունքների և բարոյականության ձևավորմանը:

Անհամեմատ զարգացել է մեր երիտասարդության պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունը: Ներկայումս պրոֆտեխնիկական ուսումնարաններում սովորում են ավելի քան 35 հազար տղաներ և աղջիկներ: Հույժ կարևոր խնդիր է՝ ավելացնել միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների թիվը, բարձրացնել սովորողների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքների մակարդակը, երիտասարդությանը հաղորդել բանվոր դասակարգի փառավոր ավանդույթները:

Հանրապետության 13 բուհերում և 63 տեխնիկումներում ուսանող երիտասարդությունն ստանում է խոր ու կայուն մասնագիտական գիտելիքներ,

ձևավորվում է նրա հասարակական-քաղաքական աշխարհայացքը։ Անհրաժեշտ է, որ ստացած գիտելիքները դառնան երիտասարդ մասնագետների համոզմունքները, քաղաքացիական կերպարի ձևավորման, վարքագծի ու գործերի հիմքը։

Նոր կյանքի հերոիկան պատշաճ արտացոլում է գտել սովետահայ գրականության ու արվեստի ստեղծագործություններում։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը ըստ արժանվույն են գնահատում գրողների, արվեստի բոլոր բնագավառների գործիչների ստեղծագործական աշխատանքը նոր մարդու հոգևոր կերպարի գեղարվեստական լիցքավորման գործում։ Ընդլայնվում են գրական-կուլտուրական կապերը եղբայրական մյուս հանրապետությունների հետ։ Մեր մշակույթի ականավոր երախտավորների հոբելյանների կատարումը վերածվում են համամիութենական տոնի, որը կուսակցության լենինյան ազգային քաղաքականության պերճախոս վկայությունն է։

1978 թվականին հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները մեծ հանդիսավորությամբ կնշեն Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու 150-ամյակը։ Պատմական այդ նշանավոր իրադարձությունը, որը շրջադարձային փուլ հանդիսացավ հայ ժողովրդի ճակատագրում, նրան փրկեց ֆիզիկական ոչնչացումից, ապահովեց նրա տնտեսական, քաղաքական, կուլտուրական հետագա զարգացման առաջընթացը, ամրապնդեց երկու ժողովուրդների դարավոր բարեկամական կապերը, մեր ժողովրդին լիակատար հնարավորություն ընձեռեց ակտիվորեն մասնակցելու Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարին։

«Մենք,— ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Հայկոմկուսի XXVI համագումարին տված ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— այդ նշանակալի հոբելյանը կնշենք որպես բարեկամության ու եղբայրության համաժողովրդական տոն, որպես հայ և ռուս ժողովուրդների անխախտ միասնության տոն, միասնություն, որը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական ընտանիքում մեր նոր մեծագործությունների ու հաղթանակների երաշխիքն է»։

Այս առումով անհրաժեշտ է մի անգամ ևս շեշտել, որ ՍՄԿԿ XXV համագումարը մեր կարևորագույն խնդիրը համարեց՝ աշխատավորական զանգվածների կոմունիստական գիտակցականության առավել բարձրացումը, սովետական մարդկանց կոմունիզմի կառուցման պատրաստակամությամբ տոգորումը, նոր հասարակարգի բարոյա-գեղագիտական վսեմ իդեալների ոգով նրանց դաստիարակումը։

Այս հարցերը, որոնք իրենց հրատապությամբ և կենսականությամբ դարձել են կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը, վերջերս քննարկվեցին ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում։ Ահա թե ինչու պլենումի նյութերն ու որոշումները բացառիկ կարևոր նշանակություն ունեն մեր մեծ առաջընթացի, նոր մարդու ձևավորման ու համակողմանի զարգացման համար։ Ուստի, մեր խնդիրն է՝ ամրապնդել այդ բնագավառում ձեռք բերած հաջողությունները, մշտապես կատարելագործել, հարստացնել աշխատավորների գաղափարա-քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության բովանդակությունը, ապահովել նրա փոխադարձ սերտ կապը սոցիալ-տնտեսական պրոբլեմների պրակտիկ լուծման հետ։

Ավարտին է մոտենում տասներորդ հնգամյակի առաջին տարին, արտադրական ձեռնարկություններից, շինարարական կազմակերպություններից, կոլտնտեսություններից ու սովխոզներից ստացվում են հաղորդումներ. առկա են բոլոր հիմքերն ընթացիկ տարվա պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Փաստերը կրկին անգամ համոզում են, որ հանրապետության աշխատավորները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» նշանաբանով, հաջողությամբ են կենսագործում հարազատ կուսակցության XXV համագումարի որոշումները։



Գոհունակությամբ ենք նշում, որ մեր մեծ հայրենիքի՝ Սովետական Միության միջազգային դրությունն այժմ կայուն է, քան երբևէ։ Մեր ժողովուրդն արդեն չորրորդ տասնամյակն է, ինչ ապրում է խաղաղության պայմաններում։ Լայնես ամրապնդվել են համաշխարհային սոցիալիզմի դիրքերը։ Սոցիալիստական համագործակցության երկրները ցուցադրում են նոր հասարակարգի անսպառ ստեղծագործական ուժերը, իրենց արմատական առավելությունները՝ կապիտալիստական հասարակարգի նկատմամբ։ Մասնավոր սեփականատիրական աշխարհին հյուծում են անբուժելի խոցերը՝ մշտապես խորացող ընդհանուր ճգնաժամը, գործազրկությունը, ինֆլյացիան։ Կապիտալի երկրներում ուժեղանում է աշխատավորների պայքարն իրենց իրավունքների համար, մոնոպոլիաների ճնշման դեմ։ Ժողովրդական զանգվածների վրա առավել ներգործուն է դարձել կոմունիստական կուսակցությունների ազդեցությունը։ Ազգային-ազատագրական շարժման հզոր ալիքը նոր հորիզոններ է բացում անկախություն նվաճած երկրների առջև, ընդլայնվել է հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժման շառավիղը։

Կուսակցության XXV համագումարը միջազգային ասպարեզում սահմանեց նոր խնդիրներ, որոնք ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի օրգանական շարունակությունը և զարգացումն են։ Լարվածության թուլացումն այժմ առաջատար տենդենց է միջազգային հարաբերություններում։ Առաջիկայում ևս Սովետական Միության արտաքին-քաղաքական կուրսը ուղղված կլինի սոցիալիզմի եղբայրական երկրների, մյուս խաղաղասեր պետությունների հետ այդ ծրագրի իրականացման նպատակին։ Հոկտեմբերի երկիրը մոլորակի ողջ ժողովուրդների աչքում եղել ու մնում է որպես խաղաղության հուսալի պատվար։

Կուսակցության հետևողական և հաստատուն արտաքին-քաղաքական, խաղաղասիրական կուրսը մեկ անգամ ևս շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում՝ ընկ. Լ. Ի. Բրեժնևի արտասանած բովանդակալից ճառում։

Սովետական սոցիալիստական հասարակարգը հասուն սոցիալիզմի մարմնացումն է, մեծ Հոկտեմբերի ծնունդը։ Հանրագումարի բերելով մեր պատմական հասումները, անվարան կարող ենք ասել. մենք ստեղծել ենք աննախադեպ հասարակարգ։ Այն անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է։

Իրոք, Հոկտեմբերից է սկսվում մարդկության իսկական պատմությունը, որի հաղթական դրոշով մեր հարազատ կուսակցությունը նորանոր բնագծեր է նվաճում կոմունիզմի համար մղվող պայքարում։

# ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ

Վ. ԲԵԼՅԱՆՈՎ

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐՈՒՄ և որոշումներում մեծ տեղ են գրավում տնտեսական քաղաքականության հարցերը։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։ Էկոնոմիկան կոմունիզմի համար մղվող պայքարի վճռական ոլորտն է։ Մեր հայրենիքի բարգավաճման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման հիմքը և աղբյուրը ժողովրդական տնտեսության զարգացման հաջողություններն են։ ՍՍՀՄ-ի, սոցիալիստական համագործակցության երկրների տնտեսական հզորության ամրապնդումը արտաքին քաղաքականության մեջ, խաղաղության համար, բոլոր երկրների ու ժողովուրդների անվտանգության և փոխշահավետ համագործակցության համար մղվող պայքարում նոր նվաճումների կարևորագույն պայմանն է։*

*Կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ընդհանրացված են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման համար սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի արդյունքները, սահմանված է կուսակցության տնտեսական ստրատեգիան զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում, համակողմանիորեն վերլուծված են տասներորդ հնգամյակի առանձնահատկություններն ու արդի փուլում սովետական էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմները։*

*Այստեղ քննարկվում են ՍՄԿԿ տնտեսական ստրատեգիայի էությունը, նրա առանձնահատկությունները երկրի զարգացման արդի փուլում, տասներորդ հնգամյակի տեղը կուսակցության քաղաքականության տևական նպատակների իրականացման գործում։*

◆

«Կոմունիստական կուսակցության գործունեության մեջ հիմնականը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հասարակության զարգացման գլխավոր հեռանկարի, քաղաքական ճիշտ գծի մշակումն է, աշխատավորների կազմակերպումը այդ գիծը կենսագործելու նպատակով»։

Մեր կուսակցության գործունեության հիմնական նպատակը, որը բխում է սոցիալիզմի և կոմունիզմի մասին մարքս-լենինյան ուսմունքից և արտահայտում է սոցիալական հեղափոխության վերջնական նպատակները, կոմունիստական հասարակարգի կառուցումն է, որի նշանաբանն է՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»։ Այս ընդհանուր ստրատեգիական գիծը կոնկրետացված է ՍՄԿԿ-ի ծրագրային



խնդիրներում, որոնց թվում գլխավորը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, հասարակական հարաբերությունների կատարելագործումը, նոր մարդու ձևավորումը։

Միաժամանակ յուրաքանչյուր պատմական նոր փուլ չի կարող իր առանձնահատկությունները չունենալ արտադրաուժերի և հասարակական հարաբերությունների զարգացման օբյեկտիվ պայմանների, արտաքին քաղաքական իրադրության առումով։ Այդ պատճառով կոմունիստական կուսակցությունը՝ ելնելով մարքսիզմ-լենինիզմի տեսությունից, զարգացման արտաքին ու ներքին պայմանների գիտական վերլուծությունից, հենվելով ձեռք բերված արդյունքների ընդհանրացման, սովետական հասարակության առաջընթացի օրինաչափությունների խոր ըմբռնման վրա, մշակում է յուրաքանչյուր փուլի առանձնահատկություններին համապատասխանող ստրատեգիական գիծ։

Քանի որ ՍՄԿԿ ներքին քաղաքականության մեջ առաջնակարգը երկրի տնտեսական զարգացման պրոբլեմներն են, ուստի կուսակցության գործունեության գլխավոր բովանդակությունը սոցիալիստական հասարակարգի ձևավորման ու զարգացման բոլոր փուլերում տնտեսական քաղաքականության մշակումն ու կենսագործումն են։ Սոցիալիստական էկոնոմիկայի անչափ հարուստ հնարավորությունները, դրա անվիճելի առավելությունները չեն իրականացվում ինքնաբերաբար։ Այն ամենը, ինչ մենք ձեռք ենք բերել, մեր ժողովրդի հսկայական ջանքերի, սոցիալիզմ և կոմունիզմ կառուցողների մի քանի սերունդների աշխատանքի, կոմունիստական կուսակցության իմաստուն ու հեռատես քաղաքականության, նրա տեսական, քաղաքական և կազմակերպչական անդուլ գործունեության արդյունքն են։

Մեր հասարակության զարգացման յուրաքանչյուր փուլի համար կոմունիստական կուսակցությունը սահմանում է դրան համապատասխանող տնտեսական ստրատեգիա։ Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի համար մղված պայքարի ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական ստրատեգիայի սահմանման գործում ակնառու է Վ. Ի. Լենինի դերը։ Նրա Սովետական իշխանության հերթական խնդիրները, Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում աշխատություններում, վերջին նամակներում և հոդվածներում համակողմանիորեն մշակված է ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման պլանը։ Կուսակցությունն այդ պլանը զարգացրել ու կոնկրետացրել է երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության մեջ, սոցիալիստական կուլտուրական հեղափոխության ծրագրում, նշանավոր ԳՕԷԼՌՕ-ի, առաջին հնգամյա պլաններում։ Լենինյան գաղափարները ՍՄԿԿ-ի արդի քաղաքականության հիմքն են։ Մեր կուսակցությունը տնտեսական ստրատեգիայի մշակման ու իրականացման փորձ է կուտակել պատմական այնպիսի բարդ պայմաններում, ինչպիսիք են քաղաքացիական, Հայրենական մեծ պատերազմների տարիները, սովետական ժողտնտեսության հետպատերազմյան վերականգնման ու զարգացման ժամանակաշրջանը։

Լենինյան կուսակցության պատմական փորձը անգնահատելի հարստություն է։ Մեր երկրի կոմունիստները, սոցիալիստական մյուս երկրները, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները՝ հաշվի առնելով կոնկրետ պատմական պայմաններն ու իրադրությունը, ստեղծագործաբար են օգտագործում այն։

Կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի մշակման գործում մեծ ավանդ է ներդրել ՍՄԿԿ XXIV համագումարը։ Զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում այն առաջ է քաշել տնտեսական քաղաքականության արմատական հարցերի սկզբունքային դրույթները։

XXV համագումարը դրանք զարգացրեց ու կոնկրետացրեց նոր հնգամյակի և ավելի տևական հեռանկարի համար։ Ժամանակակից տնտեսական ստրատեգիան մարմնավորում է կուսակցության տեսական և քաղաքական գործունեության բազմակողմանի փորձը, ՍՍՀՄ-ում աստիճանաբար կոմունիստականի

վերաճող զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման փաստից բխող հետևությունների ու ընդհանրացումները։

Ժամանակակից տնտեսական ստրատեգիան որոշում է կուսակցության տնտեսական քաղաքականության տեական կողմնորոշումը։ Տնտեսական շինարարության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի սկզբունքային դրույթներում հաշվի են առնված մեր հասարակության զարգացման տեական ժամանակաշրջանի խնդիրները։ Կուսակցության քաղաքականության նպատակների տեական բնույթը պայմանավորված է նախ և առաջ այն բանով, որ, արդի զարգացման խոշորագույն պրոբլեմները լուծելու համար, պահանջվում է, որպես կանոն, ոչ քիչ ժամանակ։ Տնտեսավարության ընթացիկ հարցերն այսօր չի կարելի առաջադրել ու լուծել առանց հնարավորին չափ ապագայի մեջ ներթափանցելու, առանց խորապես ըմբռնելու այսօր ընդունվող որոշումների սոցիալ-տնտեսական հետևանքները, տնտեսությունը վարելու ժամանակակից պրակտիկան։

Մշակելով տնտեսական ստրատեգիան, կուսակցությունը ելնում է զարգացած սոցիալիստական հասարակարգի օրինաչափությունների, ՍՍՀՄ տնտեսական զարգացման արդի փուլի առանձնահատկությունների խոր վերլուծությունից։

Այդ առանձնահատկություններից ամենից ավելի կարևորներն են ժողովրդական տնտեսության միանգամայն նոր մասշտաբները։ Հնգամյակից հնգամյակ, տարեցտարի մեր ժողովուրդը հզորացնում է էկոնոմիկան։ Ժողովրդի անձնվեր աշխատանքով այժմ ստեղծվել է տնտեսական վիթխարի պոտենցիալ, որի հիմքն են բազմաճյուղ ինդուստրիան և սոցիալիստական խոշոր գյուղատնտեսությունը, առաջավոր գիտությունը, բանվորների ու մասնագետների որակյալ կադրերը։

Մեր էկոնոմիկայի որակական նոր մասշտաբների մասին կարելի է դատել թեկուզ այն փաստից, որ 1975 թ. երկրի ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են երկու անգամ ավելի շատ միջոցներ, քան նախապատերազմյան բոլոր տարիներին։ Տասներորդ հնգամյակում երկրի ժողտնտեսության զարգացմանը կհատկացվի 630 *մլրդ* ռուբլի, որը գրեթե հավասար է սովետական իշխանության առաջին 50 տարիների կապիտալ ներդրումներին։ Մեր հնարավորություններն այնքան են աճել, որ մենք կարող ենք հնգամյա աշխատանքի ծավալը համեմատել կեսդարյա գործունեության արդյունքների հետ։ Իհարկե, դա նշանակում է նաև պատասխանատվության բարձրացում նման վիթխարի ռեսուրսների խելացի ու արդյունավետ օգտագործման համար։

ՍՍՀՄ ժողտնտեսությունն այժմ ընդգրկում է ինքնուրույն հաշվեկշիռ ունեցող 48 հազար արդյունաբերական ձեռնարկություններ, 2,3 հազար արտադրական և գիտա-արտադրական միավորումներ, 18,1 հազար սովխոզներ, 29,1 հազար կոլտնտեսություններ, 6,3 հազար միջտնտեսական ձեռնարկություններ, կազմակերպություններ ու միավորումներ, ինչպես նաև շինարարության, տրանսպորտի ու կապի հազարավոր ձեռնարկություններ։ 1975 թ. վերջին ժողտնտեսության բոլոր հիմնական ֆոնդերի, այսինքն՝ շենքերի, կառույցների, մեքենաների, սարքավորումների, փոխադրամիջոցների, գործիքների, ինվենտարի, բանող ու մթերատու անասունների արժեքը կազմել է 1.259 *մլրդ* ռուբլի։ Այժմ միայն մեկ ամսում երկրում թողարկվում է ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան արտադրվել է նախապատերազմյան ամբողջ 1940 թ.։ Ժամանակակից սովետական ինդուստրիայի արտադրանքի աճի միայն մեկ տոկոսը գերազանցում է նախահեղափոխական Ռուսաստանի արտադրանքի տարեկան արտադրությունը։ 1975 թ. երկրում ամեն օր ստեղծվել է 2.350 *մլն* ռուբլու հասարակական արդյունք։

Տնտեսական հզորության վերելքի հետ մեկտեղ աճում են նաև պահանջները էկոնոմիկայի նկատմամբ։ Դա բխում է, մասնավորապես, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար կատարվող ծախսումների մեծացման անհրաժեշտությունից, որը ժողտնտեսության արագ աճի կարևոր նախադրյալներից է։ Ժամանակակից արտադրությունը բարձր, արագ աճող պահանջներ է ներկայացնում նյութական արժեքներ ստեղծողներին՝ նրանց մասնագիտական գիտելիքների, պրոֆեսիոնալ պատրաստության, քաղաքական մտահորիզոնի, ընդհանուր կուլտուրայի առումով, որոնք մեծապես պայմանավորված են նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման աստիճանով։



ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության բնույթում ու ողջ կառուցվածքում նշանակալի տեղաշարժերը կատարվում են մեր հասարակության զարգացման արտաքին տնտեսական և քաղաքական իրադրության մեջ տեղի ունեցող լուրջ փոփոխությունների պայմաններում։

Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող սոցիալիստական երկրները (ՍՍՀՄ, Բուլղարիա, Հունգարիա, ԳԴՀ, Կուբա, Մոնղոլիա, Լեհաստան, Ռումինիա և Չեխոսլովակիա) դարձել են աշխարհում խոշորագույն ինդուստրիալ կոմպլեքս։ Արդյունաբերական արտադրության ծավալով նրանք գերազանցում են ինչպես ԱՄՆ-ին, այնպես էլ Արևմտյան Եվրոպային՝ ամբողջությամբ վերցրած։ Համաշխարհային սոցիալիստական համագործակցության աճն ու ամրապնդումը խթանում են սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացման զարգացումը։ Դրանով իսկ հնարավոր են լինում սոցիալիզմի առավելություններն ինչպես ազգային, այնպես էլ ինտերնացիոնալ մասշտաբներով։

Միջազգային լարվածության թուլացման պայմաններում ընդլայնվում են սոցիալիստական համագործակցության արտաքին տնտեսական կապերը զարգացող երկրների և արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական պետությունների հետ։ Դա, բնականաբար, ավելի նպաստավոր պայմաններ է ստեղծում մեր երկրում կոմունիստական շինարարության համար։ Միաժամանակ ընդլայնվում է սոցիալիզմի և կապիտալիզմի միջև դասակարգային պայքարի այնպիսի ոլորտը, ինչպիսին է համաշխարհային երկու սիստեմների տնտեսական և գիտատեխնիկական մրցությունը։ Իններորդ հնգամյակում զգալիորեն ամրապնդվեցին Սովետական Միության և սոցիալիզմի եղբայրական երկրների դիրքերը կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ։

1971—1975 թթ. արդյունաբերական արտադրանքի արտադրությունը ՍՍՀՄ-ում ամեն տարի մեծացել է միջին հաշվով 7,4 տոկոսով, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ում և «Ընդհանուր շուկայի» երկրներում, որոնք ապրում են սոցիալ-տնտեսական խոր ցնցումներ, այն մեծացել է 1,2 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը ՍՍՀՄ-ում վերջին 5 տարում աճել է 43 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 6 տոկոսով, Ֆրանսիայում՝ 11, Ճապոնիայում՝ 10, Իտալիայում՝ 9, ԳՖՀ-ում՝ 2, Մեծ Բրիտանիայում՝ ընդամենը 1 տոկոսով։ Զարգացման արագ ու կայուն տեմպերի շնորհիվ ՍՍՀՄ-ի արդյունաբերական արտադրանքը կրկնապատկվեց 9 տարում, իսկ Ֆրանսիայում և ԳՖՀ-ում դրա համար պահանջվեց 16, ԱՄՆ-ում՝ 17, իսկ Մեծ Բրիտանիայում՝ 27 տարի։

Դեռ իններորդ հնգամյակին նախորդած տարիներին Սովետական Միությունն սկսել էր աշխարհի ցանկացած երկրի համեմատությամբ արտադրել ավելի շատ չուգուն, երկաթի, մարգանեցի ու քրոմի հանքաքար, ածուխ և կոքս, ցեմենտ, կալիական աղեր և ֆոսֆատի հումք, տրակտորներ, հեռուստացույցներ ու էլեկտրաքարշեր, կաշվե կոշիկ, բամբակ, բուրդ, վուշ և արտադրանքի մի քանի այլ տեսակներ, իսկ անցած հնգամյակում այդ ցանկին ավելացան ինդուստրիայի այնպիսի կարևորագույն արտադրատեսակներ, ինչպես՝ պողպատը, նավթը, հանքային պարարտանյութերը։ ՍՍՀՄ-ը խոշորագույն ինդուստրիալ տերությունն է Եվրոպայում և երկրորդը աշխարհում։ Մեր երկրում արտադրվում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի հինգերորդ մասը։

Հասուն սոցիալիզմի օրինաչափությունների, Սովետական Միության ժողտնտեսության զարգացման ներքին ու արտաքին պայմանների որակական խոր փոփոխությունների գիտական վերլուծությունը հիմք է ծառայել կուսակցության արդի փուլի տնտեսական ստրատեգիան մշակելու համար։

◆

Կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի, ինչպես և ամեն մի ստրատեգիայի, մշակումն ընդգրկում է, նախ, խնդիրների սահմանումը, հիմնարար, տեական նպատակների առաջադրումը և, երկրորդ, միջոցների, այն ուղիների կանխորոշումը, որոնք նպաստում են առաջադրված նպատակների իրականացմանը։

Կուսակցության ողջ քաղաքականության բարձրագույն նպատակը եղել ու մնում է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ

բարձրացումը։ Մեր կուսակցությունը հետևողականորեն ելնում է Լենինի այն հիմնարար դրույթից, որ սոցիալիզմի օրոք հանրային արտադրությունը զարգանում է «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումը ապահովելու համար» (Երկեր, հ. 6, էջ 53)։ Մեր կուսակցության գործունեությունը, նրա բոլոր ձգտումներն ուղղված են այն բանին, որ անհրաժեշտ ամեն ինչ արվի հանուն մարդու բարօրության։ Կուսակցության հենց այդ բարձրագույն նպատակն էլ նրան հարազատ է դարձնում ժողովրդին, ամուր, անխզելիորեն կապում սովետական բոլոր մարդկանց հետ, ապահովում մասսաների կողմից կուսակցության քաղաքականության անվերապահ պաշտպանությունը։

Միանգամայն հասկանալի է, որ կուսակցության բարձրագույն նպատակին հասնելու միակ հնարավոր միջոցը սոցիալիստական հանրային արտադրության զարգացումն է, վերջին հաշվով՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Զարգացած սոցիալիզմի փուլի համար բնորոշ են սոցիալիստական հասարակության կատարելագործման և կոմունիստականի վերաճելու պրոցեսների միաձուլումն ու փոխներթափանցումը։ Ըստ էության, դա մեկ պրոցես է. անցումը դեպի կոմունիզմ իրականացվում է սոցիալիզմի հետագա զարգացման միջոցով։ Այդ պատճառով էլ ստրատեգիական այն խնդիրները, որ իր առջև դնում է զարգացած սոցիալիստական հասարակարգը, կուսակցության ընդհանուր ստրատեգիայի կարևորագույն օղակն են։ Իսկ մեր ընթացիկ պլանները ավելի ու ավելի շատ են ծառայում կոմունիստական շինարարության վերջնական նպատակների իրագործմանը։

Սոցիալիզմի օրոք այսպիսին է կուսակցության կոմունիստական շինարարության ժամանակաշրջանի տնտեսական ստրատեգիայի նպատակը։ Դրանում արտահայտված են կուսակցության տնտեսական քաղաքականության հետևողականությունն ու հաջորդականությունը, նրա օրգանական միասնությունը ողջ կուսակցական քաղաքականության ընդհանուր նպատակների հետ։ Սակայն հաջորդականությունը քաղաքականության մեջ չի կարելի նույնացնել կրկնողության հետ։ Հասարակության զարգացման յուրաքանչյուր նոր փուլին զուգընթաց բարդանում են կյանքի առաջադրած խնդիրները։ Իսկ դա պահանջում է կուսակցական քաղաքականության ընդհանուր գծի ստեղծագործական զարգացում, հետագա կոնկրետացում։

Ուրեմն, որո՞նք են կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի նպատակների ու միջոցների սպեցիֆիկ առանձնահատկությունները։

Հասուն սոցիալիզմի պայմաններում լենինյան կուսակցության բարձրագույն նպատակն աշխատավորների բարեկեցության բարձրացման աճած հնարավորությունների հետագա զարգացումն է։ Կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ, մասնավորապես, նշվում է, որ 1976—1990 թթ. ժամանակաշրջանի համար նախապատրաստված հաշվումներից հետևում է, որ առաջիկա տասնհինգ տարում մեր երկիրն ունենալու է մոտավորապես երկու անգամ ավելի մեծ նյութական ու ֆինանսական ռեսուրսներ, քան անցած տասնհինգ տարում։ Դրանով նոր հնարավորություններ են ստեղծվում ՍՄԿԿ ծրագրի, կուսակցության վերջին համագումարների առաջադրած սոցիալ-տնտեսական հիմնական խնդիրները լուծելու համար։ Դա վերաբերում է ամենից առաջ սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջընթացին, այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։

Կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի նպատակների մեջ դիալեկտիկորեն միաձուլվում են երկու կարգի խնդիրներ. մի կողմից՝ նյութական և հոգևոր բարիքների սպառման մակարդակի բարձրացումը, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումը, մյուս կողմից՝ նոր մարդու ձևավորումը, անհատի համակողմանի զարգացումը։ Իհարկե, այդ խնդիրները



չի կարելի հակադրել. օրինակ, բոլոր բարիքների սպառման բարձր մակարդակի ապահովումը կոմունիստական տիպի անհատի զարգացման պարտադիր պայմանն է։ Այնուամենայնիվ, չի կարելի չտեսնել, որ մեր էկոնոմիկայի զարգացման, հանրային հարստության աճման հետ զուգընթաց ավելի հրատապ է դառնում հենց մարդու կատարելագործման հետ կապված խնդիրների լուծումը։

Մեզ մոտ դեռևս լրիվ չափով չեն բավարարվում բնակչության աճող պահանջմունքները ժողովրդական սպառման որոշ ապրանքների, բարձրորակ սննդամթերքների, բնակարանի նկատմամբ։ Այս բոլոր հարցերը լուծելու համար դեռևս անելիքներ շատ կան։ Միաժամանակ ակներև է, որ ժողովրդական բարեկեցության բարձրացման արդի պրոբլեմներն արդեն ամենևին այն չեն, ինչ եղել են, ասենք 20—30 տարի առաջ։ Դրանց բնույթը լրջորեն փոխվել է մեր հասարակության տնտեսական ու հոգևոր բուռն վերելքով, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման առաջընթացով։ Միանգամայն ակնհայտ է, որ ներկայումս առաջնահերթ է դարձել բնակչությանը բարձրորակ սննդամթերքներով, հագուստեղենով, կոշկեղենով և հարմարավետ բնակարանով ապահովելու խնդիրը։

Մեր հասարակությունն առավել մեծ ուշադրություն է նվիրում կոմունիստական տիպի անհատի ձևավորման պրոբլեմների կոմպլեքսային լուծմանը։ Այստեղ ևս առաջատար են յուրաքանչյուր մարդու՝ որպես գիտակից, ստեղծագործ աշխատողի, դաստիարակության հարցերը։ Չէ՛ որ անցումը դեպի կոմունիզմ հնարավոր կլինի միայն այն ժամանակ, «երբ աշխատանքը կդադարի կյանքի համար լոկ միջոց լինելուց, այն կդառնա կյանքի առաջին պահանջմունքը...» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 19, стр. 20)։

Կոմունիստներին խորթ է ասկետությունը, աշխատավորների կյանքի նյութական պայմանների ու կենցաղի բարելավման նշանակության թերագնահատման միտումը։ Սակայն մեզ համար ամենևին էլ նույնը չէ, թե ինչին է ծառայում նյութական հարստությունը։ Եթե իրեր կուտակելը մարդու համար դառնում է ինքնանպատակ, ապա դա մեր, սոցիալիստական ապրելակերպը չէ։ Սովետական մարդ-հայրենասերի կենսական արժույթների շարքում առաջնակարգ են ստեղծագործումն ու արարումը։

Կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի նպատակների մեջ տնտեսական զարգացման հարցերը սերտորեն միաձուլվում են մարդու հոգևոր կատարելագործման պրոբլեմների հետ։ Այսօր, տնտեսական խնդիրներն առաջադրելիս, անհրաժեշտ է հաշվի առնել դրանց սոցիալական հետևանքները։ Այլ կերպ ասած, պրակտիկայում ավելի ու ավելի ակնհայտ են դրսևորվում տնտեսական և սոցիալական քաղաքականության օրգանական միասնությունը, դրանց միաձուլումը կուսակցության միասնական սոցիալ-տնտեսական քաղաքականությանը։

Ինչպես արդեն նշվեց, տնտեսական ստրատեգիան ներառում է ոչ միայն նպատակները, այլև դրանց հասնելու միջոցները և ուղիները։ Ակներև է, որ հասարակության զարգացման, նրա տնտեսական պոտենցիալի և հասարակական հարաբերությունների ողջ սիստեմի փոփոխմանը զուգընթաց չեն կարող փոխվել նաև հասունացած խնդիրների լուծման միջոցները։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, կուսակցության արդի տնտեսական ստրատեգիայի առանցքն են՝ երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումը, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն հաշվեկշռված աճի ապահովումը։ Այսպիսով, կուսակցության առաջադրած նպատակներին հասնել կարելի է, ամենից առաջ, հենվելով մեր հասարակության տնտեսական պոտենցիալի մեծացման ու որակական կատարելագործման վրա։

Համագումարը շեշտեց, որ երկրի առջև կանգնած բազմապիսի տնտեսական և սոցիալական խնդիրների հաջող լուծման համար այլ ուղի չկա, քան աշխատանքի արտադրողականության արագ աճն է, ողջ հանրային արտադրության շեշտակի բարձրացումը։ Ուստի, կուսակցության տնտեսական ստրատե-

*գիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն արդյունավետության բարձրացման խնդիրն է։*

*Մեր երկրի արդի զարգացման առանձնահատկությունը ժողովրդական տնտեսության համակողմանի ինտենսիվացումն է։ Այժմ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, զգալի չափով արդեն սպառվել են արտադրության աճի, այսպես կոչված, էքստենսիվ աղբյուրները։ Դա նշանակում է, որ մենք գործնականորեն աշխատանքային ազատ ռեսուրսներ չունենք, պակասում են կապիտալ ներդրումների աճման տեմպերի հնարավորությունները։ Առավել շատ միջոցներ պետք է հատկացվեն կուլտուր-կենցաղային և բնակարանային շինարարությանը, շրջակա միջավայրի պահպանությանը, ինֆրակառուցվածքի արագ զարգացմանը (օրինակ, ճանապարհային շինարարության, կապի զարգացման համար և այլն)։ Հանրային արտադրության համակողմանի ինտենսիվացումը, դրա արդյունավետության բարձրացումը երկրի տնտեսական զարգացման հիմնական ուղղությունն են, ինչպես առաջիկա տարիների, այնպես էլ տևական հեռանկարի համար։ Այլ կերպ ասած, ստեղծելով զարգացման էկոնոմիկա, պետք է հաշվի առնել վերջինիս օրենքները։*

*Տնտեսական քաղաքականության մեջ, ամբողջ տնտեսական աշխատանքում այսօր ծանրության կենտրոնը մնում է արդյունավետության և որակի բարձրացման պրոբլեմների լուծումը։ Ժողովրդի բարեկեցության աճը այժմ պայմանավորված է ոչ թե պարզապես արտադրանքի թողարկման մեծացմամբ, թեև այդ խնդիրը չի հանվում, այլ, ամենից առաջ, արտադրության արդյունավետության բարձրացմամբ, որն ավելի լայն հնարավորություններ է ստեղծում՝ ավելի խոշոր միջոցներ հատկացնելու աշխատավորների եկամուտների բարձրացման, բնակարանային, կուլտուր-կենցաղային շինարարության և նման այլ նպատակների համար։*

*Իհարկե, մեր հասարակությունը միշտ էլ ունենալու է ավելի ու ավելի մեծ քանակությամբ արտադրանքի կարիք. առանց դրան, ինչպես հայտնի է, չի կարելի ընդլայնել սպառումը։ Բայց պրոբլեմի էությունն այն է, որ այժմ անհնար է առանց աշխատանքի արդյունավետության բարձրացման ավելի շատ արտադրել։ Եթե, օրինակ, չի կարելի լրացուցիչ բանվորներ ուղարկել արտադրություն, նշանակում է, արտադրանքի թողարկումը մեծացնել կարելի է միայն գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատավորների որակավորման աճի հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։*

*Այսպիսով, արդի տնտեսական ստրատեգիան արտահայտում է զարգացած սոցիալիստական հասարակարգի ամենախոր, ամենակենսական պահանջմունքը։ Այդ խնդրի իրականացումը կնշանակի հասնել մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու սոցիալական առաջընթացի նոր բարձունքների։*

◆

*Կուսակցության տնտեսական ստրատեգիան կոնկրետացվում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում։*

*Զարգացած սոցիալիզմի պայմաններում կուսակցության ստրատեգիայի պրակտիկ ստուգման և ռեալ իրականացման կարևոր փուլ հանդիսացավ իններորդ հնգամյակը։ Այն համոզիչ կերպով հաստատեց ՍՄԿԿ XXIV համագումարի նշած քաղաքական գծի կենսականությունը, գիտական հիմնավորվածությունն ու բարձր արդյունավետությունը։ Իններորդ հնգամյակում երկրի էկոնոմիկան խոր շրջադարձ կատարեց ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանն առնչվող հարցերի լուծման գործում, հետևողականորեն իրականացվեց գիտատեխնիկական առաջընթացի արագացման, սոցիալիստական հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կուրսը։ Սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը, կուսակցության ուղղություն տվող, կազմակերպչական գործունեությունը ապահովեցին ժողովրդական տնտեսության կայուն դինամիկ զարգացումը։*

*Տասներորդ հնգամյակի հիմնական բովանդակությունն արտահայտված է XXV համագումարի սահմանած գլխավոր խնդրի մեջ, որը կոնկրետացնում է*



*կուսակցության տնտեսական ստրատեգիայի նպատակներն ու միջոցները նոր հնգամյակում։* «Տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է,— *ասված է* «ՍՍՀՄ *ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» փաստաթղթում,*— հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի բստ ամենայնի բարելավման հիման վրա»։

*Տասներորդ հնգամյակը նոր կարևոր փուլ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման և նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի զարգացման գործում։ Առաջիկա տարիներին է՛լ ավելի ակտիվորեն են լուծվելու հանրային արտադրության հետագա ինտենսիվացման, ժողովրդական տնտեսության հնարավորությունների ավելի լրիվ օգտագործման խնդիրները՝ ազգային հարստությունը բազմապատկելու, երկրի տնտեսական հզորությունն ու պաշտպանունակությունը ամրապնդելու համար։*

*Կուսակցության տնտեսական ստրատեգիայի գիտական խոր հիմնավորումը հնարավորություն ընձեռեց առանձնացնել տնտեսական քաղաքականության հանգուցային պրոբլեմները, որոշել հանրային արտադրության տարբեր տեղամասերի գործունեության հիմնական ուղղությունները, աշխատավորական զանգվածների առջև բացահայտել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների սոցիալական և քաղաքական հսկայական իմաստը։*

*Կուսակցության տնտեսական քաղաքականությունը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները տոգորված են ժողովրդի բարօրության նկատմամբ հոգատարությամբ։ Այդ բանի համոզիչ հաստատումն է սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման մասին համագումարի ընդունած նոր ծրագիրը։*

Հինգ տարում սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամուտը նախատեսվում է մեծացնել 24—28 տոկոսով։ Ընդ որում, ընթացիկ սպառման ֆոնդն աճելու է կուտակման ֆոնդից ավելի արագ, որը կհանդիսանա հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ցուցանիշներից մեկը։ Ընթացիկ հնգամյակում շարունակելով աշխատանքի վարձատրության և սպառման հանրային ֆոնդերի աճի հաշվին բնակչության եկամուտներն ավելացնելու միտումը, կուսակցությունը ելնում է այն բանից, որ անհրաժեշտ է ուժեղացնել ըստ աշխատանքի վարձատրության խթանող դերը, յուրաքանչյուր աշխատողի եկամուտների աճի պայմանավորվածությունը հանրային արտադրության զարգացման ու արդյունավետության բարձրացման գործում նրա անձնական աշխատանքային և կոլեկտիվի ավանդից։ Նախատեսվում է բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը հասցնել առնվազն մինչև 170 ռուբլու կամ ավելացնել 16—18 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտները հանրային տնտեսությունից՝ միջին հաշվով 24—27 տոկոսով։ Զգալիորեն կաճի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը՝ պարենային և ոչ պարենային հիմնական ապրանքների պետական մանրածախ գների կայունությունն ապահովելու պայմաններում։ Տասներորդ հնգամյակում, ինչպես և նախկինում, մեծ ուշադրություն է նվիրվելու բնակարանային շինարարությանը։

*Տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագրի կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ նախատեսվում է միջոցառումների լայն կոմպլեքս, որի նպատակն է խորացնել աշխատանքի ստեղծագործական բնույթը։ Բարձր արտադրողական աշխատանքի և աշխատավորների ստեղծագործական ընդունակությունների լայն օգտագործման համար ավելի նպաստավոր պայմաններ ստեղծելու նպատակով շարունակվելու է արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը ուժեղացնելու, ձեռքի, հատկապես ծանր ու անհրապույր աշխատանքը աստիճանաբար դուրս մղելու կուրսը։*

Ընդարձակ սոցիալական ծրագրի իրագործման նպատակով կուսակցության համագումարը մշակեց նյութական արտադրության հետագա զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, մեր ամբողջ աշխատանքի որակի բարելավման փոխադարձաբար կապված միջոցառումներ։ Նախատեսված է զգալիորեն ընդլայնել ու նորացնել արտադրաֆոնդերը, ապահովել ժողովրդական տնտեսության կայուն բալանսավորման աճը։ Ընդ որում, կարևորագույն ուղղությունը կլինի ժողովրդատնտեսական և ճյուղային համամասնությունների կատարելագործումը։ Այդ նպատակով նախատեսվում է շարունակել կուտակումները հիմնականում հօգուտ գյուղատնտեսության վերաբաշխելու, գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինումն ու վերակառուցումը արագացնելու գիծը։ Նշված միջոցառումների իրականացումը հնարավորություն կընձեռի երկիրը հուսալիորեն ապահովել հումքով, ավելի ռացիոնալ օգտագործել աշխատանքային ռեսուրսները։

Մեծ նշանակություն է տրվում ժողովրդատնտեսական կոմպլեքսային ծրագրերի մշակմանն ու իրականացմանը։ Դրանցում օրգանապես կապակցվում են ընթացիկ ու տևական խնդիրները, նոր շրջանների յուրացման, արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխման պահանջմունքները։ Դրանք վառելիքա-էներգետիկական բազայի, քիմիական արդյունաբերության, մետալուրգիայի, մեքենաշինության առաջատար ճյուղերի, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու գյուղատնտեսության զարգացման ծրագրերն են։

Այսօր երկրի շատ շրջանների համար բնորոշ է ավելի ու ավելի մեծ չափով տերիտորիալ-արտադրական համալիրների ստեղծումը։ Բուռն տեմպերով է զարգանում, օրինակ, Արևմտա-Սիբիրյան արդյունաբերական համալիրը։ 1980 թ. այն պետք է երկրին տա արդյունահանվող նավթի մոտ կեսը։ Սայանյան համալիրը Արևելյան Սիբիրում կընդգրկի, աշխարհում ամենահզոր Սայանո-Շուշենսկոյեի ՀԷԿ-ից բացի, մետալուրգիական և էլեկտրատեխնիկական խոշոր ձեռնարկություններ։ Հեռանկարում՝ Բայկալ—Ամուրյան մայրուղու գոտում ստեղծվելու են մի շարք համալիրներ, որոնք հարուստ են հանքա-հումքային հանքավայրերին։ Ավելի մեծ ուշադրություն է նվիրվելու նաև Կուրսկի մագնիսային անոմալիայի, Օրենբուրգի գազակոնդենսատային և այլ հանքավայրերի բազայի վրա տերիտորիալ-արտադրական համալիրների զարգացմանը։ Տասներորդ հնգամյակում համակողմանիորեն կզարգանա բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկան՝ երկրի ժողովրդատնտեսական միասնական համալիրի շրջանակներում։

Հնգամյակի կարևոր առանձնահատկությունն այն է, որ նախատեսվում է այդ տարիներին ժողովրդական տնտեսության մեջ անցնել հանրային արտադրության աճի ինտենսիվ, որակական գործոնների առավելագույն օգտագործմանը։ Աշխատանքի բարձր արդյունավետության և որակի համար մղվող պայքարն այժմ ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը. այն ենթադրում է արտադրանքի թողարկման աճ, աշխատանքի ու նյութերի խնայողություն, հիմնական ֆոնդերի և կապիտալ ներդրումների ավելի լավ օգտագործում, աշխատողների որակավորման բարձրացում, արտահանման առաքումների աճ և այլն։

Տասներորդ հնգամյակի համար սահմանված են աշխատանքի արտադրողականության աճի բարձր առաջադրանքներ։ Այդ գործոնի հաշվին ապահովվելու է երկրի ազգային եկամտի աճի 85—90 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի ավելացման մոտավորապես 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ողջ աճը, երկաթուղային տրանսպորտի փոխադրումների ծավալների աճի առնվազն 95 տոկոսը։ Այս բարդ խնդիրների լուծումը պահանջում է ռացիոնալ կազմակերպել արտադրությունը, վերացնել նրա անհամաչափությունը, աշխատաժամանակի կորուստները և կրճատել կադրերի հոսունությունը, բարձրացնել աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահությունը։ Ընդ որում, նախատեսված է գործող ձեռնարկություններում արտադրանքի ողջ աճն ապահովել, որպես կանոն, նույն կամ ավելի պակաս աշխատողների թվաքանակով։



ՍՄԿԿ XXV համագումարը առաջադրված խնդիրների լուծման վճռական օղակ համարեց էկոնոմիկայի կառավարման հետագա կատարելագործումը բառիս ամենալայն իմաստով՝ զարգացած սոցիալիզմի առավելությունների ու հնարավորությունների ավելի լրիվ օգտագործման հիման վրա։ Էկոնոմիկայի կառավարման կատարելագործումը կուսակցությունը դիտում է որպես կարևորագույն ռեզերվ, որի օգտագործումը կօգնի հաջողությամբ կատարելու տասներորդ հնգամյա պլանը։



Տասներորդ հնգամյակը, անկասկած, արժանի տեղ կգրավի մեր հասարակության զարգացման արդի փուլի խնդիրների լուծման գործում։ Կուսակցության մշակած կոմունիստական շինարարության նոր պլանները սովետական մարդկանց համար դարձել են աշխատանքային խանդավառության հզոր աղբյուր։ Ամբողջ երկրով մեկ ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցություն՝ «Բարձրացնել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդական բարեկեցության հետագա աճի» կոչով։ Այն տալիս է որոշակի արդյունքներ, որոնց վկայությունը հնգամյակի առաջին տարվա առաջին կիսամյակի աշխատանքի դրական ցուցանիշներն են։ Սակայն դա միայն սկիզբն է։ Առջևում մեզ սպասում է լարված, բարդ ու հրապուրիչ աշխատանք, որը ծառայում է հանրային արտադրության կատարելագործմանը, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացմանը, մեր սովետական հայրենիքի բարգավաճմանը։

«Политическое самообразование», № 9, 1976.

# ՀՈՒԺԿՈՒ ԹԱՓ ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆԸ

**Է. Գ. ԷՔՍՅՈՒԶՅԱՆ**
ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրի տեղակալ

ԸՆԴԱՐՁԱԿ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԻ է նման մեր լայնածավալ սոցիալիստական հայրենիքը։ Ամենուրեք կառուցվում են արտադրական նորանոր մասնաշենքեր, էլեկտրակայաններ, երկաթուղիներ, դպրոցներ, հիվանդանոցներ, կուլտուր-կենցաղային հաստատությունների շենքեր։ Աշխարհի ոչ մի երկրում բնակարանային շինարարությունն այնպիսի մեծ թափով չի կատարվում, ինչպես Սովետական Միությունում։

ՀՍՍՀ-ում տասներորդ հնգամյակում կապիտալ շինարարության համար պլանավորված է առավել ընդարձակ ծրագիր։ Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները, նախորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանան 1,25—1,28 տոկոսով։ Այդ ծրագրի հաջող իրականացումը մեծապես պայմանավորված է շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների պլանների հաջող կատարմամբ և կառուցող կազմակերպություններին անհրաժեշտ շինանյութերով ապահովմամբ։

Մեր հանրապետությունում անցած տասը տարում արագ տեմպերով զարգացել է շինարարական նյութերի արդյունաբերությունը. շահագործման են հանձնվել նոր ձեռնարկություններ ու արտադրամասեր։ Այդ թվում՝ Նուռնուսի քարի մշակման գործարանը, Կարմրաշենի թեթև լցանյութերի կոմբինատը և այլն։

1971—1975 թվականներին նշանակալի փոփոխություններ են կատարվել ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում։ Երևանի խեցեգործական արտադրանքների կոմբինատում արմատավորվել են ավտոմատացված նոր հոսքա-կոնվեյերային գծեր երեսպատման և հատակապատման սալիկների արտադրության նպատակով։ Այդ ամենի շնորհիվ սալիկների արտադրման տևողության պրոցեսը կրճատվեց 10 անգամ, իսկ արտադրողականությունն ավելացավ գրեթե երեք անգամ։

Այդպիսի մոդեռնացում կատարվեց Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատում, որտեղ «BO» տիպի փոքրածավալ ասբեստ-ցեմենտե թերթերի արտադրության տեխնոլոգիական երեք հին գծերը փոխարինվեցին «CB—40» մեծածավալ թերթերի հոսքա-կոնվեյերային ավտոմատացված արտադրությամբ։ Դա հնարավորություն ընձեռեց բարելավելու աշխատանքի պայմանները և զգալիորեն իջեցնելու արտադրանքի միավորի վրա կատարվող ծախսերը։

Քար հանող և քար մշակող ձեռնարկություններում բարհատ նախկին մեքենաները փոխարինված են մոդեռնացված նոր մեքենաներով և քարի ֆրեզերային երբեմնի հաստոցների փոխարեն տեղադրված են արդիական նոր հաստոցներ։ Ընդ որում նշանակալիորեն բարելավվել է արտադրանքի որակը և բարձրացել աշխատանքի արտադրողականությունը։



Այդ և ուրիշ այլ միջոցառումների կենսագործումը հնարավորություն ընձեռեց մինիստրության ձեռնարկություններում համախառն արտադրանքի թողարկումը, 1970 թ. համեմատությամբ, 1975 թ. ավելացնել 1,5 անգամ։ Այդ ժամանակամիջոցում յուրացվել են շինանյութերի մի շարք նոր տեսակներ՝ տուֆաբետոնային պատի բլոկներ, երեսպատման սալիկներ, մարմարի թափոններից գեղարվեստական զարդանկարային սոսնձով փակցվող սալիկներ, և սկսվել է դրանց արտադրությունը։

Փքեցված պեռլիտի արդյունահանման բազայի վրա յուրացված է արհեստական նոր ջերմահիդրամեկուսիչ, ձայնակլանիչ նյութերի, ճարտարապետական-շինարարական արտադրանքների արդյունաբերական արտադրությունը։

Սակայն շինանյութերի արդյունաբերության զարգացման ներկա մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում կապիտալ շինարարության առաջադրած աճող պահանջներին։

Շինանյութերի արդյունաբերության մինիստրության շինանյութեր թողարկող ձեռնարկություններում, որտեղ բազմիցս վերափոխվել են տեխնոլոգիական պրոցեսները, ամենուրեք չէ, որ արտադրությունն ավարտուն մեքենայացված ցիկլեր ունի։ Այդպիսի արտադրություններում դեռևս զգալի է ձեռքի աշխատանքի ծավալը, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը։ Այս արտադրությունների մեքենայացման և ավտոմատացման գործում տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման մեծ ռեզերվներ են թաքնված։

Հաշվի առնելով, որ մինիստրության շինանյութերի արդյունաբերության ընդհանուր ծավալում այդպիսի ձեռնարկությունների բաժինն առայժմ մեծ է, դժվար չէ պատկերացնել արտադրության տեխնիկական մակարդակի առավել բարձրացման համար միջոցառումներ կենսագործելու կարևորությունը։ Դրա հետ մեկտեղ բոլոր նախադրյալները կան կարճ ժամկետում հաղթահարելու շինանյութերի արտադրության ետ մնալը և ապահովելու նրա աճի առաջանցումը շինմոնտաժային աշխատանքների աճից։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, կարևոր նշանակություն տալով շինանյութերի արդյունաբերության զարգացման ոլորտում կապիտալ ներդրումների առաջադրանքների հաջող կատարմանը, սահմանեց՝ «Շինանյութերի արտադրության ծավալը հնգամյակում ավելացնել մոտավորապես 1,3 անգամ։ Ընդլայնել ավելի լավորակ, գործարանային պատրաստության ավելի բարձր աստիճանի նոր շինանյութերի արդյունավետ հավաքովի շինարարական տարրերի, թեթև ու խնայողական խոշոր կոնստրուկցիաների և տարաների թողարկումը, որոնք ապահովում են ինդուստրացման մակարդակի բարձրացումը, նվազեցնում շինարարության նյութատարությունն ու արժեքը, ինչպես նաև ապահովում շենքերի և կառուցվածքների դիմացկունությունը, հարմարավետությունն ու ճարտարապետական արտահայտչականությունը։ 1980 թվականին ցեմենտի արտադրությունը հասցնել 143—146 միլիոն տոննայի» (ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները, «Հայաստան» հրատ., 1976, էջ 56)։

Հայկական հանրապետության տերիտորիայում հետազոտված են հազվագյուտ քարանյութերի և սիլիկատային հումքի մոտ 500 հանքավայրեր։ Բնական հանածոների մեծ պաշարների առկայությունը հնարավորություն է ընձեռում լայն մասշտաբով զարգացնելու շինանյութերի արտադրությունը։

ՍՄԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ նախատեսված է հնգամյակում հանրապետության և երկրի մյուս տնտեսական շրջանների շինարարության կարիքներն ապահովել բարելավված շինանյութերով, արտադրանքներով ու կոնստրուկցիաներով, որոնք հնարավորություն կընձեռեն նշանակալիորեն արագացնելու և էժանացնելու շինարարությունը, ինչպես նաև ընդլայնելու մի շարք արժեքավոր նյութերի ու արտադրանքների արտահանության մատակարարումները։

ցանիշները, այլև էականորեն բարձրացնելու թողարկվող արտադրանքի որակը։

Նշանակալի ուշադրություն կնվիրվի փքուն պեռլիտի հիման վրա նոր արդյունավետ շինանյութերի և արտադրանքների արտադրության կազմակերպմանը։ Նախատեսվում է համալիրների ստեղծում պեռլիտա-ապակեպլաստների, ջերմամեկուսիչ նյութերի, կոճղաքարերի, քարասիտալների և այլ նյութերի արտադրության նպատակով։

Շինանյութերի արդյունաբերության առջև տասներորդ հնգամյակում ծառացած են մեծ և բարդ խնդիրներ։

Քննարկվող ճյուղի զարգացման գլխավոր խնդիրն արտադրության տեխնիկական վերազինման ու ինտենսիֆիկացման ապահովումն է և դա հիմնականում գործող ձեռնարկություններում։

Հայկական ՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները կոչված են հատուկ ուշադրություն նվիրելու կազմակերպական-տեխնիկական այն միջոցառումների իրականացմանը, որոնք Սովետական Միության առաջավոր ձեռնարկությունների փորձի օգտագործմամբ պարտավոր են հասնել թողարկվող ողջ արտադրանքի որակի շեշտակի բարձրացմանը։

Նախատեսված միջոցառումների իրականացումը հնարավորություն կընձեռնի արդյունավետ օգտագործելու հանրապետության հումքային միջոցների աճող հնարավորությունները, առավելագույն չափով բավարարելու շինարարության պահանջմունքը նյութերի և արտադրանքի հարցում։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ եռանդն է հրահրել տասներորդ հնգամյակը, որը մեզ առաջադրել է տնտեսական նոր խնդիրներ և երկարաժամկետ նպատակներ։

ՍՄԿԿ XXV համագումարի ծրագրային որոշումներով ու գաղափարներով ոգեշնչված՝ հանրապետության շինանյութերի արդյունաբերության բնագավառի աշխատողները ջանք չեն խնայում կատարելու և գերակատարելու տասներորդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները։

ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության արդյունաբերական ձեռնարկությունները 1976 թվականի հունվար—օգոստոս ամիսներին շինանյութերի արտադրության իրացման պլանը կատարել են 102,1 տոկոսով, այլ խոսքով, պլանով ծրագրվածը գերակատարվել է 1.152 հազար ռուբլով։ Ձեռնարկությունների ճնշող մեծամասնությունը կատարել և գերակատարել է ինչպես պետական պլանը, այնպես էլ հանդիպական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները՝ ապրանքային արդյունքների իրացմամբ։ Այդ ձեռնարկություններից են «Հայապակի» միավորումը, որն ութ ամսվա առաջադրանքը կատարել է 105,2 տոկոսով, Հոկտեմբերյանի շինանյութերի կոմբինատը՝ 104,2, Մարալիկի շինանյութերի կոմբինատը՝ 109,6, Սպանդարյանի մանրատող-տեսակավորող գործարանը՝ 124,6, Մարմարաշենի քարե բլոկների կոմբինատը՝ 117, Երևանի կերամիկական իրերի կոմբինատը՝ 101,1 տոկոսով և այլ ձեռնարկություններ։ 1976 թվականի ութ ամսվա համախառն արտադրանքի պլանը մինիստրության ձեռնարկությունները կատարել են 102,4 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի աճը, 1975 թ. համապատասխան ժամանակաշրջանի հետ համեմատած, կազմել է 2,4 տոկոս։

Նշենք, որ արդյունաբերական արտադրանքի աճն ավելացել է հիմնականում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Համախառն արտադրանքի արտադրության պլանը ութ ամսում հաջողությամբ են կատարել՝ «Հայապակի» միավորումը (105,6 տոկոս), Երևանի կերամիկական իրերի կոմբինատը (105,5), Մարալիկի շինանյութերի կոմբինատը (116), Սպանդարյանի մանրատող-տեսակավորող գործարանը (136), Մարմարաշենի քարե բլոկների կոմբինատը (116 տոկոս) և այլն։ Ութ ամսում պլանից ավելի արտադրվել են 22,6 պայմանական կիլոմետր ասբեստա-ցեմենտային խողովակ, չորս միլիոն հատ կես լիտրանոց շշեր, 9 հազար քմ երեսպատման կերամիկական հատակասալ, 3 հազար քմ երեսպատման կերամիկական սալ և այլն։



Ըստ 1976 թ. երկրորդ եռամսյակի և 1976 թ. առաջին կիսամյակի հանրագումարային տվյալների, «Հայբյուրեղապակի» գործարանի կոլեկտիվը երկու անգամ ճանաչվել է համամիութենական սոցիալիստական մրցման հաղթող և նվաճել ՍՍՀՄ շինանյութերի արդյունաբերության մինիստրության և շինարարության ու շինանյութերի արդյունաբերության բանվորների արհեստակցական միության կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, ստացել առաջին մրցանակը։ Սպանդարյանի մանրատող-տեսակավորող գործարանը 1976 թ. երկրորդ եռամսյակի արդյունքների համար նվաճեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը, ստանալով առաջին մրցանակը։ Մարալիկի շինանյութերի կոմբինատը նույնպես արժանացավ ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության և շինարարության ու շինանյութերի արդյունաբերության բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին մրցանակին։

1976 թվականի առաջին ութ ամսվա ընթացքում պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմամբ բարձր ցուցանիշների հասան «Հայբյուրեղապակի» գործարանի առաջավոր բանվորներ, ապակու կաղապարիչ մեքենաների վարպետներ Ե. Մուշեղյանը, Ա. Ղազարյանը, Արթիկ-տուֆ կոմբինատի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, քարհատիչ մեքենաների մեքենավար Ա. Հակոբյանը, Արարատի ցեմենտա-շիֆերային կոմբինատի քարաղաց Ա. Ավչյանը, պտտող վառարանների վականագործների բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Մ. Խաչերեսովը, Հոկտեմբերյանի շինանյութերի կոմբինատի էքսկավատորավար Մ. Սարգսյանը և շատ ուրիշներ։

Չի կարելի չնշել, սակայն, որ որոշ ձեռնարկությունների աշխատանքում դեռևս կան էական թերություններ, որոնք խոչընդոտում են պլանային առաջադրանքների, հատկապես, թողարկվող արտադրանքի որակի կատարմանը։ Թեև պետք է նշել, որ հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը պարբերաբար քննարկում է շինանյութերի որակի բարձրացման հարցը։

Մեր հանրապետության շինանյութերի արդյունաբերության մարզի աշխատողները, ամենուրեք հանդես բերելով ստեղծագործական նախաձեռնություն, ձգտում են ավելի շատ արտադրանք տալ երկրին։ Ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, արհմիությունների կոմիտեներն ու տնտեսական ղեկավարները, գլխավորելով աշխատավորական զանգվածների ձեռներեցությունը, պետք է մոբիլիզացնեն բոլոր ուժերը իրականացնելու ՍՄԿԿ XXV համագումարի հոյակապ ծրագիրը՝ կոմունիզմի կառույցներին շատ և բարձրորակ շինանյութեր տալու համար։

# ԽՈՍՔԸ ԳՈՐԾԻ ԵՆՔ ՎԵՐԱԾՈՒՄ

**Ջ. Հ. ԱԼԻԵՎ**
ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ իր գործունեության բոլոր փուլերում, ծրագրային խնդիրները լուծելիս, միշտ ելել է խոսքի ու գործի սերտ միասնության լենինյան սկզբունքից և հետևողականորեն հավատարիմ մնացել դրա ոգուն։ Այժմ, երբ ՍՄԿԿ XXV համագումարը կուսակցական ու աշխատավորական լայն մասսաներին զինել է պայքարի նոր ծրագրով՝ կենսագործել կոմունիստական շինարարության վիթխարի կանխագծումները, առավել ուժգնությամբ է հնչում խոսքի ու գործի միասնությունը՝ որպես ժամանակի պահանջ, կոչ, որը մոբիլիզացնում ու նպատակամղում է մարդկանց՝ հանուն աշխատանքային առավելագույն արդյունքների, հանուն հայրենասիրական նոր սխրանքների։

Խորապես գիտակցելով կուսակցության գործելակերպի այդ նորմի կարևոր նշանակությունը՝ ՀԿԿ Ամասիայի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում կոմունիստներին, բոլոր աշխատողներին խոսքի ու գործի միասնության ոգով դաստիարակելու հարցին։ Այս լուրջ աշխատանքը հիմա կատարում ենք կուսակցության XXV համագումարի պահանջների համեմատ։ Այդ ասպարեզում անցյալում կատարած սխալներից մեզ սթափեցրեց և լրջորեն խորհելու մղեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումը, որը լենինյան սկզբունքայնությամբ բացահայտեց կադրերի գործունեության անբավարար վիճակը։ «Վերջին տարիներս,— նշեց պլենումում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը,— մեր գործունեության շատ ոլորտներում թուլացել է կուսակցական և պետական կարգապահությունը, թուլացել է և պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, որոնց մի մասը սկսել է անպատիժ կերպով չկատարել իր ուղղակի պարտականությունները, անպատասխանատվություն և անկարգապահություն ցուցաբերել դիրեկտիվ մարմինների որոշումների կատարման գործում։ Առանձին տեղերում ստեղծվել էր անսկզբունքայնության, ամեն ինչ ներելու, պաշտոնական պարտքը ուղղակի չկատարողների նկատմամբ ներողամտության մթնոլորտ» («Լենինյան ուղիով» ամսագիր, 1975 թ., № 2, էջ 8)։

Քննադատական այս խոսքը լիովին վերաբերում է նաև մեր շրջանին, որտեղ, իրոք, գործերն անբարեհաջող էին։ Թույլ պահանջկոտության ու հսկողության հետևանքով կոմունիստների և ղեկավար աշխատողների զգալի մասի մոտ առկա էր խոսքի ու գործի հակադրություն, ձանձրալի էր ստանձնած պարտավորությունների կատարումը, թույլ էր կուսակցական ու աշխատանքային կարգապահությունը, անբավարար էին օգտագործվում գյուղատնտեսական արտադրության միջոցները (հողը, ջուրը, տեխնիկան, պարարտանյութերը), անհաշտ պայքար չէր մղվում մեր հասարակարգին անհարիր երևույթների դեմ, կային պաշտոնական դիրքի չարաշահման, աչքակապության, հանրային միջոցների վատնման ու շռայլման փաստեր։ Այս ամենը հանգեցրեց նրան, որ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները թերակատարեցին իններորդ



հնգամյակի առաջադրանքները և երկրին պարտք մնացին մեծ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ։ Դա ամենից առաջ վերաբերում է Գյուլլիբուլաղի, Ջախմախի, Մաղարաջուղի, Թափքյանդի կոլտնտեսություններին և Կուզիքենդի, Բանդիվանի սովխոզներին, որոնք տնտեսական տարին փակում էին վնասով։ Բավական է ասել, որ միայն սովխոզների վնասը 1973 թ. հասավ մոտ մեկուկես միլիոն ռուբլու։

Հասկանալի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) և ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումների հայտնի որոշումներից ու պահանջներից հետո կուսակցության շրջանային կոմիտեն չէր կարող գործել հին ձևով և աչք փակել իրականության տխուր փաստի առաջ։ Նշված որոշումների ոգին, դրանցում առաջ քաշված հանգուցային հարցադրումները շրջադարձային նշանակություն ունեցան տնտեսության կուսակցական ղեկավարման, կազմակերպական ու գաղափարադաստիարակչական աշխատանքների համար։ Այստեղ տեղին է հիշատակել Վ. Ի. Լենինի նկատառումն այն մասին, որ, երբ մշակված է քաղաքական ճիշտ գիծ, որոշված են գլխավոր խնդիրները, մնում է ծավալել կազմակերպական աշխատանք։

Այո՛, մենք սկսեցինք կազմակերպական աշխատանքը ծավալել ամբողջ ճակատով։ Գլխավոր ուշադրությունը նվիրեցինք կադրերի պատասխանատվության բարձրացման, նրանց խոսքի ու գործի զուգորդման, որոշումների կատարման ստուգման ու վերահսկողության ապահովման խնդիրներին։

Կենսագործելով ՀԿԿ Կենտկոմի հունվարյան և շրջանային կոմիտեի նախորդ երկու պլենումների որոշումները, որոնցում այնքան հանգամանորեն քննարկվել են կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերը, կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ձեռնամուխ եղան տեղ գտած սխալների ու արատների վերացմանը, կադրերի գործունեության բարելավմանը։ Մենք առաջնորդվեցինք լենինյան այն դրույթով, որ մարդկանց ընտրությունը և կատարման ստուգումը համարվում են ամբողջ աշխատանքի մեխը. «...ընտրեցե՛ք հարկավոր մարդկանց,— ասել է Վ. Ի. Լենինը,— ու ստուգեցե՛ք գործնական կատարումը,— և ժողովուրդն այդ կգնահատի» (Երկեր, հ. 33, էջ 360)։ Շրջկոմի և կուսկազմակերպությունների գործադրած ջանքերի շնորհիվ հաջողվեց վճռականապես վերջ տալ կադրերի ընտրության կուսակցական սկզբունքի խախտմանը, այն սխալ պրակտիկային, երբ մի տեղում իրեն չարդարացրած, ձախողված ղեկավար աշխատողը փոխադրվում էր մի այլ պատասխանատու պաշտոնի։ Այդպիսի աշխատողների հիմնական մասն ազատվեց աշխատանքից, և մեր օրենքները ոտնահարողները, պետական պլանները չկատարողները, խոստումնազանցները ենթարկվեցին կուսակցական պատասխանատվության։ Պաշտոնական դիրքը չարաշահելու, աչքակապությամբ զբաղվելու, սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգություններ կատարելու համար իրենց զբաղեցրած պաշտոններից ազատվեցին Բանդիվանի սովխոզի դիրեկտոր Կ. Նիկողոսյանը, Մաղարաջուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Ալիևը, Ագիզբեկով, Գյուլլիբուլաղ, Ջախմախ և Կուզիքենդ գյուղերի դպրոցների դիրեկտորներ Մ. Բայրամովը, Կ. Ասլանովը, Շ. Ալիևը, Հ. Նաբիևը։ Կոմունիստին անվայել վարքագիծ դրսևորելու, հանրային միջոցները յուրացնելու և պաշտոնական պարտականությունները չկատարելու պատճառով կուսշրջկոմի բյուրոն կուսակցությունից վտարեց Ենի-Յոլի սովխոզի պահեստապետ Կասիմ Իսմայիլովին և Ագիզբեկովի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչ Իմամալի Ալիևին։

Կուսակցական կշտամբանքի են արժանի նշված տնտեսությունների ու հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք այդ մարդկանց հարցերը քննարկելիս դրսևորեցին անսկզբունքայնություն ու անհիմն ներողամտություն։

Կուսշրջկոմը, շրջանային ակտիվը և սկզբնական կուսկազմակերպություններից շատերն այժմ աշխատողներին նախկին չափանիշներով չեն մոտենում, հանդես են բերում սկզբունքայնություն։ Կադրեր ընտրելիս ձգտում ենք ճիշտ գնահատել նրանց իրական հնարավորությունները, տեսական ու մասնագիտա-

կան պատրաստականության և կատարելագործման մակարդակը, փորձն ու հմտությունը, քաղաքական ու գործնական մյուս հատկանիշները, որոնց կոմպլեքսում անշուշտ նկատի է առնվում խոսքի ու գործի ներդաշնակությունը։ Որոշակի քայլեր ենք արել գործիմաց մարդկանց շրջանի ժողովրդական տնտեսության վճռական տեղամասերում տեղաբաշխելու, նրանց կազմակերպական կարողությունները պետական առաջադրանքների կատարմանը ծառայեցնելու, դրական օրինակի ուժով ուրիշներին դաստիարակելու գործում։ Այս առումով բնորոշ է շրջանի Օխչօղլի գյուղի կոլտնտեսության օրինակը։ Տարիներ շարունակ տնտեսությունը ետ էր մնում, լավ չէին օգտագործվում նրա պոտենցիալ հնարավորությունները։ Կուսշրջկոմի հանձնարարությամբ Օխչօղլիի կոլտնտեսականները կոլտնտեսության վարչության նախագահ ընտրեցին Բ. Միրզաևին։ Նախագահի հմուտ ղեկավարությամբ կարճ ժամանակամիջոցում պատկերը փոխվեց։ Բարձրացավ գյուղատնտեսական աշխատանքների կազմակերպման ու ղեկավարման մակարդակը, մարդկանց պատասխանատվությունը գործերի վիճակի համար, լայն տեղ տրվեց ներտնտեսային սոցիալիստական մրցությանը, ամրապնդվեց աշխատանքային և արտադրական կարգապահությունը, լավագույն հողատարածությունները, տեխնիկան, ոռոգման ջուրը, պարարտանյութերն սկսեցին օգտագործվել հոգատարությամբ, ամրապնդվեց հանրային հոտի կերի բազան։ Արդյունքը եղավ այն, որ տնտեսությունը բռնեց վերելքի ուղին։ Այդ մասին են խոսում վերջին մեկուկես տարվա հաջողությունները։ Անցյալ տարի հացահատիկի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը, նախորդ տարվա համեմատությամբ, բարձրացավ 8,6 ցենտներով, իսկ շաքարի ճակնդեղինը՝ 140,3 ցենտներով, կամ՝ կրկնակի չափով։ Նույնը կարելի է ասել անասնապահական մթերքների արտադրության վերաբերյալ։ Անասունների լավ պահվածքի շնորհիվ տնտեսությունում անցյալ տարի, 1974 թ. համեմատությամբ, մսի արտադրությունն աճեց 52,2 տոկոսով, կաթինը՝ 24,9, բրդինը՝ 64,8 տոկոսով։ Կոլտնտեսությունը հաջողությամբ է կատարում մթերքների արտադրության և մթերումների պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, աշխատում է շահութաբեր։ Այս տարվա ցուցանիշներն ավելի բարձր են։ Բավական է ասել, որ տնտեսության մարդիկ, գործով պատասխանելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներին, արդեն հուլիսի 1-ին կատարեցին պետությանը մսի ու կաթի վաճառքի ինն ամսվա առաջադրանքները։

Եզրակացությունը պարզ է. արդյունքները ձեռք են բերվել համառ ջանքերի շնորհիվ։ Կոլտնտեսության նախագահ Բ. Միրզաևը, կուսբյուրոյի քարտուղար Վ. Ալիևն ակտիվի հետ միասին աշխատում են ամենայն պատասխանատվությամբ, լավ հարաբերություններ են հաստատել աշխատավորների հետ, ժամանակին են կատարում սեփական խոստումը։

Կոմունիստի խոսքի ու գործի ներդաշնակության օրինակ է շրջանի Ենիյոլի ոչխարաբուծական պետական տնտեսության սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Ջ. Կալանդարովի գործունեությունը։ Ունենալով գյուղատնտեսական բարձրագույն կրթություն և արտադրական ու քաղաքական աշխատանքի բավարար փորձ, նա առաջ է քաշվել կուսակցական աշխատանքի. կոմունիստները վստահել են նրան և ընտրել կուսբյուրոյի քարտուղար։ Լավն այն է, որ նա պահանջկոտ է մարդկանց նկատմամբ, կոնկրետ գործերով ստուգում է կոմունիստների խոսքի ճշմարտացիությունը, կուսժողովներում ու բյուրոյի նիստերում քննարկման է դնում նրանց ինքնահաշվետվությունները, կարողանում է համոզել ու գործնականորեն կազմակերպել, մոբիլիզացնել նրանց և աշխատավորության ուժերը՝ սովխոզի առջև կանգնած խնդիրները լուծելու համար։ Այդ ամենի շնորհիվ տնտեսությունում բարձրացել է հացահատիկի բերքատվությունը. անջրդի պայմաններում հեկտարից ստացվում է 17—23 ցենտներ միջին բերք։ Ամրապնդվել է կերի բազան, բարձրացել է ոչխարաբուծության եկամտաբերությունը. այս ճյուղը դարձել է շահութաբեր։

ՍՄԿԿ XXV համագումարում, Կենտկոմի հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ կուսակցականությունն



օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ»։ Հաշվի առնելով կուսակցության այս պահանջը՝ մենք խրախուսում ու գնահատում ենք նորի զարգացում, ակտիվություն ու ստեղծագործական նախաձեռնություն դրսևորող կոմունիստներին, ղեկավար աշխատողներին։ Գործելակերպի այդ հատկանիշները նպաստում են կուսակցության անդամի խոսքի ու գործի զոդմանը, ուժեղացնում պահանջկոտությունն իր և ընկերների նկատմամբ, անհաշտություն սերմանում թերությունների հանդեպ։

Կարելի է բերել Ջրաձոր գյուղի կոլտնտեսության նախագահ Ս. Ադամյանի, կաթնապրանքային ֆերմայի վարիչ Պ. Վարդանյանի օրինակը։ Աշխատանքի մեջ կոփված, բազմամյա փորձով հարուստ անձնավորություններ են նրանք, ունեն անհանգիստ բնավորություն և պրպտող միտք, նրանց մոտ խոսքն ու գործը սերտորեն շաղկապված են։ Երբ խոստանում են, անպայման կատարում են։ Նրանց նախաձեռնությամբ տնտեսությունը շրջանում առաջինը ձեռնամուխ եղավ մատղաշի ինտենսիվ աճեցման առաջավոր եղանակի արմատավորմանը և կարճ ժամանակամիջոցում հասավ ցանկալի արդյունքի։ Արդեն երրորդ տարին է, ինչ մատղաշն աճեցվում է այդ մեթոդով, և կովերի կազմը լրացվում է ցեղական երինջներով, իսկ արու հորթերը 330—350 կիլոգրամ միջին կենդանի քաշով, բարձր գիրությամբ վաճառվում են պետությանը։ Կոլտնտեսությունն ամեն տարի կատարում է ինչպես մսի, այնպես էլ կաթի արտադրության և մթերումների պլանային առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Օրինակ, այս տարվա անցած վեց ամսում յուրաքանչյուր կովից ստացվել է 1.368 կիլոգրամ կաթ, որն անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի մակարդակը գերազանցում է 513, իսկ շրջանի միջինը՝ 529 կիլոգրամով։ Անասնապահներն առաջին կիսամյակում կատարել են պետությանը կաթ վաճառելու իրենց տարեկան պարտավորությունը և շարունակում են վաճառքը։ Լուրջ եզրակացություն հանելով կուսակցության XXV համագումարի այն պահանջից, որ տասներորդ հնգամյակը արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման հնգամյակ է, նրանք միայն բարձրորակ կաթ են հանձնում պանրագործարան։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները հատուկ աշխատանք են տանում առանձնապես երիտասարդ կոմունիստների հետ. նրանց դաստիարակում են գաղափարական համոզվածության ոգով, ջանում են, որպեսզի նրանք պրակտիկայում շաղկապեն խոսքն ու գործը, ըմբռնեն դրանց ներքին կապերի էությունը և խզման վնասակարությունը։ Այս հարցերին մենք առավել ուշադրություն նվիրեցինք ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների առնչությամբ։ Հասկանալի է, որ կուսակցությունն առաջադրել է մեծ մասշտաբի ու դժվարին խնդիրներ, որոնց լուծման համար առաջ են քաշվել նոր, երիտասարդ կադրեր։ Նրանց պետք է սովորեցնենք՝ աշխատել բարձր կարգապահությամբ և կազմակերպվածությամբ, լինել մեր կյանքի առաջավորներ։ Իսկ դա պայմանավորված է ամենից առաջ նրանով, թե այս կամ այն կոմունիստը որքան լավ գիտե կուսակցության ծրագրի ու կանոնադրության հիմնական դրույթները և ինչպե՞ս է կյանքում իրականացնում դրանք։

Ասենք և այն, որ մեր գործունեությունը զերծ չէ թերություններից։ Մենք դեռևս չենք հասել կոմունիստի խոսքի ու գործի լիակատար միասնության ապահովմանը հասարակական կյանքի և արտադրության բոլոր օղակներում։ Կան տեղամասեր, առանձին կազմակերպություններ, որոնց ղեկավարությունը լավ չի ամրապնդված։ Կուսշրջկոմին չի հաջողվել այդ անել ռեզերվային կադրերի պակասի պատճառով։

Մեր պարտքն է՝ լուրջ եզրակացություն անել ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների որոշումներից ու պահանջներից, բարձրացնել կոմունիստների, բոլոր կադրերի հետ տարվող կազմակերպական աշխատանքի մակարդակը, ամրապնդել նրանց խոսքի ու գործի սերտ միասնությունը, ապահովել առաջադրված խնդիրների հաջող լուծումը։

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ԸՆԿԵՐՆԵՐԸ ՆՐԱՆ ԼՈՒՉՈ ԵՆ ԱՆՎԱՆՈՒՄ

ՎՈԼՈԴՅԱ ՏԵՅՏԵԼԲՈՅՄ
Չիլիի կոմունիստական կուսակցության Կենտկոմի քաղաքական հանձնաժողովի անդամ

**Լրացավ Չիլիի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Լուիս Կորվալանի 60 տարին. արդեն երեք տարի է, ինչ նա տառապում է ֆաշիստական դիկտատուրայի զնդաններում: Մեր երկրում քաջ գիտեն և գնահատում են Կորվալանին՝ որպես մի մարդու, որն իր կյանքն անմնացորդ նվիրաբերել է բանվոր դասակարգի, Չիլիի աշխատավորության արմատական շահերի պաշտպանությանը, որպես Չիլիի բոցաշունչ հայրենասերի և ինտերնացիոնալիստի, սովետական և չիլիական ժողովուրդների բարեկամության ջատագովի, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների վրա հիմնված համաշխարհային կոմունիստական շարժման միասնության համար պայքարող հետևողական մարտիկի: Հաշվի առնելով նրա ծառայությունները հանուն դեմոկրատիայի, խաղաղության ու սոցիալական առաջընթացի և ընդդեմ իմպերիալիզմի ու ֆաշիզմի մղվող պայքարում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Լուիս Կորվալանին պարգևատրեց Լենինի շքանշանով: Ամբողջ աշխարհում ուժեղանում է շարժումը դիկտատուրայի զնդաններից խունտայի № 1 կալանավորին ազատելու համար:**

Չիլիի ժողովուրդը, կոմունիստների կուսակցությունը, ընկերները նրան կոչում են Լուչո, ֆաշիստները՝ «ռազմագերի»... Նրա տարբեր անուններն արտահայտում են, առաջին դեպքում՝ սեր, հարգանք, մյուս դեպքում՝ ատելություն և սարսափ:



Սեպտեմբերի 27-ին լրացավ երեք տարի այն օրվանից, երբ Սանտյագոյում խունտան ձերբակալեց Չիլիի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Լուիս Կորվալանին: Նրան մի բանտից նետում էին մյուսը՝ Զինվորական դպրոց, Դոսոն կղզի, Ռիտոկե, Տրես Ալամոս, նորից Ռիտոկե և Տրես Ալամոս, որտեղ և այժմ գտնվում է նա:

Բանտը կրճատում է տարածությունը և երկարացնում ժամանակը: Չիլիի բանտերում շատ բանտարկյալներ կան՝ քաղաքացիական անձինք և զինվորականներ, տղամարդիկ և կանայք, տարբեր կուսակցությունների ներկայացուցիչներ:



Նրանց համար հորիզոնն այն է, ինչը կարող են տեսնել իրենց խցիկի ճեղքից կամ համակենտրոնացման ճամբարի բակում: Սակայն Չիլիի քաղաքական բանտարկյալների համար բարոյական տարածությունն այլ հորիզոններ ունի. Դրանք հորիզոններն են ամբողջ աշխարհի, որտեղ չթուլացող ուժով պայքար է ծավալվում նրանց ազատության համար: Կորվալանի անունը երկրի բոլոր քաղբանտարկյալների խորհրդանիշն է: Նրա ազատության համար մղվող պայքարը վերածվել է հզոր շարժման, որն անցել է քաղաքական և աշխարհագրական սահմանները, և, ըստ էության, դարձել մարդու իրավունքների պաշտպանության համար ծավալված համընդհանուր կամպանիա:

Այս օրերին ֆաշիստական խունտայի № 1 կալանավորն իր տարիների բարձունքից (սեպտեմբերի 14-ին լրացավ նրա 60 տարին), թերևս, մտովին հայացք է ձգում իր ապրած կյանքին: Հավանաբար նա հիշում է պատանեկան տարիները, երբ 16 տարեկանում կոմերիտական դարձավ: Հիշում եմ, մի ժամանակ մենք միասին աշխատում էինք «Նոր աշխարհ» բազմանշանակ խորագիրը կրող երիտասարդական թերթում. Միասին երազում էինք... երազում այնպիսի աշխարհի մասին, որտեղ ընդմիշտ ոչնչացված կլինեն ֆաշիզմի արմատները: Այդ օրը կգա, կհայտնվի այդ աշխարհը:

### ԼԵՆԻՆՅԱՆԸ, ՀԱՅՐԵՆԱՍԵՐԸ, ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԸ

Կորվալանի կյանքը XX դարի չիլիական կամ լատինա-ամերիկյան հեղափոխականի տիպիկ օրինակ է: Հասարակական կյանքը մանկուց էր նրան ձգում, և նա անմնացորդ նվիրվեց պայքարի՝ չմտածելով ո՛չ իր բարեկեցության, ո՛չ էլ հաջողությունների ու փառքի մասին: Նա կամովին ընտրեց պայքարի դժվար ճանապարհը՝ արդարության ճանապարհը, գիտակցելով, որ ամենավսեմ պատասխանատվությունը դարաշրջանի որդին լինելն է:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը լույս սփռեց նրա պատանեկան տարիների, նրա երիտասարդության վրա: Նրա ուղեցույցը Լենինն էր, որի գաղափարներով տոգորված՝ Լուիս Կորվալանը դարձավ նվիրված ինտերնացիոնալիստ, խանդավառ հայրենասեր:

Զինվորական դպրոցում բանտարկված ժամանակ, 1973 թ. հոկտեմբերին նա իտալական ռադիոյի և հեռուստատեսության թղթակից Ֆրանկո Կատուչչիին ասաց. «Մի սպա երկու օր առաջ ինձ մի թերթ ցույց տվեց, որտեղ ինձ մեղադրում էին «հայրենիքի դավաճանության» մեջ: Դա ողբերգազավեշտական մեղադրանք է: Մենք՝ Չիլիի կոմունիստներս, միշտ պայքարել ենք միայն հանուն առաջադիմության, մեր երկրի անկախության, հանուն աշխատավորների ազատագրման»: Այս խոսքերում նրա ողջ գործունեության և հայրենասիրության գիտակցման ճշգրիտ սինթեզն է:

20 տարի առաջ մենք ընկերներ Սոբիլյայի, Խորխե Մոնտեսի և ուրիշների հետ ականատես էինք նրա գործունեությանը Պիսագուայի համակենտրոնացման ճամբարում: Եվ եթե մեզ հարցնեին, թե ո՞րն է նրա գլխավոր հատկանիշը, կարելի էր ասել, որ Կորվալան-կալանավորի վարքագծում ամենատպավորիչը նրա խոր լրջությունն էր, ունակությունը՝ ընկալել բանտը գրեթե որպես նոր աշխատավայր: Այսօր նա այնպիսին է, ինչպիսին որ երեկ էր: Այդ պատճառով էլ նա պատասխանեց թղթակցին. «Իմ խիղճը հանգիստ է: Ես սիրում եմ ազատությունը, բայց բանտից չեմ վախենում: Ես սիրում եմ կյանքը, բայց չեմ վախենում մահից: Ես չեմ խնդրում, որ ինձ մտցնեն նահատակների ցուցակի մեջ: Եթե ինձ դատապարտեն մահվան, ես նահատակ կդառնամ, ոչ իմ կամքով»:

Եվ եթե այսօր Կորվալանը կենդանի է, ապա՝ միայն շնորհիվ համերաշխության միջազգային շարժման, որը, հսկայական անխորտակելի վահանի նման, պահպանում է նրան: Այսպիսով. համերաշխության շարժումը և նրա ժողովրդի պայքարը միայն կարող են դառնալ Կորվալանի ազատման հիմքը: Նա այդ բանը լավ է հասկանում: Երբ 1974 թ. սկզբներին բրազիլական թղթակից Անտոնիու Ալբերտու Պրադոն հարցրեց նրան, թե նա գիտե՞ արդյոք իր կյանքի պահպանման համար ծավալված լայն կամպանիայի մասին, Կորվալանը պատասխանեց, թե այստեղ ոչ մի զարմանալի բան չկա: «Միջազգային համերաշխությունը միշտ էլ ավանդույթ է եղել կոմունիստների, և ոչ միայն կոմունիստների, միջավայրում»,— ասաց նա:

Դա իրոք որ չէր կարող զարմացնել նրան: Մեզ բոլորիս էլ կոփել է այդ հիանալի դպրոցը: Կորվալանը լավ է հիշում, թե ինչպես էր թրծվում իր ինտերնացիոնալիստական բնավորությունը, երբ ֆաշիզմի համակենտրոնացման ճամբարների փշալարերի ետևում գտնվող Էռնեստ Թելմանի համար բարձրանում էր համերաշխության ալիքը: Դեռևս պատանի Կորվալանը այդ բանը հասկացավ արդեն այն ժամանակ, երբ միջազգային համերաշխությունն ունակ գտնվեց Հիտլերի և Գյորինգի ճանկերից պոկել մեծ հեղափոխական Գեորգի Դիմիտրովին՝ նրա ուսուցիչներից մեկին: Անցյալի այդ օրինակները Կորվալանի համար կոմունիստների վարքի փայլուն տիպար էին: Բախվելով դաժան փորձությունների հետ, նա հեղափոխականի արժանա-

պատվության մի էջ գրեց, որը փայլուն տիպար է հեղափոխականների նոր սերունդների համար:

Բանտում Կորվալանը չի լռում և չի թաքցնում իր կարծիքը: Լուիս Կորվալանը կալանավոր-մեղադրող է: Ամերիկյան պետությունների կազմակերպության՝ մարդու իրավունքների հանձնաժողովի առաջ նա ամբողջ ձայնով մերկացնում է դահիճներին. «Խոշտանգումների կիրառման պատասխանատվությունն ընկնում է կառավարության և, առաջին հերթին, գեներալ Պինոչետի վրա»: Եվ ավելացնում է. «...քանի որ մենք գտնվում ենք երես առ երես բացարձակապես ինքնագլուխ, բացարձակապես անօրեն, բացարձակապես հակասահմանադրական կառավարության հետ»:

Հպարտ և անդրդվելիորեն նա նորից հաստատում է կոմունիստի իր սկզբունքները: Հեղաշրջումից դեռ մեկ ամիս չանցած արտասահմանյան թղթակցին նա հայտարարեց. «Այդ պարոնները սխալվում են, եթե հույս ունեն ոչնչացնել մարքսիզմը: Դա բազմիցս հաստատվել է անցյալում, երբ աշխատավորության թշնամիները և ժողովրդի դավաճանները փորձում էին խեղդել մարքսիզմը: Դա կհաստատվի և ապագայում»: Ասված խոսքերը հիանալի պատասխան են Պինոչետի հերթական հակակոմունիստական հիստերիային: Իրոք, ֆաշիստները գալիս են ու անցնում: Ժողովուրդը մնում է:

Իր փոքրիկ, մարդուն մեկ քառակուսի մետր հասնող, բանտախցից Կորվալանը մերկացնում է տեռորը, մեղադրում է կերբերոսներին, որոնք «կյանքի առօրյա նորմ են դարձնում վիրավորանքներն ու պատիժները, փորձում են ոչնչացնել (նրան) ավելի ու ավելի սաստկացող ծաղրուծանակի պայմաններում»: Սակայն ո՛չ Կորվալանին, ո՛չ նրա հիանալի ընկերներին, ժողովրդական միասնության բոլոր կուսակցությունների անդամներին, չկոտրեցին ո՛չ խոշտանգումները, ո՛չ հարկադիր աշխատանքը, ո՛չ վիրավորանքն ու ծաղրուծանակը:

## ՊՈՂՊԱՏԻՑ ԱՄՈՒՐ ՈՒ ՃԿՈՒՆ

Լուիս Կորվալանն անցել է գրեթե այն բոլոր փորձություններով, որոնցով հղի է հեղափոխականի կյանքը: Անշուշտ, նրան սպասում են նոր փորձություններ: Սակայն ոչինչ չի կարող նրան ընկճել: Մինչև իր կյանքի վերջին օրերը նա բարձր կպահի կոմունիզմի և հայրենիքի դրոշը:

Պողպատից ամուր և ճկուն է մեր ընկեր Լուիս Կորվալանը: Նա անգլիացի փիլիսոփա Կարլեյլի պատկերացրած հերոսը չէ՝ մի մարդ, որն իր մեջ զգում է հասարակությունում մեծ դեր կատարելու առաքելությունը, բարձրագույն էակ, որը կոչված է ուղղություն ցույց տալու հանելուկային և անողոք «պատմություն» աստվածուհով հրապուրված ամբոխներին ու ժողովուրդներին: Ո՛չ: Նա մեր եղբայրն է: Հասարակ մարդ, մարտիկ: Ավելի քան քառասուն տարի շարունակ մենք տեսել ենք, թե ինչպես էր նա արտահայտում հարազատ ժողովրդի նվիրական իղձերն ու ձգտումները: Նա աշխատավորների հոգեկան աշխարհի լավագույն հատկանիշների մարմնացումն ու կրողն է: Եվ այն ժողովրդականությունը, որ նա վայելում է բոլոր երկրների աշխատավոր մասսաների շրջանում, նրան գլխապտույտի չբերեց. նա մնաց որպես ապագան տեսնող անդրդվելի հեղափոխական, որն սթափ է գնահատում իր անձնական ծառայությունները, օժտված է բանտապահների կատաղի պրովոկացիաների հանդեպ զարմանալի ինքնատիրապետմամբ, լիովին հասկանում է, որ իր մասին ասված ամեն մի լավը վերաբերում է հարազատ, մարտնչող ժողովրդին:

Ես լսել եմ, թե ինչպիսի անկեղծ հիացմունքով էին խոսում Կորվալանի մասին Դոսոն կղզու նրա կալանավոր ընկերները: Գազան-լեյտենանտը, կարաբինն ուղղելով Կորվալանի վրա, նրան սպառնում է մահով, եթե նա չկատարի աբսուրդ և վիրավորական հրամանը: Կորվալանը նրան պատասխանում է մերժումով՝ մի քայլ առաջ գալով և նայելով ուղիղ տանջողի աչքերին:

Չնայած այն բանին, որ նա արտաքնապես փխրուն կազմվածք ունի և անընդհատ մահվան վտանգի տակ է, նրա մեջ ոչ մի բան ողբերգական եղերգի երանգ չի ընդունում: Նրա խոսքը պայքարի է կոչում, տպավորիչ է, լայն արձագանք է գտնում: Կորվալանը ժողովրդի ազատագրական տենչերի արտահայտիչն է, ռահվիրան:

Խունտային չհաջողվեց և երբեք չի հաջողվի Չիլիի ժողովրդին ծնկի բերել: Այդ բանը խոստովանեց նաև Պինոչետը վերջերս Սանտյագոյում կայացած խորհրդակցությունում: Նա վեց ամսով ևս երկարաձգեց արտակարգ դրությունը երկրում: Ժողովրդի դեմ մղվող ներքին պատերազմը շարունակվում է, քանզի չիլիացիները չեն ընդունում ֆաշիզմը: Արյունալի դիկտատուրան, ինչպես երկրի ներսում, այնպես էլ ողջ աշխարհում ավելի ու ավելի սաստկորեն է մեկուսացվում: Այդ դիկտատուրան իր դաժանություններն ու բռնությունները տարածել է նաև քաղաքական մյուս հոսանքների՝ քրիստոնեական դեմոկրատների և կաթոլիկ եկեղեցու վրա: ԴԻՆԱ-ի՝ պինոչետյան գեստապոյի, գործակալները ազգային անվտանգության կեղծ պատրվակով ոխտադրժորեն հարձակվեցին երեք եպիսկոպոսների վրա: Ի պատասխան դրա՝ խունտայի մարդասպանները բանադրանքի ենթարկվեցին եկեղեցու կողմից:

Հեղաշրջումից երեք տարի անց գործազրկությունը Չիլիում ավելի մեծաթիվ է, քան երբևէ: Ճգնաժամն ընդգրկել է երկրի էկոնոմիկան: Այն ավելի է սրվում քաղցի և աղքատության հետևանքով: Հազարավոր երեխաներ մեռնում են թերսնումից: Չիլին աշխատավորների համար վերածվել է դժոխքի, սակայն այն դրախտ է դարձել արտասահմանյան մոնոպոլիաների և տեղական հարուստների (ինչպես նրանց ժողովուրդն է անվանել)՝ «պիրանիաների» և «կոկորդիլոսների» համար:

## ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐԻ ՀԵՆԱՐԱՆՆ Է

Սակայն այսօր բանվոր դասակարգը պայքարում է ավելի կազմակերպված և արդյունավետ, քան երբեկ: Նա պաշտպանում է իր իրավունքները, գործում է, միավորվում, անարգանքի սյունին է գամում խունտայի «դեղին» արհմիություններին: Հացի, աշխատավարձի և աշխատանքի իրավունքի, ազատության և կյանքի համար գործարանների, ֆաբրիկաների, նավահանգիստների, գյուղատնտեսական ձեռնարկությունների բանվորների մղած պայքարին ներգրավվում են օպոզիցիայի այլ ներկայացուցիչներ: Նրանք պայքարում են ֆաշիզմը երկրում ջախջախելու, Չիլին և չիլիացիներին դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի ուղին վերադարձնելու, այն բանի համար, որպեսզի վերջ տրվի քաոսին, ճնշումներին, արյունահեղությանը:

Ելնելով ստեղծված իրավիճակից՝ ժողովրդական միասնության կուսակցություններն ակտիվացրել են պայքարը, ստեղծել Գործադիր քարտուղարություն, որը լիազորված է հանդես գալ բլոկի մեջ մտնող բոլոր կուսակցությունների անունից: Վերջերս հավանության արժանացավ մի կարևոր փաստաթուղթ, որը երկրի բոլոր լայն հակաֆաշիստական ուժերին, ներառյալ քրիստոնեական դեմոկրատներին, կոչ է անում՝ միավորվել, ուրվագծում է համատեղ անհապաղ գործողությունների ծրագիր, նախանշում ֆաշիզմի տապալումից հետո չիլիական հասարակության հետագա ուղին: Այդ անողոք պայքարում մեզ ոգեշնչում է Չիլիի պայծառ ապագայի համար պայքարող կայուն մարտիկի, իր երկրի հավատարիմ զավակի և մեր կուսակցության գլխավոր քարտուղարի՝ Լուիս Կորվալանի անունը:

Նրանց, ովքեր Չիլիի սահմաններից դուրս աջակցում են մեր շարժմանը, մենք ասում ենք՝ մեր ժողովուրդը համերաշխությունն ընդունում է որպես հենարան՝ իր կյանքում և պայքարում, որն ավելի ու ավելի լայն և բացահայտ ձևերով է դրսևորվում: Այդ համերաշխությունը Չիլիում մեծ արձագանք է գտնում: Ի պատասխան դրա՝ չիլիացիները հայտարարում են. «Մեզ չեն հաղթի: Ինչ էլ որ լինի, վերջին հաշվով մենք կհաղթենք»: Մեր երկրում և ամբողջ աշխարհում լայն արձագանք գտավ ՍՄԿԿ XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի հուշակած ջերմ կոչը՝ նոր բարձունքների հասցնել Սալվադոր Ալիենդեի և Պաբլո Ներուդայի՝ ժողովրդի հետ համերաշխության շնորհակալ գործը:

Օրերս մենք բերկրալի լուր ստացանք՝ միջազգային կոմունիստական շարժմանը մատուցած ականավոր ծառայությունների, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի, իմպերիալիզմի և ֆաշիզմի դեմ մղվող պայքարին ակտիվորեն մասնակցելու, սովետական և չիլիական ժողովուրդների բարեկամությունն ամրապնդելու գործում ներդրած մեծ ավանդի համար և ծննդյան վաթսունամյակի կապակցությամբ ընկեր Լուիս Կորվալանը պարգևատրվեց Լենինի շքանշանով: Այդ պարգևը վառ աստղի նման կշողշողա ոչ միայն ֆաշիստական զնդանների № 1 կալանավորի կրծքին, այլև հպարտության խորհրդանիշ և կենարար լույսի աղբյուր է յուրաքանչյուր չիլիացու համար: Մենք շնորհակալություն ենք հայտնում ՍՄԿԿ-ին և սովետական կառավարությանը այդ պարգևի համար:

Ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը Լուիս Կորվալանին հղած ուղերձում. «Լենինի շքանշանով Ձեզ պարգևատրելը ոչ միայն իմպերիալիզմի, ֆաշիզմի և ռեակցիայի դեմ, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի, կոմունիզմի մեծ իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում ունեցած Ձեր աչքի ընկնող ավանդի ճանաչումն է, այլև ՍՄԿԿ-ի, ամբողջ սովետական ժողովրդի եղբայրական համերաշխության զգացմունքների արտահայտությունն է Չիլիի կոմունիստների, դեմոկրատների և հայրենասերների նկատմամբ, հիացմունքի արտահայտությունն է հեղափոխականի այնպիսի տոկունության նկատմամբ, ինչպիսին Դուք ցուցաբերում եք՝ գտնվելով բանտարկության մեջ»:

«За рубежом», № 38, 1976.

# ԱԼԵՔՍԱՆԴՐ ԾՈՒԼՈՒԿԻՁԵ

*(ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*



*Սովետական մարդիկ երախտագիտությամբ են հիշում բոլոր նրանց, ովքեր իրենց կյանքը գիտակցաբար նվիրաբերեցին սոցիալիստական ապրելակերպի հաստատմանը։ Այդ վեհ մարտիկները պայծառ անհատականություններ էին, որոնց կյանքն ու գործը ուսանելի են ներկա, մանավորապես երիտասարդ սերունդների համար։ Մեր նվաճած բարձունքներից ավելի ակնառու է երևում հեղափոխական գործիչների ավանդը, որոնց անխախտ հավատը սոցիալական արդարության ու ինտերնացիոնալիզմի հաղթանակի նկատմամբ անձնուրացության վսեմ օրինակ է։*

*Նվիրված մարքսիստ-հեղափոխական ու հետևողական ինտերնացիոնալիստ էր նաև Ալեքսանդր Ծուլուկիձեն, մի մարդ, որը մեծ համոզվածությամբ նետվեց հեղափոխական հորձանուտները, փոխվեց, առնականացավ որպես մարքսիզմի տեսաբան ու հմուտ պրոպագանդիստ, մինչև կյանքի վերջ անմնացորդ պայքարեց հանուն ժողովուրդների բարեկամության, ազատության ու իրավահավասարության։* Չնայած կարճատև, սակայն ուսանելի կյանք ու հեղափոխական գործունեություն է ունեցել Ալեքսանդր Ծուլուկիձեն։ Նա ծնվել է 1876 թ. նոյեմբերի 13-ին, արևմտյան Վրաստանի Խոնի ավանում, իշխան Գրիգորի Ծուլուկիձեի ընտանիքում։ Փոքրիկ Սաշային դաստիարակելու և կրթելու համար, նախ, մասնավոր ուսուցիչներ են հրավիրում տուն, ապա ուղարկում Քութաիս, ուր նա սկզբում սովորում է Խլեբնիկովի պանսիոնում, ապա՝ դասական գիմնազիայում։ 1894 թ. 18-ամյա Ալեքսանդրը թողնում է գիմնազիան։ Երեք տարվա ընդմիջումից հետո նա կրթությունը շարունակելու համար մեկնում է Մոսկվա։ 1897 թ. Ալեքսանդրը որպես ազատ ունկնդիր ընդունվում է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և երկու տարի ուսումնասիրում իրավաբանական գիտություններ։

Ալեքսանդր Ծուլուկիձեն Մոսկվա էր մեկնել արդեն որպես համոզված հեղափոխական։ Գիմնազիան թողնելուց հետո 19-ամյա Ալեքսանդրը ընդունվում է Քութաիսի «Մեսամե դասի» խմբակի մեջ։ Իշխանի որդու նման քայլը ցնցող տպավորություն է թողնում հարազատների ու ընկերների շրջապատում։

Հետևելով Ռուսաստանում զարգացող իրադարձություններին, հատկապես տեղեկանալով, որ Պետերբուրգում Վ. Ի. Լենինը, մարքսիստական խմբակները միավորելով, ստեղծել է մեկ միասնական «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միություն», 1898 թ. «Մեսամե դասիում» Վ. Կեցխովելու, Ա. Ծուլուկիձեի գլխավորությամբ կազմավորվում է մարքսիստական միավորում։ Այդ ժամանակներից էլ հենց Անդրկովկասի մտավորականության առաջադեմ ներկայացուցիչները՝ Մ. Ցխակայան, Լ. Կեցխովելին, Ֆ. Մախարաձեն, Ի. Ստալինը, Ստ. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Ս. Սպանդարյանը և ուրիշներ հաստատապես կանգնում են հեղափոխական-մարքսիստական ուղու վրա։

1896—1897 թթ. Ալ. Ծուլուկիձեն հեղափոխական գործնական աշխատանք էր կատարում Թիֆլիսի ու Բաքվի պրոլետարների շրջանում։



Մոսկվայում Ալ. Ծուլուկիձեն, ինչպես ինքն է վկայում իր նամակներից մեկում, հափշտակվում է հեղափոխական դեմոկրատներ Գերցենի, Բելինսկու, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի գաղափարներով։ Գաղափարներ, որոնք այնուհետև կայուն հիմք են ծառայել երիտասարդ հեղափոխականի համար՝ խորապես ուսումնասիրելու Մարքսի և Էնգելսի աշխատությունները, Վ. Ի. Լենինի՝ նարոդնիկների ու «լեգալ մարքսիստների» դեմ ուղղված գործերը։

Մի քանի տարի հետո՝ 1904 թ., Թիֆլիսում Ալ. Ծուլուկիձեն հրատարակեց «Հատվածներ քաղաքատնտեսությունից» խորագրով աշխատությունը։ Հեղինակն աշխատության նախաբանում հայտնում է, որ Կ. Մարքսի «Կապիտալի» տնտեսական սկզբունքները դեռևս ոչ ոք ամբողջովին չի շարադրել վրացերեն լեզվով։ Ալ. Ծուլուկիձեն դա մեծ բաց է համարում վրացական իրականության համար և գտնում, որ այդ բացի վերացմանը պետք է ձգտի յուրաքանչյուր ոք, ով ունի ձգտում և ուժեր։ Այդպիսի կարողություն Ալ. Ծուլուկիձեն գտնում է իր մեջ և պարզ, հասկանալի ձևով վրաց ընթերցողին է ներկայացնում տնտեսագիտության կարևորագույն սկզբունքները։

Մոսկվայում ապրելով տնտեսական չափազանց ծանր պայմաններում, Ալ. Ծուլուկիձեն համառորեն խորանում է մարքսիզմի մեջ, հիմնովին ուսումնասիրում քաղաքատնտեսություն, փիլիսոփայություն, պատմություն և բանվորական շարժման ժամանակի գրականությունը։ Միաժամանակ նա Մոսկվայից ուշի-ուշով հետևում էր Վրաստանի հասարակական-քաղաքական կյանքին։ Նրա գործունեության մոսկովյան ժամանակաշրջանին է վերաբերում «Մեսամե դասի» օրգան «Ղվալի» («Ակոս») շաբաթաթերթի երեք համարներում 1898 թ. հրապարակած «Նորի կերպարը մեր կյանքում» հոդվածը։ Սա գրաքննադատության մի փայլուն օրինակ է, որ վկայում է հեղափոխական գործչի լայն մտահորիզոնի, նրա բարձր զարգացածության, ազգային գրականության նկատմամբ ունեցած լավատեսության մասին։

Երկու տարի Մոսկվայում մնալուց հետո՝ 1899 թ. Ա. Ծուլուկիձեն վերադառնում է Թիֆլիս։

Չնայած շարունակաբար վատթարացող առողջությանը, Ա. Ծուլուկիձեն իրեն նվիրում է մարքսիզմի պրոպագանդմանը՝ վրացական ամենալայն ընթերցողների շրջանում, ինչպես նաև եռանդուն հեղափոխական գործունեություն ծավալում՝ դառնալով մի շարք ցույցերի, գործադուլների կազմակերպիչն ու ոգեշնչողը, հեղափոխական բոցաշունչ թռուցիկների հեղինակը։ 1899 թ. «Ղվալի» հանդեսի վեց համարներում հրապարակվում է Ա. Ծուլուկիձեի «Զրույց ընթերցողների հետ» հոդվածաշարը։ Մտահոգված այն իրողությամբ, որ վրաց ընթերցողն իր մայրենի լեզվով չի կարողանում ծանոթանալ մարքսիստական գրականությանը, Ծուլուկիձեն իր պարտքն է համարում զրուցաշար սկսել ընթերցողների հետ, նրանց պարզ, մատչելի լեզվով բացատրել, հասկանալի դարձնել ժամանակի առաջադիմական գաղափարախոսությունը։ Այս հոդվածաշարն աչքի է ընկնում իր պայծառ լավատեսությամբ։ Նա հույս է տածում, որ ոչ հեռավոր ապագայում իրենց մոտ էլ հանդես կգա հասարակական կյանքը հետազոտողների հարուստ, ծանրակշիռ գիտելիքներով զինված մի ամբողջ խումբ։ Անդրադառնալով ապագային, Ա. Ծուլուկիձեն գտնում է, որ հեղափոխական սերունդների իդեալները պետք է լինեն գալիքի մեջ, իսկ ներկան հետաքրքրական է այնքանով, որքանով այն հանդիսանում է ապագայի հիմքը։ Նրա կարծիքով մշտական փոփոխությունը բնության օրենքն է, որի ուժին չի կարող հակադրվել ոչ մի կամակորություն և հին կարգերի նկատմամբ համախոհություն։ Այնուհետև Ալ. Ծուլուկիձեն, բարձր գնահատելով գիտության դերը, իր ընթերցողներին բացատրում է, որ գիտությունն աճել է կյանքի հետ, որ մարդն ստեղծել է գիտությունը, որպեսզի հեշտացնի իր կյանքի պայմանները և, իսկապես, այդ բանին հասել է ժամանակակից տեխնիկայի բարձր զարգացումով։ «Մարդն ազատվել է բնության ստրկությունից,— ընդգծել է Ա. Ծուլուկիձեն,— և ինքն է դարձել նրա տերը» (Նույն տեղը, էջ 23)։

Նույն 1899 թ. Ա. Ծուլուկիձեն «Ղվալի» թերթի չորս համարներում տպագրում է «Երազանք և իրականություն» հոդվածը։ Այստեղ նա խորաթափանց մտքով և հստակ շարադրությամբ ընթերցողներին է ներկայացնում հասարակական ֆորմացիաների պատմությունը, դասակարգային պայքարի մարքսիստական տեսությունը։

«Երազանք և իրականություն» հոդվածաշարում բարձրացրած հարցերի հիման վրա Ա. Ծուլուկիձեն 1902 թ. գրում է նույն խորագրով մարքսիստական աշխատությունը։ Այդ գործը 1903-ին առանձին գրքով լույս է տեսնում Քութաիսում։ Աշխատության մեջ Ա. Ծուլուկիձեն ջախջախում է Վրաստանի սոցիալ-ֆեդերալիստների կուսակցության հիմնադիր, սոցիալ-դեմոկրատների մոլի հակառակորդ Արչիլ Ջորջաձեի և նրա համախոհների բուրժուական գաղափարախոսությունը։

Արգասավոր էր 1899 թ. Ա. Ծուլուկիձեի ստեղծագործական կյանքում։ Այդ տարի նա «Ղվալի» հանդեսում հրապարակեց նաև «Տնտեսական գիտությունների պատմությունից» հոդվածաշարը։ Քննադատելով ֆիզիոկրատների և նրանց տիպիկ ներկայացուցիչ Ֆրանսուա Քենեի «Տնտեսական կյանքում լիակատար ազատություն» հանրահայտ տեսությունը, Ա. Ծուլուկիձեն ընդգծում է, որ այդ «ազատությունից» օգտվում են միայն ու-

ժեղները և Թուլլերին զրկում ազատության վերջին մնացորդներից։

Մարքսիստական փիլիսոփայության սկզբունքներով հագեցած աշխատություններում Ա. Ծուլուկիձեն գիտական խորությամբ ու հետևողականությամբ ծավալեց տեսական վիճխարի գործունեություն, բարձրացրեց պրոլետարիատի դասակարգային պայքարի անհրաժեշտության հարցը, գտավ, որ բանվոր դասակարգը չի կարող իր պայքարը հաղթանակով ավարտել առանց քաղաքական կուսակցության։ Նա հայտարարեց, որ «կուսակցությունը հանդիսանում է դասակարգի գիտակից, կազմակերպչորեն ձևավորված մասը»։ Իր աշխատություններում Ա. Ծուլուկիձեն անդրադարձել է մտավորականության դերին, ազգային հարցին, վրացերեն լեզվի զարգացմանը, պատմության մեջ ժողովրդական զանգվածների և անհատի կապերին, մարքսիստական փիլիսոփայության և քաղաքատնտեսության բազմաթիվ խնդիրների։

1902—1903 թվականներին Ա. Ծուլուկիձեն տեսական աշխատանքներին զուգընթաց, կլանվում է նաև հեղափոխական պրակտիկ գործունեությամբ։ Արևմտյան Վրաստանի գյուղական շրջաններում հեղափոխական շարժումները ղեկավարելու համար, Ա. Ծուլուկիձեի գլխավորությամբ ստեղծվում է «Գյուղական աշխատավորների Քութաիսի կոմիտեն»։ Այնուհետև համանման գործունեությամբ նա հայտնվում է Սուխումի քաղաքում, ուր միաժամանակ բուժվում էր։

Ալեքսանդր Ծուլուկիձեի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ ստեղծվում է ՌՍԴԲԿ-ի Իմերեթա-մենգրելական կոմիտեն։ «Մեսամե դասի» հեղափոխական թևը, համախմբվելով «Բրձոլա» թերթի շուրջը, նախաձեռնում է Անդրկովկասի բոլոր սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների միավորման գործը։ Ինչպես հայտնի է, 1903 թ. մարտին Թիֆլիսում հրավիրվում է այդ կազմակերպությունների առաջին համագումարը, որն ստեղծեց ՌՍԴԲԿ Կովկասյան միություն և ընտրեց այդ միության ղեկավար մարմին՝ Կոմիտե։ Կոմիտեի կազմում էին Ի. Ստալինը, Ա. Ծուլուկիձեն, Ֆ. Մախարաձեն, Բ. Կնունյանցը, Մ. Բոչորիձեն և ուրիշներ։ Հետագայում ՌՍԴԲԿ Կովկասյան միության Կոմիտեի կազմի մեջ մտան Ստ. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Վ. Բոբրովսկին, Մ. Դավիթաշվիլին, Ն. Ալաջալովան, Դ. Պոստոլովսկին։

Երբ կուսակցության երկրորդ համագումարում ՌՍԴԲԿ-ն պառակտվեց երկու մասի՝ բոլշևիկների ու մենշևիկների, Ա. Ծուլուկիձեն առանց տատանվելու հաստատակամորեն կանգնեց լենինյանների կողմը և ավելի մեծ կրքոտությամբ պայքար մղեց մենշևիկների ու նրանց ձայնակից «Մեսամե դասի» աջ թևի դեմ։ Ուշագրավ են այդ ժամանակներում Ա. Ծուլուկիձեի ձեռքով գրված թռուցիկները։ Նրանցից մեկում, Բաթումի սոցիալ-դեմոկրատական բանվորական կոմիտեի անունից Ա. Ծուլուկիձեն կոչ է անում բանվոր դասակարգին. «Մենք ցույց ենք տվել, որ մեզ համար անպայման անհրաժեշտ է ոչնչացնել մասնավոր սեփականության վրա հիմնված ամբողջ ժամանակակից կապիտալիստական կարգը և նրա փոխարեն հաստատել նոր, սոցիալիստական կարգ։ Բայց սոցիալիզմն իրականացնելու համար անպայման անհրաժեշտ է իր ձեռքը վերցնել ողջ պետական իշխանությունը... Այսպիսով, եղբայրներ, հանուն քաղաքական իրավունքների, հանուն սոցիալիզմի, ժամանակակից պետությունը ոչնչացնելու միջոցով ձեր ձեռքը վերցրեք ողջ պետական իշխանությունը» (նույն տեղը, էջ 308—309)։

Ա. Ծուլուկիձեն մեծ ինտերնացիոնալիստ էր, ժողովուրդների բարեկամության ջատագով։ Նա գտնում էր, որ աշխարհի բոլոր ազգերի համար կապիտալի լծից ազատագրվելը պատմական անհրաժեշտություն է։ Ուստի և, անկախ ազգային պատկանելիությունից, աշխարհի բոլոր աշխատավորները պետք է միավորեն իրենց ջանքերը՝ հանուն սոցիալիստական հասարակարգի։ Ա. Ծուլուկիձեն բարեկամական սերտ կապեր ուներ հայ մարքսիստ հեղափոխական գործիչների հետ և բարձր էր գնահատում վրաց ու հայ ժողովուրդների դարավոր բարեկամությունը։

Հեղափոխական եռանդուն գործունեությունը, բնականաբար, չէր կարող ոստիկանության աչքից աննկատ պահել Ալեքսանդր Ծուլուկիձեին։ Նրա տանը բազմիցս կատարվել են անսպասելի խուզարկություններ, սակայն միշտ էլ պրոֆեսիոնալ հեղափոխականը կարողացել է հետքերը մաքուր պահել։ Այնուամենայնիվ, 1905 թ. հունվարի 17-ին ցարական ոստիկանությունը Ա. Ծուլուկիձեին նետում է Թիֆլիսի Մետեխի բանտը։ Ճիշտ է, նա այնտեղ երկար չի մնում, սակայն բանտային խստացված ռեժիմի 23 օրերը չափազանց ծանր են անդրադառնում առանց այն էլ քայքայված նրա առողջության վրա։ Եվ դրանից մի քանի ամիս հետո՝ 1905 թ. հունիսի 21-ին, դեռ 29 տարին չբոլորած, կտրվեց Ալեքսանդր Ծուլուկիձեի կյանքի թելը։ Աղնիվ ընկերոջ, խիզախ մարտիկ-հեղափոխականի անժամանակ մահը խորին վշտով տարան Անդրկովկասի աշխատավորները։

Սովետական անծայրածիր երկրի աշխատավորները երախտագիտությամբ են հիշում ականավոր հեղափոխական գործիչ, փայլուն տեսաբան ու հրապարակախոս Ալեքսանդր Ծուլուկիձեի պայծառ անունը։ Անունը մի մարդու, որն իր կյանքի նպատակը համարեց կոմունիզմին անմնացորդ ծառայելը և աներեր գնաց այդ լուսավոր ուղիով։

Խ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

# ԷՆԵՐԳԻԱ... ՎԱԿՈՒՈՒՄԻՑ

*«Ինչո՞ւ է լուսավորում արևը». «Неделя»-ում բազմիցս տպագրվել են հրապարակումներ՝ նվիրված բնագիտության հուզիչ հարցերից մեկին՝ աստղային, մասնավորապես, արեգակնային էներգիայի աղբյուրներին (տե՛ս 1975 թ., № 16, 1976 թ., №№ 8, 16)։ Սովետական ֆիզիկոս Վ. Լապչինսկին աստղային էներգիայի բնույթը բացատրում է քվանտային գրավիտացիայի նորագույն տեսության դիրքերից, տեսություն, որն արգասիք է ժամանակակից ֆիզիկայի, մաթեմատիկայի, տիեզերագիտության համատեղ ուսումնասիրությունների։*

Դնիսի փորձերը կասկածի տակ առան Արեգակի և այլ աստղերի լուսատվության ջերմամիջուկայնության հիպոթեզը. այստեղ զարմանալի ոչինչ չկա: Միջուկային սինթեզի տեսության շրջանակներում հաջողվել է ընդհանուր գծերով բացատրել միայն հանգիստ Արեգակը: Միաժամանակ այդ տեսությունն անկարող էր բացատրել արեգակնային ակտիվության շատ երևույթներ:

Աստղերի ներքին էներգիայի և աստղային ակտիվության աղբյուրների պրոբլեմը սոսկ մասն է մի այլ, ավելի ընդհանուր պրոբլեմի, այն է՝ գալակտիկաներում և ողջ տիեզերքի զարգացման սկզբնական շրջանում տեղի ունեցող ոչ ստացիոնար էներգետիկայի ուսումնասիրության:

Բոլոր տիպի գալակտիկաների միջուկները, ինչպես և քվազիգալակտիկական օբյեկտները հանդես են բերում բարձր ակտիվություն: Եթե բոլոր տիպի գալակտիկաները դասակարգենք ըստ դրանց միջուկների ակտիվության նվազման, ապա առաջին տեղում կլինի քվազարը՝ տիեզերքի ամենազարմանալի օբյեկտը: Չափերով այն հավասար է այլ աստղերի, իսկ պայթյունի ժամանակ դրանից անջատված էներգիան ավելին է, քան տալիս են հարյուր միլիարդավոր աստղերը՝ միասին: Անշուշտ, ամենևին հնարավոր չէ ջերմամիջուկային սինթեզի տեսությամբ բացատրել պայթյունի երևույթները գալակտիկաների միջուկներում և քվազարներում: Ըստ ժամանակակից տիեզերագիտության, մեր տիեզերքը գերխիտ վիճակից ընդարձակվում է 10—15 միլիարդ տարիներ առաջ տեղի ունեցած մեծ պայթյունի հետևանքով: Սակայն ինչպե՞ս, որքա՞ն ուժեղ է եղել այդ պայթյունը, որ դրանից առաջացած «բեկորները» շարունակում են թռչել միլիարդավոր տարիներ: Իսկ այդ «բեկորները» տիեզերքի բոլոր աստղերն են ու գալակտիկաները:

Աստղաֆիզիկական երևույթների էներգետիկայի վերաբերյալ այս թռուցիկ ակնարկն, անշուշտ, կարելի էր շարունակել. սակայն այսքանն էլ բավական է եզրակացնելու, որ բնության մեջ պետք է գոյություն ունենան ջերմամիջուկային էներգիայից անհամեմատ ավելի հզոր նոր տիպի էներգիաներ, որ դրսևորվում են տիեզերական մասշտաբներով: Գիտության տրամաբանությունը թելադրում է, որ էներգիայի առավել հզոր աղբյուրների հայտնագործումը կապված է նյութի կառուցվածքի ավելի խոր, ինչպես և ժամանակի ու տարածության համեմատաբար ավելի փոքր հատվածների ու-

սումնասիրման հետ: Ուստի և անդրադառնանք փոքրագույն տարածքում գտնվող նյութի ամենախոր կառուցվածքին— վակուումին՝ ֆիզիկային վերաբերող ժամանակակից գրականության մեջ լայնորեն քննարկվող այդ հասկացությանը:

Համաձայն ողջամտության, մարդկային ողջ պրակտիկան հաստատում է, որ վակուումը դատարկություն է, ուր նյութ չկա, որի էներգապարունակությունը հավասար է զրոյի: Եթե ստեղծվում են տեսություններ վակուումի այլ հատկությունների վերաբերյալ, ապա պետք է հրաժարվել դրանցից կամ արդիականացնել՝ այդ պրակտիկային համապատասխան: Բայց ահա թե ինչպես է մեկնաբանված վակուումը ժամանակակից ֆիզիկայի բաժիններից մեկում. վակուումը ֆիզիկական հատկություններով հարուստ միջավայր է, իսկ նկատվող նյութն այդ միջավայրի լոկ նոսրացած վիճակը: Այլ խոսքով, նյութը դատարկություն է՝ միայն գերխիտ վակուումի համեմատությամբ: Այս նոր, առաջին հայացքից տարիմաստ պատկերացումը վակուումի մասին, օրգանապես կապված է հարաբերականության և նյութի քվանտային տեսությունների հետ:

Հարաբերականության ընդհանուր տեսությունը, որն ուսումնասիրում է տիեզերական գրավիտացիայի և տարածաժամանակի հատկությունները միաժամանակ, հետազոտում է վակուումի կառուցվածքը տիեզերական տարածություններում: Պարզվել է, որ դատարկ տարածաժամանակը (ըստ հարաբերականության տեսության այդ ինքը՝ վակուումն է) կարող է ազատորեն թեքվել և օժտվել էներգիայով: Ընդ որում, որքան շատ է թեքումը, բնությունն իր ժամանակին այնքան շատ էներգիա է «վատնել» դրա վրա, այնքան մեծ էներգիա է կուտակված դատարկ տարածաժամանակում: Տարածաժամանակի կորությունը կարող է տեղափոխվել տիեզերքում, և այդ պահին տարածությունը կդառնա էներգիայի փոխադրիչ:

Տարրական մասնիկների վարմունքը «կառավարող» քվանտային տեսությունն ուսումնասիրում է վակուումի միկրոմասշտաբային կառուցվածքն այնպիսի տարածություններում, որոնք չափերով համապատասխանում են տարրական մասնիկներին: Եվ այստեղ ֆիզիկոսները հանգեցին այն եզրակացության, որ վակուումը ոչ թե «դատարկություն» է, այլ բարդ հատկություններով մի միջավայր, որն ազդում է մասնիկների շարժման և փոխազդեցության բոլոր պրոցեսների վրա:

Վերջին տարիներս մի քանի ֆիզիկոսների աշխատություններում շարադրվել են գրավիտացիայի քվանտային տեսության հիմունքները, ուր սկզբունքորեն ընդհանրացվում են Էյնշտեյնի հարաբերականության տեսությունն ու նրա պատկերացումները ժամանակի տարածքի բնույթի մասին. նյութի քվանտային տեսությանը նոր բովանդակություն է հաղորդվում: Այդ բացառիկ հնարավորություն է ընձեռում միևնույն տեսության շրջանակներում ուսումնասիրելու ժամանակի տարածքի և նյութի կառուցվածքը ինչպես փոքրագույն, նույնպես և խիստ մեծ հեռավորությունների պայմաններում: Գրավիտացիայի քվանտային տեսությունը հնարավորություն է ընձեռում վակուումի մասին վերոհիշյալ երկու պատկերացումները միացնելու մի ընդհանուր համակարգում և ստուգելու այն քվանտային գրավիտացիայի վրա հիմնված քվանտային տիեզերագիտության և աստղաֆիզիկայի սահմաններում: Փորձենք մատչելի ձևով ներկայացնել վակուումի վերաբերյալ նոր պատկերացումների էությունը և դրանցից բխող հետևանքների բնույթը:

Շատ փոքր, էլեմենտար մասնիկներից միլիարդավոր անգամ փոքր տարածություններում վակուումն ունի շատ բարդ «մանրահատիկային» կառուցվածք, որն իր երկրաչափական հատկություններով հիշեցնում է օճառափրփուր. վակուումում անընդհատ անհետանում են փոքրագույն բջիջները և դրանց փոխարեն ծնվում են նորերը: Այդ բջիջների առաջացման ու անհետացման պրոցեսն ունի քվանտային, ըստ ֆիզիկայի՝ հավանականության բնույթ: Այլ խոսքով, տարածաժամանակը փոքր հեռավորություններում ենթարկվում է քվանտային տատանումների (ֆլուկտուացիայի): Տարածությունների աստիճանական մեծացմանը զուգընթաց, այդ փոքրագույն վակուումային բջիջները հարթվում, հազիվ նկատելի են դառնում, ինչպես վեր խոյացող ինքնաթիռից երևացող ծովի ալիքները:

Վակուումի «մանրահատիկային» կառուցվածքը բացի երկրաչափականից ունի նաև նյութի հատկություններ: Այն կարելի է պատկերացնել որպես գերխիտ ֆիզիկական դաշտ՝ օժտված այն բոլոր դինամիկ պարամետրերով, որպիսիք վերագրվում են սովորական նյութական դաշտերին: Այսպես, վակուումն ունի մեկ խորանարդ սանտիմետրում գտնվող $10^{93}$ գրամ զանգվածի սեփական խտություն: Եթե հիշենք, որ ջրի խտությունը հավասար է մեկի, ապա վակուումի խտությունը կթվա ֆանտաստիկ: Փորձենք պատկերացնել մեկ խորանարդ միկրոն միջավայր այնպիսի խտությամբ, որը պարունակում է այնքան զանգված, որ կբավականացներ բազմատրիլիոն տեսանելի տիեզերքների գոյացմանը:



Ինչպե՞ս համաձայնեցնել այս խոշոր թիվը վակուումի՝ զրոյի հասնող խտության հետ: Առաջանում է նոր հասկացություն— զանգվածի գրավիտացիոն արատ (դեֆեկտ): Բացատրենք այն հետևյալ օրինակով: Երկու էլեկտրոնների գրավիտացիոն ձգողականությունն աննշան է: Սակայն, եթե դրանք չափսեր չունենային, այսինքն՝ լինեին կետային, դրանց փոխադարձ գրավիտացիոն ձգողականությունը կլիներ անսահման: Այդ նշանակում է, որ նյութի խտության նոսրացման կամ մեծացման զուգընթաց գրավիտացիայի ինտենսիվությունն անսահմանորեն աճում է: Վակուումի «մանրահատիկային» կառուցվածքին համեմատելի շատ փոքր հեռավորություններում գրավիտացիան բնության հիմնական գերիշխող ուժ է: Վակուումի սեփական, գործնականում անսահման վիթխարի խտությունն ստեղծում է հավասարամեծ գրավիտացիոն դաշտ, որը, իր հերթին, տարածաժամանակում առաջացնում է այնպիսի տեղական կորացումներ, որ վակուումի էներգիան «դրոշմվում» է «մանրահատիկային» կառուցվածքի խորշերում և մեզ համար դառնում անտեսանելի: Այլ խոսքով, վակուումի վիթխարի էներգիան ստեղծում է զանգվածի այնպիսի հզոր դեֆեկտ, որ այն լիովին կոմպենսացնում է վակուումը և նման վիճակում դրա էներգիան բոլորովին չի երևում և հնարավոր չէ գրառել ոչ մի գործիքով: Այդ է պատճառը, որ վակուումն ընդունում ենք որպես դատարկ տարածաժամանակ:

Սակայն տարածության այն կետերում, ուր գրավիտացիոն արատը լրիվ հարյուրտոկոսանոց չէ, վակուումի էներգիան լինում է չհամակշռված և դառնում զգալի: Դատարկ տարածության մեջ գոյանում են կտրտված նյութի նոսր շրջաններ (վակուումի խտության համեմատությամբ), որոնք անվանում ենք տարրական մասնիկներ:

Հաշվարկները հաստատում են այդ տեսակետը: Այդպիսով, ըստ քվանտային գրավիտացիայի, բոլոր տարրական մասնիկները, միջուկները, աստղերը, գալակտիկաները, մեր ողջ տիեզերքը վակուումի համակշռվածության չափազանց փոքր խախտման արգասիք են: Ընդհանուր գծերով այս է վակուումի մասին նոր տեսակետը, որից հետևում է, որ վակուումն օժտված է ներքին անսահման էներգիայով:

Այժմ տեսնենք, թե այդ էներգիան ի՞նչ ձևով կարող է երևան գալ: Մարդու գործունեության հետ կապված բոլոր պրոցեսներում, մեր դիտարկմանը մատչելի տիեզերական շատ երևույթներում տեսանելի նյութի էներգիան վակուումի սեփական էներգիայի ամենաչնչին մասն իսկ չի կազմում: Այդ պատճառով վակուումը երբեք չի գրգռվում (չի խախտվում դրա համակշռվածությունը), մնում է մեզ համար բացարձակ իներտ «դատարկություն»: Վակուումը գրգռելու համար դիտվող նյութը պետք է սեղմել վիթխարի խտության հասցնելու չափ, կամ կառուցել Սերպուխովյի արագացուցչից մի քանի միլիարդ անգամ հզոր արագացուցիչ: Սակայն բնության մեջ կան շատ «լաբորատորիաներ», որոնցում այդ անհրաժեշտ էներգիան ստացվում է հեշտությամբ: Այդ «լաբորատորիաներն» են գերսեղմվող աստղերն ու տիեզերքը, որոնք սեղմվում են սեփական գրավիտացիոն ուժերի շնորհիվ:

Քվանտային գրավիտացիայի տեսության միջոցով տիեզերքի կոլապսի (աստղերի աղետաբեր սեղմման պրոցեսն է այդ՝ ձգողական ուժերի ազդեցությամբ) ուսումնասիրությունները գիտնականներին հանգեցրին մի նոր խոշոր տեսական հայտնագործության. պարզվեց, որ վակուումից առաջանում է մասնիկների այնպիսի քանակություն, որը կարող է դադարեցնել տիեզերքի սեղմումը մոտավորապես գերխիտ նյութի վիճակի սահմաններում և սեղմման պրոցեսը փոխարինել ընդարձակմամբ: Այլ խոսքով՝ տիեզերքի ամենախոշոր պայթյունի, իր իսկ՝ տիեզերքի պայթյունի պատճառն ու աղբյուրը վակուումի էներգիան է:

Բնականաբար նմանօրինակ արդյունքներ սպասելի են և քվանտային գրավիտացիայի տեսության միջոցով մեծազանգված աստղերի կոլապսի ուսումնասիրման ժամանակ: Մեծազանգված աստղերի (որոնց զանգվածը 10 անգամ մեծ է Արեգակից) կոլապսի հետևանքով առաջանում են «սև անցքեր», որոնց ներքին կառուցվածքն իր երկրաչափական հատկություններով համարյա չի տարբերվում սեղմվող տիեզերքից: Ուստի և կասկածից վեր է, որ վակուումից գոյացող մասնիկների միջոցով այդ «սև անցքերի» ներսում նույնպես անջատվում է վակուումային վիթխարի էներգիա: Սակայն այդ մասնիկների ուղու արտաքին կողմում գտնվում է «հորիզոն»-ը՝ մի պատնեշ, որն այդ մասնիկները հաղթահարել չեն կարող: Աստ-

ղերի կոլապսն անհամեմատ ավելի «խորամանկ» է, քան տիեզերքինը և տեսության մեջ առկա դժվարությունների պատճառով վակուումային էներգիայի՝ դեպի «սև անցքերը» շրջապատող տարածությունը դուրս գալու պայմանները դեռևս պարզ չեն:

Միաժամանակ ռեալ հույսեր կան նշված պրոբլեմի լուծման համար: Դրա երաշխիքը կարևոր նշանակություն ունեցող երկրորդ տեսական հայտնագործությունն է՝ սև անցքերի գոլորշիացման կամ պայթյունի մասին: Պարզվում է, որ քվանտային մասնիկների համար վտանգավոր չէ սև անցքերի պատնեշը: Դրանց միջով նրանք կարող են դուրս գալ արտաքին աշխարհ: Ուստի, բնական է ենթադրել, որ քվանտային գրավիտացիայում կարելի է ստանալ այնքան հզոր պայթյուն, որ այն գոյացնի գալակտիկայի միջուկ՝ քվազար: Հետագա ուսումնասիրությունները ցույց կտան, թե ինչպիսի նշանակություն ունի վակուումի էներգիան գալակտիկայի ֆիզիկայում և աստղերի ֆիզիկայում:

Եթե հետագայում հաստատվեն քվանտային գալակտիկայի տեսության եզրակացությունները վակուումի կառուցվածքի մասին, ապա ամբողջ տիեզերքը կպատկերացվի որպես միասնական ինքնահամաձայնեցված մեխանիզմ: Պայթած տիեզերքն ընդարձակվում է այնքան ժամանակ, քանի դեռ ազատված նյութի կինետիկ էներգիան չի հավասարակշռվում գրավիտացիոն ուժերի միջոցով: Ընդարձակման պրոցեսում տիեզերքի ծավալը մեծանում է, հետևաբար և մեծանում է վակուումային էներգիայի անջատման նկատելի դառնալու հավանականությունը: Գերակշռում են գալակտիկաների գոյացման և դրան հաջորդող՝ դրանց ցրման պրոցեսները տարածության մեջ: Մենք ապրում ենք տիեզերքի ընդարձակման ժամանակաշրջանում, ուստի և տիեզերքի բազմաթիվ պայթյունային երևույթների վկաներն ենք:

Երբ տիեզերքն առավելագույնս կընդարձակվի, գրավիտացիոն ուժերը պրկելով կսեղմեն այն, փոքրացնելով ծավալը: Այդ ժամանակաշրջանում աստղերի կոլապսի հետևանքով կգերիշխեն վակուումում դրանց լուծման պրոցեսները: Սեղմվող աստղերը հաջորդաբար անհետանում են վակուումում, բայց պահպանվում է գրավիտացիոն դաշտը, որը նպաստում է տիեզերքի առավել արագ սեղմմանը: Տիեզերքը խտանում է այն աստիճան, որի պայմաններում գրգռվում է ամբողջ վակուումը, և տեղի է ունենում տիեզերքի նոր խոշոր պայթյուն: Սկսվում է ընդարձակման նոր ցիկլ:

**Վ. ԼԱՊՉԻՆՍԿԻ**

Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու, ՍՍՀՄ ԳԱ միջուկային ուսումնասիրությունների ինստիտուտի ավագ գիտաշխատակից

«Неделя», № 33, 1976 г.





Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի բաժին և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 03702 Պատվեր 2102 Թղթի չափսը $70 \times 108_{1/16}$: Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 3/XI-1976 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:*

# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## Ն Ո Ր Գ Ր Ք Ե Ր

Լ. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսում 1976 թ. հունիսի 29-ին: *«Հայաստան» հրատ., 1976:*

Լ. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ Ղազախստանի կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությունում *(1976 թ. սեպտեմբերի 3): «Հայաստան» հրատ., 1976:*

Մ. ԲԵՍԱՐԱԲ— Էջեր Լանդաուի կյանքից: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Պայծառ ապագայի համար մարտնչողները: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ֆրանսիական դասական ողբերգության ծաղկումը: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ավանդույթները և գեղարվեստական զարգացումը: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Հայոց լեզվի հանգաբառարան: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Բանաստեղծությունը և արդիականությունը: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Գ. ԲԱԲԱՅԱՆ— Հողի քիմիական կազմը և հանքային պարարտանյութերի փոխակերպությունները հողում: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

**Н. ВЕСЕЛОВ — Роль партийного контроля в осуществлении политики партии.** М., «Знание». 1976.

**С. МЕЗЕНЦЕВ — Критика учит, помогает, воспитывает.** «Моск. рабочий». 1976.

**Г. МИРСКИЙ — «Третий мир»: общество, власть, армия. М.,** «Наука», 1976.

**Африка. Проблемы социалистической ориентации.** М., «Наука», 1976.

**Г. СЕЛЕЗНЕВ — Латинская Америка в борьбе против реакции и неоколониализма.** Изд. МГУ, 1976.

**Г. ДЕМИДЕНКО — Дел у революции немало...** Очерк жизни и деятельности В. Д. Бонч-Бруевича. М., Политиздат, 1976.

**Л. АНДРИЕНКО — Атеист ленинской школы.** М., «Мысль» 1976.

**Т. БЕЛАШЕНКО — США: 200 лет — 200 войн. М.,** «Воениздат», 1976.

**Армяно-украинские литературные связы.** Библиография. Е., изд. Ак. наук. 1976.

**Э. АТАЯН — Аспекты организации и функционирования языковой формы.** Изд. ЕГУ, 1976.

**И. КАРЛЮК, А. ВАСИЛЬЕВ — Развитие аграрно-промышленного комплекса.** М., «Экономика», 1976.

**А. ПАВЛЕНКО — Совершенствование нормирования труда инженерно-технических работников и служащих.** М., «Экономика», 1976.

**В. БЕЗРУКОВ — Использование экономико-математических методов при планировании труда.** М., «Экономика». 1976.

**О. ПРОЦЕНКО, Д. СОЛОВЕЙЧИК — Планирование долговременных хозяйственных связей.** М., «Экономика», 1976.

**Б. СМЕХОВ, Я. УРИНСОН — Методы оптимизации народнохозяйственного плана.** М., «Экономика», 1976.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

## ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ 1977 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԱՄՍԱԳԻՐԸ լուսաբանում է մարքս-լենինյան տեսության, արդի էտապում ՍՄԿԿ քաղաքականության արմատական հարցերը: Նրա էջերում հատուկ տեղ է տրվում լենինյան տեսական ժառանգության պրոպագանդմանը:

ԱՄՍԱԳՐԻ էջերում ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի ու որոշումների ոգով սիստեմատիկաբար հոդվածներ են հրապարակվում կուսակցական շինարարության հանգուցային պրոբլեմների և կուսկազմակերպությունների գործունեության վերաբերյալ:

ԱՄՍԱԳԻՐԸ հոդվածներ է տպագրում նվիրված մարքս-լենինյան փիլիսոփայության կարևորագույն պրոբլեմներին և նոր մարդու գիտական աշխարհայացքի ձևավորման հարցերին: Այստեղ պատշաճ տեղ է հատկացվում զարգացած սոցիալիզմի տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր պրոբլեմների լուսաբանմանը, մասնավորապես հանրային արտադրության արդյունավետության, արտադրանքի որակի բարձրացման, սոցիալիստական մրցության, ժողովրդական տնտեսության կառավարման, սոցիալիստական ապրելակերպի զարգացման խնդիրներին:

ԱՄՍԱԳՐՈՒՄ հոդվածներ են զետեղվում նվիրված ՍՄԿԿ ու Հայաստանի կոմկուսի պատմությանը, գրականության և արվեստի հարցերին: Մեծ տեղ է տրվում կազմակերպական-կուսակցական ու գաղափարա-դաստիարակչական աշխատանքներին, կոմունիստական շինարարության առաջավոր փորձի լուսաբանմանը:

ԱՄՍԱԳՐԻ էջերում սիստեմատիկ լուսաբանվում են ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին-քաղաքական գործունեությունը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացումը, համաշխարհային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումների ընթացքը, մերկացվում է հակակոմունիզմի և ռևիզիոնիզմի գաղափարախոսությունը:

ԱՄՍԱԳՐՈՒՄ հրապարակվում են քննադատական-մատենագիտական նյութեր, պարբերական հրատարակությունների մեկնաբանություններ:

ԱՄՍԱԳԻՐԸ կուսակցական, սովետական և տնտեսական լայն շրջանի ակտիվի, պրոբլեմային տեսական սեմինարների ունկնդիրների, գիտական աշխատողների, դասախոսների, պրոպագանդիստների, գաղափարական ճակատի աշխատողների համար հրապարակում է տեսական-քաղաքական հոդվածներ:

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԳԻՆԸ**

Մեկ տարին— 2 ռ. 40 կ.

Վեց ամիսը— 1 ռ. 20 կ.

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով:

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»